ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ








# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ • 1990

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ

1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## Բովանդակություն



### ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ. ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ



### ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐ



ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# Կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծի մասին Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումում 1990 թվականի փետրվարի 5-ին

Ընկերներ, կարծում եմ՝ կհամաձայնեք, որ մենք հավաքվել ենք շատ կարևոր պլենումի, որին մեծ հետաքրքրությամբ և անհամբերությամբ էին սպասում կոմունիստները, մեր ամբողջ հասարակությունը: ԽՄԿԿ-ի անդամներից և անկուսակցականներից, կուսակցական կազմակերպություններից ու կոլեկտիվներից, բանվորներից ու գյուղացիներից, մտավորականությունից, գիտնականներից, վետերաններից ու երիտասարդներից Կենտկոմում ստացվել են առաջարկություններ ու ցանկություններ պարունակող հազարավոր նամակներ, հեռագրերը շարունակում են ստացվել: Սանեք՝ ինքներդ էլ ականատես եք եղել այնպիսի ժողովների ու միտինգների, որտեղ հաճախ տարբեր հայեցակետերից, սրությամբ ու շահագրգռությամբ քննարկվում են ամենակենսահույզ պրոբլեմները: Դրանց մասնակիցները ևս ցանկացել են իրենց տեսակետը հասցնել կուսակցության Կենտրոնական կոմիտե:

Այս ամենը միասին վերցրած մի յուրօրինակ ֆենոմեն է: Դրա մեջ արտացոլվում են վերակառուցման ուղիներում, դեմոկրատացման ու հրապարակայնության պայմաններում մեր հասարակության մեջ արդեն տեղի ունեցած և տեղի ունեցող խոր փոփոխությունները: **Գլխավորը, ինչը այսօր հուզում է կոմունիստներին և երկրի բոլոր քաղաքացիներին, վերակառուցման ապագան է, երկրի բախտը և ԽՄԿԿ-ի դերը հեղափոխական վերափոխումների այժմյան, ըստ երևույթին, ամենապատասխանատու փուլում:**

Հասարակությունն ուզում է իմանալ ԽՄԿԿ-ի դիրքորոշումը, և դրանով որոշվում է մեր պլենումի ամբողջ նշանակությունը: Պլենումի նախապատրաստման ընթացքում մեր առջև վերստին **ծառացավ կուսակցության XXVIII համագումարի անցկացման ժամկետների հարցը:**

Անցյալ տարվա դեկտեմբերին Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ համարեց համագումարի գումարումը մոտեցնել կես տարով: Սակայն իրադարձությունները զարգանում են այնպիսի տեմպով, որ հարկավոր է անդրադառնալ այդ հարցին: Գնահատելով ողջ իրավիճակը, քննարկելով կոմունիստների ու կուսակցական կազմակերպությունների դիմումները, քաղբյուրոն ձեր քննարկմանն է ներկայացնում հետևյալ առաջարկությունը՝ ԽՄԿԿ XXVIII համագումարը անցկացնել այս տարվա հունիսի վերջին-հուլիսի սկզբին: Մենք համոզված ենք, որ այս առաջարկությունը կընդունվի Կենտկոմի պլենումում:

Ընդ որում, համագումարին, մեր կարծիքով, պետք է նախորդի հաշվետու-ընտրական լիարյուն կամպանիա՝ կուսակցության բոլոր օղակներում լայն բանավեճ ծավալելով պլատֆորմի և կուսակցության նոր կանոնադրության նախագծի շուրջը: Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում լուծվելու են հասունացած կադրային հարցերը, կազմավորվելու են նոր ընտրովի կուսակցական մարմիններ: Դա կլինի արդեն միանգամայն այլ իրադրություն համագումարի անցկացման համար:

Այս պլենումում մենք պետք է ընդունենք համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագիծը: Իսկ հավանաբար մեկ ամիս, ցանկալի է՝ երեք շաբաթ

անց, համենայն դեպս ոչ ուշ, մենք կրկին հարկ կունենանք հավաքվելու պլենումի, որպեսզի քննարկենք նոր կանոնադրության նախագիծը և այն նույնպես հրապարակենք համընդհանուր քննարկման համար: Կարելի է ասել, որ համագումարի նախապատրաստությունը թևակոխում է վճռական փուլ: Պետք է պարզորոշ պատկերացնել, թե ինչու անհրաժեշտ եղավ մոտեցնել կուսակցության համագումարի անցկացման ժամկետը և մենք ինչն ենք համարում համագումարի գլխավոր խնդիրը: ԽՄԿԿ-ն եղավ վերակառուցման նախաձեռնողը, վերակառուցման կոնցեպցիայի ու քաղաքականության գեներատորը: Այդ հիման վրա երկրում ծավալվեցին հեղափոխական խոր վերափոխումներ, որոնք ընդգրկեցին կյանքի բոլոր ոլորտները և բնակչության բոլոր խավերին:

Ճանապարհ բացվեց հասարակության նորացման, սոցիալիզմի պոտենցիալի բացահայտման համար: Կուսակցությունը կարողացավ տեսության ու քաղաքականության մեջ արտացոլել երկրի հասունացած պահանջմունքները և արդի համաշխարհային զարգացման իրողությունները: Ծավալված վերակառուցման շրջանակներում տեղի են ունենում իրենց մասշտաբներով ու նորությամբ անսովոր, արագ փոփոխություններ: Դա նորանոր պահանջներ է դնում պետական ու հասարակական հաստատությունների առջև և, իհարկե, ԽՄԿԿ-ի առջև: Մենք հիմա ըստ էության հասել ենք մի այնպիսի պահի, որ կուսակցությունը պետք է իր քաղաքականությունը հարստացնի արդեն հաշվի առնելով բուն վերակառուցման ընթացքում կատարված փոփոխությունները, վերջին ժամանակներս ծագած պրոբլեմները:

Այստեղ դանդաղումը հղի է հետ մնալով, նախաձեռնության կորստյամբ, անխուսափելիորեն կազդեր թե հենց ԽՄԿԿ-ի վրա և թե նրա սկսած հեղափոխական վերափոխումների ճակատագրի վրա: Հարցը այս կերպ առաջադրելով, քաղբյուրոն բնավ մտադիր չէ իրադրությունը համարել դրամատիկ, այդ որոշումներին հաղորդել ողբերգական բնույթ: Մենք պետք է վերջապես լավ հասկանանք, թե ինչ ժամանակներում ենք ապրում, ինչ խնդիրներ ենք լուծում, պլատֆորմի նախագծով նոր դինամիկա հաղորդենք մեր պայքարին: Եկեք այդ փաստաթուղթը ինչպես հարկն է մշակենք Կենտրոնական կոմիտեի պլենումում:

Պակաս կարևոր չէ նաև այն բանի ըմբռնումը, և սա պրոբլեմի երկրորդ կողմն է, որը նույնպես պահանջում է մոտեցնել համագումարի ժամկետը, որ կուսակցությունը քաղաքական ավանգարդի առաքելությունը կկարողանա կատարել, եթե ինքը արմատապես վերակառուցվի, տիրապետի ժամանակակից պայմաններում քաղաքական աշխատանքի արվեստին, կարողանա հաջողությամբ փոխգործակցել վերակառուցման բոլոր ուժերի հետ:

Կուսակցության նորացման արմատական հարցը այն ամենից մաքրվելու անհրաժեշտությունն է. ինչը նրան շաղկապել է ավտորիտար բյուրոկրատական համակարգի հետ, համակարգ, որն իր կնիքն է դրել ոչ միայն աշխատանքի մեթոդների վրա, կուսակցության ներքին փոխհարաբերությունների վրա, այլև գաղափարախոսության, մտածելակերպի վրա, սոցիալիզմի վերաբերյալ բուն պատկերացումների վրա: Պլատֆորմի մեջ ասված է. **Մեր իդեալը մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմն է:** Արտահայտելով բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահերը, հենվելով Մարքսի, Էնգելսի, Լենինի մեծ ժառանգության վրա, ԽՄԿԿ-ն ստեղծագործաբար զարգացնում է սոցիալիստական գաղափարները, նկատի ունենալով ժամանակակից իրողությունները և հաշվի առնելով քսաներորդ հարյուրամյակի ամբողջ վիթխարի փորձը:

Պլատֆորմում հստակորեն նշված է, թե ինչից մենք պետք է հրաժարվենք: Տասնամյակների ընթացքում արմատացած գաղափարախոսական դոգմատիզմից, ներքին քաղաքականության մեջ իրենց սպառած ստերեոտիպերից և համաշխարհային զարգացման նկատմամբ եղած հնացած հայացքներից: Այն ամենից, ինչը տարել է դեպի համաշխարհային քաղաքակրթության ընդհանուր հոսանքում սոցիալիստական երկրների մեկուսացում, սոցիալապես այլ աշխարհի հետ մշտական առճակատման ձևով առաջադիմության ուղիների ըմբռնումից: Մենք հրաժարվում ենք նախապես կազմված սխեմայով սոցիալիզմ կառուցելու հնարավորության ընձեռումից, որը պետք է ծառայեր որպես նեղ շրջանակ մասսաների կենդանի ստեղծագործության համար: Ժողովրդական զանգվածների վճռորոշ դերի մասին մեզանում շատ են խոսել, իսկ գործնականում անտեսել են սոցիալիստական զարգացման այդ իրոք որոշիչ ուժը:



Կուսակցության նորացումը ենթադրում է սկզբունքային փոփոխություն պետական ու տնտեսական մարմինների հետ նրա հարաբերության մեջ, նրանց հրամայելու և նրանց գործառույթները իրենց վրա վերցնելու պրակտիկայից հրաժարում: Կուսակցությունը նորացվող հասարակության մեջ կարող է գոյություն ունենալ և ավանգարդի իր դերը կատարել միայն որպես դեմոկրատորեն ճանաչված ուժ: Դա նշանակում է, որ նրա դիրքը չպետք է պարտադրվի սահմանադրական օրինականացման միջոցով: ԽՄԿԿ-ն, իհարկե, մտադիր է պայքարել կառավարողի դիրքի համար, բայց այդ բանն անել խստորեն դեմոկրատական պրոցեսի շրջանակներում, հրաժարվելով որևէ իրավական ու քաղաքական առավելությունից, առաջարկելով իր ծրագիրը, պաշտպանելով այն բանավեճերում, համագործակցելով մյուս հասարակական-քաղաքական ուժերի հետ, մշտապես աշխատելով մասսաների հոծության մեջ, ապրելով նրանց շահերով ու կարիքներով:

Մեր հասարակության մեջ տեղի ունեցող լայն դեմոկրատացումն ուղեկցվում է քաղաքական բազմակիության ծավալմամբ, առաջ են գալիս տարբեր հասարակական-քաղաքական կազմակերպություններ ու շարժումներ: Այդ պրոցեսը կարող է հանգեցնել մի ինչ-որ փուլում նաև կուսակցությունների ստեղծման: ԽՄԿԿ-ն պատրաստ է գործել, հաշվի առնելով այդ նոր հանգամանքները, համագործակցել և երկխոսություն վարել բոլոր այն կազմակերպությունների հետ, որոնք կանգնած են ԽՍՀՄ սահմանադրության և նրանում վավերագրված հասարակարգի հիմքի վրա: Դրա հետ մեկտեղ, մենք բացահայտորեն ասում ենք, որ ներկա բեկումնային շրջանում ԽՄԿԿ-ն ի վիճակի է համախմբող, միասնացնող դեր կատարել, ապահովել վերակառուցման առաջընթացն ի բարօրություն ամբողջ ժողովրդի:

Կուսակցության նորացումը ենթադրում է նրա խոր, համապարփակ դեմոկրատացում, **դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի վերաիմաստավորում**, շեշտը դնելով դեմոկրատիզմի, կուսակցական զանգվածների իշխանության վրա:

Դա կնպաստի ԽՄԿԿ-ի ամրապնդմանը որպես ամբողջական կազմակերպության, կբարձրացնի նրա հեղինակությունը ժողովրդի մեջ: Այդ առումով խոշոր առաջընթաց քայլ պետք է արվի արդեն նախահամագումարյան հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում, համագումարի պատգամավորների ընտրություններում: Մենք ճիշտ ենք համարում կուսակցության անդամների այն բազմաթիվ պահանջները, որ դրանք լինեն իրոք ընտրություններ, որտեղ վճռորոշ դերը պատկանի կոմունիստներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին:

Ընկերներ, ինչից ենք մենք ելել, ինչպիսի իրողություններ նկատի ունենք, ձևակերպելով առաջիկա ժամանակաշրջանի անելիքները: Եթե խոսելու լինենք ամենախոշոր առումով, ապա հասարակության ներկա վիճակին միաժամանակ բնորոշ են ինչպես առաջընթացի հսկայական հնարավորությունները, այնպես էլ իրական վտանգները: Թե մեկը, թե մյուսը առկա են:

Հնարավորությունները, որովհետև վերակառուցման պրոցեսները շարունակում են զարգանալ, ազատություն տալով ժողովրդի հզոր եռանդին: Վերակառուցման մինչև այսօր ունեցած ամենակարևոր արդյունքը (սա արձանագրում է նաև պլատֆորմը) հասարակության ձերբազատումն է, որի շնորհիվ միլիոնավոր խորհրդային մարդիկ քաղաքացիական արժանապատվություն են գտել և իրենց ձեռքն են առնում պետության կառավարումը: Այդ միտումը կուժեղանա, և դա, վերջին հաշվով, կուսակցության սկսած ամբողջ աշխատանքի հաջողության գրավականն է և ամենևին էլ առիթ չէ խուճապի համար: Տեղի է ունենում նոր տնտեսական, քաղաքական կառուցվածքների ստեղծման ու ձևավորման պրոցես: Դա նույնպես նպաստավոր միջավայր է ստեղծում ժողովրդի ակտիվության, կյանքի բոլոր ոլորտներում վերակառուցման պրոցեսների ծավալման ու խորացման համար:

Դրա հետ մեկտեղ, առաջ շարժվելով վերակառուցման ուղիով, մենք տեսանք, որ երկիրն ախտահարած ճգնաժամը շատ ավելի խորն ու լուրջ է, քան կարելի էր ենթադրել: Եվ դրանով է բացատրվում շատ բան տեղի ունեցածից: Դուրս են ժայթքել հասարակական օրգանիզմի ընդերքում տասնամյակներով կուտակված պրոբլեմներ ու հակասություններ: Ցավոք, վերակառուցման ընթացքում հնարավոր չեղավ խուսափել վրիպումներից ու սխալներից, և դա նույնպես բարդացրեց իրադրությունը: Դրան այժմ բնորոշ են սոցիալական լարվածությունն ու տագնապը: Երևան են եկել անտարբերության ու հիասթափության տարրեր: Այսպիսին է հակասական, բայց ռեալ իրավիճակը: Վտանգ կա, կուսակցությունը դա պետք է հաշվի առնի, որ կարող են գտնվել արկածախնդիրներ, որոնք կփորձեն օգտագործել ծագող դժվարու-

թյունները, չարաշահել իրական պրոբլեմները, աշխատավորների անբավարարվածությունը: Նման վտանգի նշաններն առկա են, այդ թվում նաև վերջին օրերս:

Իրենց զգալ են տալիս որոշակի շփոթությունը, պարտվողականության և լիկվիդատորության տրամադրությունները: Դա պակաս վտանգ չէ, և ոչ միայն կուսակցության, այլև ամբողջ հասարակության համար: Մենք ոմանցից արդեն լսում ենք, թե, իբր, շատ կտրուկ ենք սկսել, սպառնում ենք սոցիալիստական կարգերի նախահիմքերին և իբր դժվարություններից դուրս գալու այլ ելք չկա, բացի նախկին կարգերին վերադառնալը: Ուրիշներից, ընդհակառակը, լսում ենք, թե իբր, սոցիալիստական կարգերի պոտենցիալի բացահայտմանը նպատակամղված ռեֆորմները դատապարտված են անհաջողության և երկրի միակ փրկությունը կապիտալիստականացումն է:

Կարելի էր այս մասին չխոսել, եթե խոսքը վերաբերեր սոսկ վերացական տեսական վեճերին կամ քաղաքական շրջանակներում տեղի ունեցող բանավեճերին: Բայց նման դեստրուկտիվ դատողությունները, թափանցելով հասարակության մեջ, ճանապարհից շեղում են շատ մարդկանց, բացասաբար են անդրադառնում քաղաքական մթնոլորտի վրա, խանգարում են ճիշտ հեռանկարում վերկառուցման պրոցեսի ընթացքը տեսնելուն: Մենք պետք է տեսնենք. ինչպես պահպանողական, այնպես էլ ձախ արմատական կարգի քաղաքական գծերի բյուրեղացման պրոցեսը վերջին ժամանակներս արագացել է: Ահա թե ինչու է, ընկերներ, այժմ կենսականորեն անհրաժեշտ (ուզում եմ սա մեկ անգամ էլ ընդգծել) կուսակցության Կենտկոմի պլատֆորմը, որն ընդունակ է տալ քաղաքական պարզ կողմնորոշիչներ, հասարակության բոլոր առողջ ուժերը համախմբել հեղափոխական վերափոխումների նպատակների ու խնդիրների շուրջը:

Ուզում եմ ձեր ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ **առաջարկվող պլատֆորմի առանցքը մոտեցումն է սոցիալիզմի նորացման ճանապարհին խորհրդային հասարակության մերձակա և ստրատեգիական խնդիրների լուծմանը:** Մենք մնում ենք նվիրված 1917 թվականի հոկտեմբերին կատարված ընտրությանը, սոցիալիստական գաղափարին, բայց հեռանում ենք նրա դոգմատիկ ըմբռնումից, հրաժարվում ենք մարդկանց իրական շահերը սխեմատիկ կառուցվածքներին զոհաբերելուց: Խնդիր ենք դնում քայլ առ քայլ կենսագործել սոցիալական արդարության սկզբունքը, առանց որևէ պատրանքների և շտապ հրաշքներ ակնկալելու: Մտադիր ենք այդ բանն անել, մերժելով անցյալի նախապաշարմունքներն ու գաղափարախոսական տարբեր արգելքները, օգտագործելով այն ամենայն արժեքավորը, ինչ կա մյուս հասարակություններում, նրանց էկոնոմիկայում և սոցիալական ոլորտում, քաղաքական կյանքում, արտադրության ու կենցաղի կազմակերպման մեջ, գիտության ու տեխնիկայի, մշակույթի, հոգևոր և մտավոր ստեղծագործության ասպարեզում:

Դուք, երևի, ուշադրություն եք դարձրել պլատֆորմի կառուցվածքի առանձնահատկությանը: Մեզ սկզբունքորեն կարևոր էր թվում անգամ նյութի շարադրության մեջ ցույց տալ, որ այսուհետև և ընդմիշտ կուսակցության քաղաքականության կենտրոնում դրվում են մարդն ու նրա բարօրությունը, որ նախ և առաջ այդ չափանիշով պետք է գնահատվեն սոցիալիստական ուղիով շարժման հաջողությունները: Պլատֆորմում շարադրանքն սկսվում է խորհրդային մարդու քաղաքական և սոցիալ-տնտեսական իրավունքներից, անձի ազատությունից:

Կարծում եմ, ընկերները ուշադրություն են դարձրել նաև այն բանին, որ քաղաքացիների իրավունքների հետ մեկտեղ ընդգծվում է մարդկանց հոգևոր աշխարհը հարստացնելու, հասարակության կրթվածությունն ու ընդհանուր բարեկրթությունը բարձրացնելու միջոցառումների համալիրի ընդունման անհրաժեշտությունը: Ցավոք, մի որոշ ժամանակից մեզանում զարգացման այդ գործոնը հետին տեղ է անցել, դիտվել է գրեթե որպես հավելում արդյունաբերական աճի թվերին: Դրա համար ստիպված էինք հատուցել լրջորեն հետ մնալու գնով: Եվ դեռ երկար պիտի հատուցենք: Թերևս բոլորից ուշ մենք հասկացանք, որ ինֆորմատիկայի դարում ամենաթանկագին կապիտալը գիտելիքն է, մտահորիզոնի լայնությունն ու ստեղծագործական վառ երևակայությունը: Կորցրածը հետ շահելու համար հարկավոր է այսօր միջոցներ չխնայել գիտության, կրթության, մշակույթի, արվեստի՝ այն ամենի համար, ինչը վեհացնում է մարդուն և միևնույն ժամանակ բազմապատկում նրա աշխատանքի արտադրողականությունը:

Հեռանկարային հարցերի հետ մեկտեղ պլատֆորմի նախագծում առաջ են քաշվում անհետաձգելի խնդիրներ՝ կապված երկրի ներկա դրության հետ: Սա սկզբունքորեն կարևոր է: Մենք հույս ունեինք 1989 թվականին անցկացնել ճգնաժամային



զարգացման գագաթնակետը, բայց վերջին ժամանակների իրադարձությունները ցույց տվեցին, որ առայժմ բեկում դեպի լավը տեղի չի ունեցել: Տնտեսական զարգացման անցյալ տարվա արդյունքները, որ հրապարակվեցին վերջերս, կրկին բացահայտեցին էկոնոմիկայում տեղի ունեցող պրոցեսների հակասականությունը: Մի կողմից նկատվում է մի շարք ցուցանիշների գծով ոչ մեծ աճ, և դա չնայած զգալի կորուստներին, որ պատճառել են գործադուլները, էթնիկական կոնֆլիկտները, կարգապահության անկումն ու անտնտեսվարությունը: Ավելի շատ են արտադրվել պարենամթերք, ժողովրդական սպառման ապրանքներ: Մյուս կողմից մենք տեսնում ենք սպառողական շուկայի հետագա խախտում, դեֆիցիտի և հերթերի աճ, ռուբլու գնողունակության թուլացում: Իրադրությունը խորանում է ստվերային էկոնոմիկայի գործամոլների և հանցավոր տարրերի աշխուժանալու հետևանքով:

Խորհրդային մարդկանց առանձնապես մեծ դժգոհություն է պատճառում պարենավորման վիճակը: Այստեղ պետք է հարցը դնել սկզբունքորեն: Մենք մշակել ենք նորարարական գյուղատնտեսական քաղաքականություն, դրա օգտին քվեարկել մարտյան պլենումում: Այն գնահատում ենք որպես առաջադիմական, որը մատնանշում է պարենային ճգնաժամից դուրս գալու իրական ուղիները: Գլխավորը, որի օգտին արտահայտվեց պլենումը, հողի վրա տնտեսավարման բազմազան ձևերի օգտագործման ամեն տեսակ սահմանափակումները վերացնելն է: Այս հետևությունն արվեց շատ կոլեկտիվների փորձի հիման վրա: Մի շարք մարզեր փաստորեն կարողացան վերացնել դրության սրությունը պարենի շուկայում:

Այդուհանդերձ երկրի մասշտաբներով լուրջ բեկում տեղի չունեցավ: Եվ դրա պատճառն այն է, որ տեղերում շատերը դեռևս գտնվում են տնտեսավարման նախկին մեթոդների ու մոտեցումների գերության մեջ:

Այո՛, ռեսուրսները, տեխնիկան չեն բավականացնում, այո՛, այլ մասշտաբներով և այլ տեմպերով պետք է վարել սոցիալական վերափոխումները: Այս ամենը ճիշտ է: Բայց անկյունաքար պետք է դարձնել արտադրական հարաբերությունների վերակառուցումը գյուղում: Եվ բանն այժմ դեմ է առնում նախ և առաջ մեր կադրերի դիրքորոշմանը կենտրոնում և տեղերում: Սա արդեն ոչ թե տնտեսական, այլ քաղաքական հարց է: Պետք է վերացնել բոլոր խոչընդոտները հողագործի ճանապարհից, ձեռքերի ազատություն տալ նրան: Հարցը հենց այսպես է դրվում պլատֆորմի նախագծում:

Պարենավորումը սպառողական շուկայի կարգավորման խնդրի սոսկ մի մասն է: Եվ նախագծում ընդգծվում է ֆինանսներն ու դրամական շրջանառությունը առողջացնելու, ռուբլու գնողունակությունը ամրապնդելու միջոցառումների համալիրի՝ որպես առաջիկա երկու տարվա անհետաձգելի խնդրի, նշանակությունը:

Ճիշտ է, մեզանում բանավեճ տեղի ունեցավ, թե ինչքանով է նպատակահարմար այդ հարցերում մանրամասների մեջ խորանալը: Մենք այնուամենայնիվ խոսակցություն ենք վարում կուսակցական պլատֆորմի, քաղաքական կողմնորոշիչների շուրջ, և կարիք կա՞ արդյոք կրկնելու այն, ինչ բովանդակվում է կառավարության ծրագիրը, որը քննարկվեց ժողովրդական դեպուտատների համագումարում: Սկզբունքային դրույթները կարծես թե կլանեցին այդ հարցերը: Սակայն դրանք այնքան սուր են, որ մարդիկ, չգտնելով որոշակի կոնկրետություն, կարող են դժգոհ լինել: Ուստի արժե կարծիքներ փոխանակել և այստեղ կողմնորոշվել այս խնդրում:

Կարծում եմ, որ մինչև այժմ մեզ այստեղ պակասել է վճռականությունը, և դա պետք է հաղթահարել: Խոսքը մասնավորապես այն հիմնական բացակայող օղակի մասին է, որի պատճառով տեղապտույտ է տալիս ամբողջ տնտեսական բարենորոգումը, այն է՝ գնագոյացման համակարգը: Անհրաժեշտ է արագացնել այդ պրոբլեմի լուծումը: Ընդ որում կուսակցությունը մնում է այն սկզբունքային դիրքորոշման վրա, որ գնագոյացման բարենորոգումը պետք է այնպես իրագործել, որ այն չանդրադառնա բնակչության, հատկապես սակավ ապահովված խավերի կենսամակարդակի վրա:

Այսուհետև անհնար է հաշտվել անտնտեսվարության աղաղակող դրսևորումների հետ: Արդյոք մենք իրավունք ունե՞նք վարկերից արդյունավետություն ակնկալել դրանց ծիծաղելիորեն ցածր տոկոսների դեպքում: Մեզ մոտ այնպիսի տոկոսներ են, որպիսիք չեք գտնի ոչ մի տեղ, աշխարհի ոչ մի երկրում: Այնպես որ, ոչ ոք չի ձգտում վերադարձնել վարկերը, քանի որ այդ տոկոսները, իսկապես ասած, ոչինչ չեն փոխում: Այդ պատճառով էլ չեն գործում վարկերը, չի գործում ռուբլին: Դա բանի պետք չէ:

Արդյոք թույլատրելի՞ է, որ ժողովրդական տնտեսության մեջ ապրանքանյութական պաշարները տարեկան աճում են միլիարդավոր ռուբլիներով: Արդեն նշում են ձեռնարկություններում գերնորմատիվային պաշարների 200—240 միլիարդ ռուբլու թվեր:

Եվ այդ ժամանակ ամբողջ երկրով մեկ աղմուկ է լսվում. ռեսուրսները չեն բավականացնում: Ավելին, շուկայում չեն բավականացնում տարրական ապրանքները: Նշանակում է, դարձյալ չկա այն մեխանիզմը, որը ձեռնարկությանը խթաներ ունենալու այնքան ռեսուրսներ, ինչքան հարկավոր է, իսկ մնացած ամբողջից ազատվել:

Արդյոք կարելի՞ է տնտեսական բարենորոգման հաջողություն ակնկալել, եթե բարգավաճում է երկարակյաց կառույցը: Մենք հիշում ենք, թե պետպլանի ներկայացուցիչները, երբ քննարկվում էր 1990 թվականի պլանի նախագիծը, ավելի լավ գործադրման արժանի համառությամբ ինչպես էին ապացուցում, թե այլևս չի կարելի կրճատել կապիտալ շինարարության ճակատը: Միայն անցած տարի գերնորմատիվային «թերավարտքը» աճեց 20 միլիարդ ռուբլով, կլանելով ազգային եկամտի աճի 4/5-ը: Եվ դա այն դեպքում, երբ շինանյութերի շուկան հսկայական սով է զգում, իսկ առևտրի հայտերը, անգամ ամենահամեստ հաշվումներով, չեն բավարարված երեք միլիարդ ռուբլու չափով: Իսկ չէ որ խոսքը ուղղակի ապրանքաշրջանառության մասին է, բնակչության մոտ եղած դրամական ռեսուրսների մասին:

Չօգտագործված հնարավորությունների այս ցուցակը ես կարող էի շարունակել ռեսուրսախնայողության, արտադրանքի պահպանման և վերամշակման, երկրորդային թափոնների օգտագործման և այլ բնագավառների օրինակներով: Այդտեղ կորուստների մասշտաբները էլ ավելի ապշեցուցիչ են: Նման վիճակը այսուհետև պարզապես անթույլատրելի է: Մենք մեր տնտեսության այդ հնացած հիվանդություններից կարող ենք ազատվել միայն առաջ ընթանալով, տնտեսական բարենորոգման շրջանակներում տնտհաշվարկային հարաբերություններ ներդնելով: Հրամանների միջոցով ինչ-որ կերպ խթանելու բոլոր փորձերը, ընկերներ, դատապարտված են արդեն վաղուց, տասնամյակներով չեն աշխատել: Առավել ևս չեն աշխատի ներկայումս: Ժողովրդական տնտեսության կառավարման բոլոր աստիճաններում, աշխատավորական բոլոր կոլեկտիվների մոտ պետք է լինեն աշխատանքի այդ բնագավառներում ձեռնարկվելիք գործողությունների որոշակի պլաններ:

Ընկերներ, մեր հասարակությունը ոչ պակաս չափով, քան էկոնոմիկայի վիճակից, անհանգստացած է մի շարք բարդ պրոբլեմներով, որոնք ծագել են ազգամիջյան հարաբերությունների ոլորտում, շոշափում են խորհրդային ֆեդերացիայի ապագան: Այստեղ մենք հենվում էինք 1989 թվականի սեպտեմբերյան պլենումում ընդունված ազգային հարցի վերաբերյալ պլատֆորմի վրա՝ աշխատելով այն փաստաթղթի նախագծի վրա, որն այսօր քննարկում ենք:

Մենք կարծում ենք, որ ազգային հարցի վերաբերյալ պլատֆորմը կարող է ելակետային հիմք հանդիսանալ մեր ֆեդերացիայի վերափոխման համար: Դրա հետ մեկտեղ, փորձել ենք հաշվի առնել այն նորը, ինչը ծնունդ է առել արդեն վերջին ժամանակներս: Նախահամագումարյան պլատֆորմում մատնանշվում են խորհրդային ֆեդերացիայի պայմանագրային սկզբունքի հետագա զարգացման հնարավորությունն ու անհրաժեշտությունը: Խոսքն ըստ էության այնպիսի իրավական պայմանների ստեղծման մասին է, որոնք ֆեդերատիվ կապերի տարբեր ձևերի գոյության հնարավորություն բացեին: Մենք կողմ ենք ազգային կացութաձևերի բազմազանության, բազմերանգության՝ խորհրդային պետության ամբողջականության ու միասնության պահպանման պայմաններում:

Ինչպես ես հասկանում եմ, մենք բոլորս վերջին ժամանակներս հնարավորություն ենք ունեցել լրջորեն մտորելու ազգային հարաբերությունների ոլորտում տիրող իրադրության և ծավալվող պրոցեսների մասին: Այն բանի առողջ ըմբռնումների կողքին, թե մենք ինչպես բացահայտենք ֆեդերացիայի պոտենցիալը, ինչպիսի քայլեր պետք է ձեռնարկվեն այդ նպատակով, ի հայտ են եկել նաև շատ այնպիսի բաներ, որոնք մեծ տագնապ են առաջ բերել երկրում և որոնք չեն կարող մնալ առանց պատշաճ գնահատականի ու հետևությունների: Ինձ թվում է, կուսակցության և հասարակության մեջ, թեև մեծ դժվարություններով, ոչ առանց կարծիքների բախումների, ձևավորվում է այն բանի ըմբռնումը, թե որքան կարևոր է այդ բնագավառում կշռադատված և պատասխանատու կերպով գործելը: Ավելի ու ավելի է գիտակցվում, թե ուր կարող են տանել անջատական ազգայնական, առավել ևս



ծայրահեղական կարգախոսներն ու կոչերը, ինչ հետևանքներ դա կարող է ունենալ մարդկանց, ժողովուրդների, մեր ամբողջ պետության համար:

Մենք պետք է սկզբունքային լինենք այնպիսի հարցերում, ինչպիսին է պայքարը ազգայնականության, ազգայնամոլության, անջատականության դեմ: Եվ այսպես վարվելով, միաժամանակ պարզորոշ հասկանանք, որ ազգային ոլորտում գոյություն ունեն իրական, ոչ մտացածին պրոբլեմներ, դրանք լուծումների են սպասում վերակառուցման ճանապարհին: Որքան արագ ընդունվեն Միության և հանրապետությունների իրավասությունների սահմանազատման, գործնականորեն նրանց քաղաքական ու տնտեսական ինքնուրույնության ամրապնդման, ազգային ինքնավարությունների իրավունքների ընդլայնման որոշումները, որքան արագորեն իրականացվի բոլոր լեզուների ու մշակույթների ներդաշնակ զարգացման միջոցառումների համալիրը, այնքան արագորեն մարդիկ գործնականում կտեսնեն խորհրդային նոր ֆեդերացիայի հսկայական առավելությունները:

Ի դեպ, ամեն կարգի անջատականները, ազգայնամոլները, ազգայնականները սա լավ են հասկանում, շտապելով իրենց շահադիտական նպատակներով օգտագործել ժողովուրդների ազգային ինքնագիտակցության աճը: Հաշվարկն ակնհայտ է. նախահարձակ հարված հասցնել վերակառուցմանը, որն սպառնում է ի չիք դարձնել նրանց հեռագնա մտադրությունները: Եվ չպետք է այդ հարցերում լինել պարզամիտ, միամտի մեկը:

Վերջին ժամանակներս դա առանձնապես ակնբախորեն դրսևորվեց Ադրբեջանում ու Հայաստանում տեղի ունեցած իրադարձություններում: Հազիվ թե այսօր արժե մանրամասնորեն շարադրել կոնֆլիկտի ամբողջ նախապատմությունը, որի արմատները գտնվում են հեռու անցյալում: Ուզում եմ ձեր ուշադրությունը հրավիրել պրոբլեմի միայն սկզբունքային կողմի վրա: Կոնֆլիկտի կենտրոնում Լեռնային Ղարաբաղն է:

Այդ ինքնավար մարզի տնտեսական և մշակութային զարգացման մեջ լուրջ պրոբլեմներ էին կուտակվել և, ինչպես դուք հիշում եք, Կենտրոնական կոմիտեն ու կառավարությունը խոշոր միջոցներ ձեռնարկեցին դրանց լուծման համար: Կարելի էր ակնկալել իրավիճակի բարելավում, այդ պիրկ հանգույցը քանդելու հույս երևաց: Բայց հենց նման հեռանկարը երկու հանրապետություններում և հենց ԼՂԻՄ-ում որոշակի ուժերի սրտովը չէր: Այն ուժերի, որոնց կոկորդում վերակառուցումը ոսկորի նման խրված է, որոնք վախենում են դեմոկրատացումից ու հրապարակայնությունից: Չեն ընդունում օրենքը: Ես խոսում եմ ստվերային էկոնոմիկայի՝ այդ իսկական մաֆիայի ներկայացուցիչների մասին, որն ամեն կերպ բորբոքում է ազգամիջյան երկպառակության բոցը և ճնշում գործադրում պետական մարմինների վրա ազգային վերածննդի լոզունգներով:

Իհարկե, երկու հանրապետությունների իշխանություններին և կուսակցական մարմիններին պատիվ չի բերում, որ ընկրկելով ճնշման առջև, հանձնում էին մի դիրքը մյուսի հետևից: Ցավոք, Ադրբեջանի և Հայաստանի նաև մտավորականության շատ ներկայացուցիչներ չկարողացան ճիշտ գնահատել իրավիճակը, խորամուխ լինել տեղի ունեցողի իսկական պատճառներին և դրական ազդեցություն գործել դեպքերի ընթացքի վրա: Իսկ այդ նույն ժամանակ հակավերակառուցական, կաշառված ուժերը կարողացան իրենց ձեռքը վերցնել առաջնությունը, մոլորության մեջ ընկած մարդկանց գործողություններն ուղղել դեստրուկտիվ հուն:

Ես պետք է ասեմ, որ չի եղել թերևս մի այնպիսի հարց, որին Մոսկվայում վերջին երկու տարվա ընթացքում այնքան ուշադրություն նվիրվեր, որքան այդ հարցին: Կենտրոնի սկզբնական դիրքորոշումն այն էր, որ Լեռնային Ղարաբաղի շուրջն առաջացած կոնֆլիկտը պետք է այնպես կարգավորվի, որ չլինեն հաղթողներ ու պարտվածներ: Այլապես անխուսափելի են թշնամանքի և բռնության նոր բռնկումներ, զոհեր ու կորուստներ: Ի դեպ, մենք այդպես էլ գործում էինք նաև իրավիճակի առավել մեծ սրման պահերին: Եվ այնուամենայնիվ դեպքերի ընթացքը հաղթահարել չհաջողվեց: Անցած տարվա վերջին բարդ իրադրության մեջ երկու հանրապետությունների իշխանության բարձրագույն մարմինները ընդունեցին այնպիսի որոշումներ, որոնք էլ ավելի սրեցին իրավիճակը: Բանը հասավ այնտեղ, որ հանրապետությունները հայտնվեցին ամենաիսկական պատերազմի եզրին: Երկու կողմերից էլ սկսվեցին սպառազեն խմբերի ընդհարումներ, զենքի զավթում, հարձակում զորքերի դասավորության տեղերի և կարգի պահպանության մարմինների վրա, ուժեղացավ երկաթուղիների և խճուղիների շրջափակումը: Առանձնակի դաժանությամբ էին աչքի ընկնում ջարդարարների փորձողությունները Բաքվում: Ու եթե արտակարգ դրություն

չմտցվեր նախ Լեռնային Ղարաբաղում ու մի քանի սահմանամերձ շրջաններում, իսկ հետո Բաքվում, ապա կհեղվեր արդեն ոչ թե տասնյակ, այլ հազարավոր ու տասնյակ հազարավոր մարդկանց արյունը: Ահա թե, իսկն ասած, ինչի մասին է խոսքը:

Այս պլենումի խնդիրը չէ տեղի ունեցածի լիակատար վերլուծությունը, բայց արդեն այսօր հարկ է ասել, որ այստեղ հասարակ բացատրություններ ու հեշտ լուծումներ չկան: Գլխավոր դասն այն է, որ ազգերի և ազգամիջյան հարաբերությունների զարգացման բոլոր հարցերը պետք է լուծվեն վերակառուցման, հասարակության նորացման, դեմոկրատական երկխոսության միջոցով:

Ուժով, տեռորի մեթոդներով, ժողովրդին ահաբեկելու և իշխանությունների վրա ճնշում գործադրելու մեթոդներով գործելու փորձերը դեպի քաոս տանող ուղիղ ճանապարհ են՝ դրանից բխող բոլոր հետևանքներով հանդերձ: Անհրաժեշտ է ամեն ինչ անել բացառելու նման զարգացման հնարավորությունը երկրի ցանկացած ռեգիոնում:

Էլ ավելի ակնհայտ դարձավ, թե որքան մեծ ու պատասխանատու է կուսակցական, խորհրդային, պետական մարմինների, մեր կադրերի, մտավորականության դերը: Հարկավոր է լիակատար պարզություն մտցնել. նա ով զիջում է սկզբունքային դիրքերը, տուրք տալիս հետամնաց տրամադրություններին կամ նույնիսկ ընկնում ազգայնական շմոլքի ազդեցության տակ, քաղաքական կյանքից դուրս կհայտնվի: Կարևոր է ոչ միայն մեր կադրերի սկզբունքային դիրքորոշումը: Քիչ բան չի նշանակում մարդկանց հուզող գործնական պրոբլեմները լուծելու կարողությունը: Մենք գիտենք, թե որքան դժվար ու հիվանդագին են ծավալվում վերակառուցական պրոցեսները այդ երկու հանրապետություններում: Սա է պատճառներից մեկը, որ ազգայնական ուժերին հաջողվեց մարդկանց տանել իրենց հետևից: Այստեղ մտորելու շատ բան ունենք նաև մենք: Երևի կենտրոնը չօգտագործեց իր բոլոր հնարավորությունները ու հեղինակությունը արդյունավետորեն ներգործելու հանրապետություններում վերակառուցման ընթացքի վրա, զորավիգ լինելու վերակառուցման կողմնակիցներին:

Ես արդեն ասացի, որ վճռական գործողությունների շնորհիվ հաջողվեց խուսափել ավելի մեծ ողբերգությունից: Հազարավոր մարդկանց անվտանգության սպառնալիք կար, սա է ընդունված որոշումների գլխավոր շարժառիթը: Բայց բանը նաև այն է, որ ազգայնական, հակախորհրդային խմբավորումները բացեիբաց ձեռք բարձրացրին սահմանադրական կարգերի վրա, ձգտում էին իշխանության, ձգտում էին հաստատել բնավ ոչ դեմոկրատիա, այլ բիրտ ուժի ու մարտնչող նացիոնալիզմի դիկտատուրա: Դա ըստ էության բռնի հեղաշրջման փորձ էր՝ ոչ ավել, ոչ պակաս: Դրա համար նախապատրաստված էին բոլոր կառուցվածքները, ամենից առաջ ռազմական կառուցվածքները: Ու երբ որոշ քաղաքական ուժեր փորձում են սիրաշահել Ադրբեջանի ժողովրդական ճակատի այդ մասին, ապա դա սոսկ վկայում է, թե նրանք իրենք ինչ են հետապնդում:

Մենք ցավակցություն ենք հայտնում այն բոլոր հայերին, ադրբեջանցիներին, ռուսներին, ուրիշ ազգությունների մարդկանց, ովքեր այդ ողբերգական օրերին կորցրին իրենց մերձավորներին և տուժեցին իրենք: Կուսակցությունը և խորհրդային կառավարությունը հնարավոր ամեն բան կանեն, որ թեթևացնեն փախստականների տառապանքները և նրանց օգնեն վերադառնալու նորմալ կյանքի:

Խորհրդային բանակի և ներքին գործերի մինիստրության ներքին զորքերի զինվորներն ու սպաները հանդես բերեցին ժողովրդի հանդեպ պատասխանատվության բարձր զգացում, արիություն, տոկունություն և դրանով կանխեցին արյունահեղության էսկալացումը, փրկեցին հազարավոր մարդկանց կյանքը, նախադրյալներ ստեղծեցին ռեգիոնի իրադրության հանդարտեցման համար:

Հիմա գլխավորը կախված է երկու հանրապետությունների ժողովուրդներից, նրանց կուսակցական ու պետական ղեկավարությունից: Նրանց գործողություններից է կախված, թե որքան շուտ կվերականգնվի նորմալ կյանքը և կդադարեցվի արտակարգ դրությունը: Եվ իհարկե, պետք է ամեն ինչ անել, որ որքան կարելի է շուտ լուծվեն Լեռնային Ղարաբաղի պրոբլեմները, համենայն դեպս անհետաձգելի, առաջնակարգ պրոբլեմները, և այն պրոբլեմները, որ ծագել են նրա շուրջը, սահմանադրական սկզբունքների անվերապահ կիրառմամբ հանդերձ, ներառյալ Ադրբեջանի ամբողջականությունը:

Ընկերներ, վերակառուցման պայքարի տրամաբանությունը մեզ մոտեցրեց նոր խոշոր որոշումների ընդունմանը: Ամենամոտ ժամանակներս ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը կընդունի օրենքներ սեփականության մասին, հողի մասին, տեղական ինք-



նակառավարման ու տեղական տնտեսության, հարկային համակարգի, Միության և հանրապետությունների իրավասության սահմանազատման մասին. կընդունի ուրիշ հիմնարար օրենսդրական ակտեր: Ծավալվել է քաղաքական ռեֆորմի երկրորդ փուլը, որն ընդգրկում է հանրապետություններում ու տեղերում իշխանության մարմինների ձևավորումը: Սկսում են երևալ նոր խորհրդային ֆեդերացիայի ռեալ ուրվագծերը: Ըստ էության գոյանում են մեր ամբողջ քաղաքական, տնտեսական ու հասարակական կյանքի նոր ձևեր, իշխանության մարմինների նոր համակարգով, որին բնորոշ են խոր դեմոկրատացումը և ինքնակառավարչական հիմունքների զարգացումը:

Հասարակությունն իսկապես անցնում է նոր որակական վիճակի: Բայց այն պրոցեսները, որ կուսակցությունը գիտակցաբար սկզբնավորեց և որոնք, անկասկած, դրական պտուղներ կտան, ապահովագրված չեն, ինչպես մենք արդեն տեսնում ենք, անկայունության դրսևորումներից, կառավարման թուլացումից, կենտրոնախույս միտումներից: Պետք է ասել, հասարակության մեջ դա արդեն զգացվում է, մարդկանց մեջ առաջ բերելով նման երևույթների անըմբռնողություն ու տագնապ: Այժմ ստրատեգիական խնդիրների տեսանկյունից և հաշվի առնելով ներկա իրադրությունները՝ իշխանության վերին էշելոնում ուժերի վերախմբավորում կատարելու անհրաժեշտություն է առաջանում՝ վերակառուցական պրոցեսների դինամիկացումն ապահովելու, դրանց անշրջելիությունը ավելի ամուր կերպով երաշխավորելու նպատակով: Եվ միևնույն ժամանակ դեստրուկտիվ միտումների վրա զսպիչ ազդեցություն գործելուն, այն ամենի ճանապարհին պատնեշ կանգնեցնելու նպատակով, ինչը բարդացնում և արգելակում է հասարակության նորացումը:

Խոսքը էկոնոմիկայի և ազգամիջյան հարաբերությունների ոլորտի գործընթացների մասին է, որոնք վերաբերում են մարդկանց անվտանգությանը, կարգուկանոնին և կարգապահությանը:

Պետք է ավելացնել, որ այս հարցն արդեն լայնորեն քննարկվում է: Մարդիկ ողջունում են այն, ինչ արված է օրենսդիր մարմինների դերի մեծացման, կուսակցական և պետական մարմինների պարտականությունների սահմանազատման նպատակներով: Միևնույն ժամանակ ակնհայտ դժգոհություն է արտահայտվում պահանջվող տեղերում վճռական գործողությունների պակասից: Հարց է դրվում ստեղծելու պրեզիդենտության հաստատություն՝ վերակառուցման քաղաքականության կենսագործման համար անհրաժեշտ բոլոր լիազորություններով: Պլատֆորմի նախագծում այդ մասին, բնականաբար, հակիրճորեն է խոսվում: Ընդգծվում է միայն անհետաձգելիորեն գործելու անհրաժեշտությունը: Կարծում եմ, այս հիմնահարցը արժանի է Կենտրոնական կոմիտեի այս պլենումի քննարկմանը: Մենք իրավունք չունենք, թույլ տալու, որ վերակառուցման զարգացումը, դրան առնչվող պլանների ու մտահղացումների իրագործումը սպառնալիքի տակ դրվեն:

Հիմա չեմ անդրադառնում քաղաքական և իրավական ռեֆորմի մյուս հարցերին, որոնք թեև խտացված, բայց բավարար ամբողջական շարադրված են պլատֆորմի նախագծում: Դրանք ձևակերպված են XIX կուսակցական կոնֆերանսի որոշումների ոգով, և, իհարկե, այդ պահից անցած ժամանակամիջոցում մեր հասարակության ձեռք բերած փորձը հաշվի առնելով: Մեր զարգացման գլխավոր ուղղությունը մնում են դեմոկրատացումը, իրավական պետականության և ինքնակառավարվող սոցիալիստական հասարակության ստեղծումը:

Ընկերներ: Պլատֆորմի նախագծում, բնականաբար, անպայման հարկավոր էր ասել վերակառուցման միջազգային կողմի մասին, աշխարհին ուղղված արդի հայացքի մասին, որը կանխորոշում է մեր արտաքին քաղաքական ստրատեգիան: Միջազգային գործերում Խորհրդային Միության կուրսը, որը հիմնված է նոր մտածողության վրա, ուժեղ խթան ստացավ կուսակցության XXVII համագումարում, առավել ծավալուն, կոնկրետ տեսք էր ստանում արտաքին աշխարհի հետ կապերի բնույթի փոփոխմանը զուգընթաց, գործնականորեն մարմնավորվում էր:

Դրա հիմունքներն ու սկզբունքները շարադրվեցին Միավորված ազգերի կազմակերպությունում 1988 թվականի վերջերին: Նոր արտաքին քաղաքականությունը օրենսդրական կարգով ամբողջ ժողովրդի անունից վավերացված է ժողովրդական դեպուտատների համագումարի և Գերագույն խորհրդի փաստաթղթերում:

Պլատֆորմի նախագծում նշվում են խնդիրներ միջազգային գործունեության բոլոր ուղղություններով, ներկայի և մոտ ապագայի համար: Այսպիսով, գնալով դեպի XXVIII համագումար, մենք հավաստում ենք մեր նորարարական, իրոք վերակա-

ռուցողական արտաքին քաղաքականությունը: Այն լայն արձագանքի և ճանաչման է արժանացել ամբողջ աշխարհում և արդեն հանգեցրել է միջազգային իրադրության էական առողջացման: Հենց այդպիսի քաղաքականությունն է համապատասխանում մեր ներքին պահանջմունքներին, ամրապնդում խորհրդային պետության միջազգային դիրքերն ու վարկը, նպաստում համայն աշխարհում քաղաքակիրթ հարաբերությունների ձևավորմանը, մարդկությանը մոտեցնում իր զարգացման խաղաղ ժամանակաշրջանին:

Ներկայումս մեզ համար գլխավորն է առաջ տանել զինաթափման ու բանակցությունների գործընթացը, խորացնել երկխոսությունն ու փոխըմբռնումը միջազգային զարգացման վճռական տեղամասերում, ըստ ամենայնի նպաստել եվրոպական տան շինարարությունում առաջին ներդրումների ընդլայնմանն ու ամրապնդմանը: Եվ դրա շրջանակներում կատարելագործել դաշնակցային հարաբերությունները Արևելյան Եվրոպայի երկրների հետ, որոնք իրոք դրա կարիքն ունեն: Նման մոտեցումը արժանանում է դրանց նոր ղեկավարության ըմբռնմանը և պատասխան քայլերին:

Պլատֆորմի նախագծում ձևակերպվում են ԽՄԿԿ-ի սկզբունքային մոտեցումները անվտանգության հարցերի նկատմամբ, պաշտպանության նկատմամբ և նշվում է գործը ռազմական ռեֆորմի հանգեցնելու անհրաժեշտությունը: Հիմա ես ուզում եմ անդրադառնալ հարցի մեկ-երկու կողմերի: Մենք մտադիր ենք այսուհետև էլ վարել զինաթափման գիծը, հաշվի առնելով ստեղծվող իրավիճակը, բանակցությունների շրջանակներում: Իրատեսորեն գնահատելով միջազգային դրությունը, հաշվի ենք առնում ինչպես դրա զարգացման դրական կողմերը, այնպես էլ գոյություն ունեցող վտանգները: Այո, իրադրությունն աշխարհում վերջին տարիներին բարելավվել է, բայց պատերազմի վտանգը դեռ պահպանվում է, ուժի մեջ են մնում Ամերիկայի Միացյալ Նահանգների և ՆԱՏՕ-ի բնավ էլ ոչ պաշտպանողական դոկտրինաներն ու կոնցեպցիաները, գոյություն ունեն դրանց բանակներն ու ռազմական բյուջեները: Ուստի և լավ վարժեցված ու հանդերձավորված զինված ուժերը մեզ հարկավոր են: Իհարկե, դրանք կարոտ են կատարելագործման, վերակառուցման, բայց դրանց համալրման սկզբունքի փոփոխմանը, ամբողջությամբ վերցրած դրանց շինարարությանը հարկավոր է մոտենալ մեծ պատասխանատվությամբ, աշխարհի իրավիճակի փոփոխությունների տեսանկյունից:

Զորքերի ու սպառազինությունների իրականացվող և հնարավոր կրճատումների կապակցությամբ ծագել են որոշ հարցեր: Մասնավորապես, երկյուղներ են արտահայտվում, թե դա չի՞ թուլացնում արդյոք երկրի պաշտպանունակությունը: Ըստ երևույթին հարկավոր են լրացուցիչ պարզաբանումներ, որոնք ցույց տան, որ զինված ուժերի կրճատումն ու վերակազմակերպումը իրականացվում են պաշտպանության, հուսալի պաշտպանության համար, խելամիտ բավարարության սկզբունքին խստիվ համապատասխան:

Սրությամբ ծառացել են մի շարք սոցիալական հիմնահարցեր, հատկապես զինծառայողներին և պահեստային կամ պաշտոնաթող անձանց բնակարանով ապահովելու, նրանց աշխատանքի տեղավորելու հարցերը: Պաշտպանության մինիստրությունը միայնակ ի զորու չէ դա լուծել: Կառավարությունն ընդունել է մի շարք որոշումներ, որոնք փոքր-ինչ թուլացնում են հարցերի սրությունը, բայց ըստ երևույթին պահանջվում է դեռ շատ բան անել սպաներին և նրանց ընտանիքներին վերջին ժամանակներս ծագած սոցիալական անպաշտպանվածության զգացումից ազատելու համար: Պետք է հասնել այդ որոշումների կատարմանը: Նաև անհրաժեշտ է թվում նախապատրաստել և հաստատել զինծառայողների և նրանց ընտանիքների անդամների, ինչպես նաև պահեստի սպաների ու պրապորշչիկների սոցիալական ապահովման նպատակային ծրագիր:

Եվս մեկ լուրջ հարց: Այն վերաբերում է մասսայական լրատվության միջոցներում բանակի ու նավատորմի կյանքի լուսաբանմանը: Դա պետք է լինի ճշմարտացի, խորհրդային բանակի, զինվորների և սպաների մարտական գործի նկատմամբ հարգալից: Մենք չենք կարող համաձայնել հակաբանակային պրոպագանդային, մեր ժողովուրդը թույլ չի տա և չի համաձայնի դրան: Բայց դա չի վերացնում այն անհրաժեշտությունը, որ մեր բանակի գործունեության հարցերը ևս պետք է հասարակության մեջ դեմոկրատական քննարկման առարկա լինեն:

Ընկերներ, իմ ելույթի սկզբում ես փաստարկներ շարադրեցի հասարակության զարգացման ներկա փուլում վերակառուցման պայմաններում հասարակության մեջ



կուսակցության դերի վերաիմաստավորման, կուսակցական, պետական և տնտեսական մարմինների պարտականությունների սահմանազատման վերաբերյալ: Ըստ երևույթին անհրաժեշտություն կար արձանագրել Կենտկոմի դիրքերն այդ արմատական հարցի առթիվ: Բայց սկզբունքային առումով մենք չենք կարող պլատֆորմում շրջանցել կուսակցության նորացման նաև այն կողմերը, որոնք վերաբերում են դրա ներքին վերակառուցմանը: Առանց դրա նա չի կարողանա արդի պայմաններում իրացնել առաջատար քաղաքական ուժի իր պոտենցիալը: Նախագծում այդ առումով բովանդակվում են մի շարք առաջարկություններ: Իհարկե, կուսակցության ներքին կյանքին վերաբերող ամեն ինչ ծավալուն ձևով պետք է ներկայացնի կանոնադրությունը: Այդուհանդերձ, պլատֆորմում ևս, քանի որ խոսքը ԽՄԿԿ-ի նոր դերի մասին է, հարկավոր էր մտցնել հիմնական դրույթները:

Բուն կուսակցության վերակառուցման անկյունաքարը հանդիսացող գաղափարը (ուզում եմ, ընկերներ, դա ասել ևս մեկ անգամ) **կուսակցական զանգվածների իշխանության հաստատումն է:**

Այս կապակցությամբ մենք պետք է նորովի հասկանանք սկզբնական կուսկազմակերպությունների դերը, այն բանում, ինչը վերաբերում է կուսակցության մեջ ընդունելուն և նրանից դուրս գալուն, անդամավճարների օգտագործմանը, կուսակցության՝ որպես քաղաքական ավանգարդի, նոր դերի հետ կապված խնդիրների իրագործմանը և շատ այլ բաների: Նորովի պետք է վերաիմաստավորվի շրջանային, քաղաքային օղակի դերը, էապես ընդլայնվեն նրանց իրավունքները: Մենք պետք է բոլոր մակարդակների կուսակցական մարմինների կազմավորման համակարգի մեջ մտցնենք այնպիսի փոփոխություններ, որոնք վճռական խոսք ապահովեն կոմունիստների համար:

Հարկավոր է ընտրությունների նոր արդյունավետ մեխանիզմ, որը նույնպես վավերագրված լինի կանոնադրության մեջ: Եվ մենք համաձայնության ենք եկել, որ կուսակցական շինարարության հարցերի համաժողովում քննարկվելուց հետո այս հարցի առթիվ եղած առաջարկությունները հանձնվելու են Կենտկոմի անդամներին, պլենումի մասնակիցներին:

Ապագա կանոնադրության մեջ պետք է պարզորոշ ասված լինի վերևից մինչև ներքև բոլոր ընտրովի մարմինների վերահսկելիության ու հաշվետվության մասին կոմունիստներին և ապարատինը՝ ընտրովի մարմիններին: Մեզ վաղուց է անհանգստացնում այն հարցը, որ կուսակցության ներքին կյանքը, նրա գործելակերպը ԽՄԿԿ-ի անդամներին հնարավորություն չեն ընձեռում կանոնավոր, սիստեմատիկ հիման վրա մասնակցելու նրա քաղաքականության կազմավորման գործընթացին: Այս առթիվ շատ է խոսվել, ինչպես ասում են՝ բարի ցանկությունների պակաս չկա: Բայց տակավին ավարտուն կերպով մշակված չէ, թե հատկապես ինչպիսի մեխանիզմ պետք է ստեղծել այս գաղափարը պրակտիկայում իրագործելու համար: Սա այն պրոբլեմներից մեկն է, որ հարկավոր է քննարկել նախահամագումարյան բանավեճի ընթացքում կուսակցության նոր կանոնադրությունը նախապատրաստելիս:

Նախնական առումով ես հարցը կառաջադրեի այսպես. վերադաս մարմինների, ընդհուպ մինչև կենտրոնական կոմիտեի աշխատանքի վրա կոմունիստների ներգործությունը վճռական չափով կախված է նրանից, թե որքան ռեալ կերպով նրանց համար հնարավորություն կապահովվի այդ մարմիններ ուղարկելու իրենց ներկայացուցիչներին, նրանց, ում իրենք վստահում են, իսկական լիդերների, վերակառուցման ակտիվ ջատագովների: Մենք պետք է, ես դրանում համոզված եմ, արտահայտվենք այն բանի օգտին, որ կուսակցության բոլոր ընտրովի մարմիններում, ներառյալ ԽՄԿԿ Կենտկոմում, հուժկու կերպով ներկայացված լինեն ակտիվ, կուսակցության մեջ հայտնի առաջավոր բանվորներ և գյուղացիներ:

Եվ երկրորդ: Պետք է մինչև հիմա եղածից ավելի մեծ մասշտաբներով ապահովվի կուսակցության ղեկավարության, ներառյալ Կենտկոմի և նրա կողմից ընտրվող մարմինների գործունեության հրապարակայնություն: Այն ժամանակ, իրոք, բառափոխելով Լենինի արտահայտությունը, կոմունիստները կկարողանան ամեն ինչ իմանալ, և ամեն ինչի մասին դատել գիտակցաբար, անել հետևություններ, ներկայացնել առաջարկություններ:

Կարծում ենք, որ մենք քաղաքականության կազմավորմանը կոմունիստների իրական մասնակցությունը ընդլայնում ենք նաև նրանով, որ կուսակցական մարմիններին հնարավորություն ենք ընձեռում հասարակական զարգացման տարբեր պրոբլեմների առթիվ իրենց պլատֆորմները մշակել այս կամ այն ռեգիոնի պայմանների

համեմատ: Պետք է գործն այնպես տանել, որ կոմունիստները հնարավորություն ունենան իրապես մասնակցելու այդ փաստաթղթերի նախապատրաստմանը, նրանց քննարկմանը և ընդունմանը:

Սրանով կուսակցական դեմոկրատիայի պրոբլեմները իհարկե չեն սպառվում: Արտահայտելով մի քանի նկատառումներ, ես ցանկանում էի ուշադրություն հրավիրել նախահամագումարյան բանավեճի ընթացքում դրանց ավելի խոր մշակման վրա:

Պլատֆորմի նախագիծը պարունակում է բարձրագույն կուսակցական ատյանների կառուցվածքը փոփոխելու առաջարկություն: Անշուշտ, բանն այն չէ, որ նոր անվանումներով հավաստենք պատրաստակամությունը նորացման նկատմամբ: Առաջարկությունների իմաստը դեմոկրատիզմի գործոնի ուժեղացումն է կուսակցության վերնաերում, նրա ղեկավար օղակներում: Միաժամանակ՝ լավագույն պայմանների ստեղծումը նրանց, որպես աշխատող կոլեկտիվների, գործունեության համար:

Կարող են հարց տալ՝ իսկապես, ինչու՞ է հարկավոր կրճատել կուսակցության Կենտրոնական կոմիտեի կազմը: Եկեք սա քննարկենք: Մեր ելակետը եղել է այն, որ Կենտկոմը նախ և առաջ վերածենք մշտական հիման վրա աշխատող մարմնի: Նաև հարկավոր է հրաժարվել Կենտրոնական կոմիտեի կազմավորման առավելապես պաշտոնեական սկզբունքից, որն ըստ էության եղել է երկրում իշխանության կուսակցական-պետական համակարգի արտահայտությունը: Մեր կարծիքով, այս ամենը նաև կնպաստի կուսակցական կազմակերպությունների հետ Կենտկոմի մշտական կապի ամրապնդմանը, քանի որ նման կապը ավելի մեծ չափով տեղի կունենա ոչ թե ապարատի միջոցով, այլ Կենտրոնական կոմիտեի ընտրովի անդամների միջոցով: Բացի սրանից, նրանք համարյա բոլորը կմասնակցեն Կենտկոմի այս կամ այն հանձնաժողովի աշխատանքին, ըստ էության դառնալով համակուսակցական մակարդակի քաղաքական գործիչներ:

Այստեղ հարմար է ասելու նաև կենտրոնական կուսակցական ապարատի մասին: Պարզ է, որ կուսակցության դերի փոփոխումից հետո հարկավոր է որակական կազմով նս ուրիշ ապարատ: Այն պետք է լինի բառիս բուն իմաստով Կենտկոմի օգնականը, գործի միանգամայն նրա վերահսկողության ներքո:

Կենտրոնական կոմիտեի վերջին տարիների աշխատանքի փորձը հանգեցնում է այն հետևությանը, որ անհրաժեշտ է նրան օժտել կոոպտացիայի (ինքնահամալրման) իրավունքով: Բնականաբար կանոնադրական հստակ սահմանափակումով որոշակի շրջանակներում: Եվ միաժամանակ առաջարկվում է այդ դեպքում լուծարքի ենթարկել ԽՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուների հաստատությունը:

Ես կանգ չեմ առնում պլատֆորմի նախագծի մեջ առաջ քաշված մյուս հարցերի վրա: Քաղբյուրոն ելնում է նրանից, որ մենք համատեղ ջանքերով կմշակենք մի այնպիսի փաստաթուղթ, որը կպատասխանի կոմունիստներին, բոլոր խորհրդային մարդկանց հուզող կենսահույզ հարցերին: Դրանով իսկ երկրում վերակառուցման պրոցեսները կստանան մի նոր դրական հուժկու ազդակ:

---

## ԽՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1990 ԹՎԱԿԱՆԻ ՓԵՏՐՎԱՐԻ 7-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

### ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԹԻՎ ԽՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԱՏՖՈՐՄԻ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

**1. Հավանություն տալ, հաշվի առնելով քննարկումը և պլենումի մասնակիցների արած դիտողությունները, կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծին:**

**2. Կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագիծը մամուլում հրապարակել կուսակցական կազմակերպություններում, կոմունիստների և բոլոր աշխատավորների շրջանում լայն քննարկման համար:**

---

## ԽՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1990 ԹՎԱԿԱՆԻ ՓԵՏՐՎԱՐԻ 7-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

### ԼԻՏՎԱՅԻ ԿՈՄԿՈՒՍԻ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1. ԽՄԿԿ Կենտկոմի պլենումը Լիտվայի կոմկուսի XX համագումարի ընդունած որոշումները դիտում է որպես Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության հետ նրա կազմակերպական-քաղաքական խզում:

Պլենումը դատապարտում է նման գործողությունները, քանի որ դրանք խարխլում են ԽՄԿԿ-ի միասնությունը և մեծ վնաս հասցնում խորհրդային ֆեդերացիայի նորացման պրոցեսներին, հասարակությանը՝ ամբողջությամբ վերցրած:

2. Պլենումը զորավիգ է Լիտվայի այն կոմունիստներին, որ կազմավորել են Լիտվայի կոմկուսի (ԽՄԿԿ-ի պլատֆորմով) ժամանակավոր Կենտկոմ, պահպանել հավատարմությունը ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, հանդես են գալիս դեմոկրատացման և մեր բազմազգ Միության բոլոր ժողովուրդներին համախմբող ԽՄԿԿ-ի նորացման պայմաններում հեղափոխական վերափոխումներ կատարելու օգտին:

Պլենումը ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարում է Լիտվայի կոմկուսի (ԽՄԿԿ-ի պլատֆորմով) ժամանակավոր Կենտկոմին ամբողջ անհրաժեշտ օգնությունը ցույց տալ նրա պրակտիկ գործունեության ճանապարհին և դրա համար ստեղծել նյութական ու ֆինանսական համապատասխան պայմաններ:

3. Պլենումը լիտվացի այն ընկերներին, ովքեր մտել են Լիտվայի ինքնուրույն կոմունիստական կուսակցության մեջ, մեկ անգամ նս կոչ է անում մինչև ԽՄԿԿ XXVIII համագումար կախակայել Լիտվայի կոմկուսի XX համագումարի որոշումները այն մասում, որ վերաբերում են ԽՄԿԿ-ի ծրագրի ու կանոնադրության գործողությանը, և ԽՄԿԿ-ի պլատֆորմում կանգնած Լիտվայի կոմկուսի հետ միասին այդ հիման վրա ընտրել ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակներ:

Պլենումը դիմում է Լիտվայի կոմունիստներին՝ կոչ անելով մասնակցել ԽՄԿԿ Կենտկոմի նախահամագումարյան պլատֆորմի նախագծի քննարկմանը, գիտակցել իրենց պատմական պատասխանատվությունը լիտվական ժողովրդի բախտի, մեր ամբողջ բազմազգ պետության բախտի, հեղափոխական վերակառուցման բախտի համար:

---

# Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ԵԼՈՒՅԹԸ ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում 1990 թվականի փետրվարի 6-ին

Ընկերներ։

Ուզում եմ ընդհանուր առմամբ պաշտպանել ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծի առթիվ այստեղ՝ պլենումում արված քննադատական դիտողությունները։ Միևնույն ժամանակ գտնում եմ, որ թե պլատֆորմի նախագծում և թե Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ նախատեսված են մեր կուսակցության նորացման, վերակառուցման պրոցեսների խորացման սկզբունքային մոտեցումները։

Այսօրվա դառն իրողությունն այնպիսին է, որ վերակառուցում սկսած կուսակցությանը ավելի ու ավելի հաճախ են սկսում ներկայացնել որպես պահպանողական ուժ։ Ավելին, «վերակառուցում» բուն հասկացությունը սկսել է աստիճանաբար օտարվել կուսակցությունից։

Եթե ճիշտ է, որ հարկ չկա չափից ավելի դրամատիկ ներկայացնել երկրի իրադրությունը, ապա նույնքան էլ ճիշտ է, որ հարկ չկա պարզեցնել այն։ Մեր ռեգիոնում իրադրությունն այսօր սոսկ դրամատիկ չէ. այն անցել է վտանգավոր սահմանագիծը։ Եվ միանգամայն հասկանալի են այն անհանգստությունն ու մտահոգությունը, որ արտահայտվեցին պլենումում։

Մենք մեր հանրապետությունում սթափ ենք գնահատում իրադրությունը, մեզ հաշիվ ենք տալիս, թե որքան բարդ ու պայթյունալի իրավիճակ է ստեղծվել, տեսնում ենք ռեգիոնում թույլ տրված սխալներն ու վրիպումները, ամեն ինչ պետք է անենք՝ թուլացնելու լարվածությունը, հաստատելու հաշտություն և ազգամիջյան համաձայնություն։ Բայց դրա համար անհրաժեշտ է դասեր քաղել դեպքերի ողբերգական ծավալումից, անկանխակալ գնահատել այն իսկական պատճառներն ու շարժառիթները, որ հանգեցրին ճգնաժամի, հասկանալ, թե ինչու ապարդյուն անցան իրադրության նորմալացման նպատակով գործադրված ջանքերը։

Ակներև է, որ մեր ռեգիոնում ավելի հիվանդագին դրսևորվեցին վերակառուցման այսօրվա պրոցեսների հակասությունները։ Մարդկանց սրված սոցիալական սպասելիքները բախվեցին հասարակության դեմոկրատական կառավարման չկարգավորված մեխանիզմներին։ Ավելին, հին մտածողության իներցիան այնքան ուժեղ գտնվեց, որ վերակառուցման շնորհիվ կյանքի կոչված ԼՂԻՄ-ի հայ բնակչության կամքի արտահայտությունը ընկալվեց որպես Հայկական ԽՍՀ-ի ոտնձգություն հարևան հանրապետության տարածքի նկատմամբ։

Նորից եմ ուզում ընդգծել, որ ԼՂԻՄ-ի հարցը տարածքային վեճ չէ։ Այդ հարցը առաջադրել է ոչ թե Հայաստանը, այլ հենց Լեռնային Ղարաբաղի բնակչությունը, և դրա էությունը ժողովրդի ինքնորոշումն է։

Ցավոք, պրոբլեմի լուծման քաղաքական ուղիների որոնումից սկսեցին առաջ անցնել ուրիշ պրոցեսներ։ Սումգայիթում հայերի զանգվածային ջարդերը ինքնավար կազմավորման և միութենական հանրապետության փոխհարաբերությունների հարցը վերածեցին ազգամիջյան կոնֆլիկտի։ Իսկ Հայաստանի տնտեսական շրջափակումը ազգամիջյան կոնֆլիկտը վերածեց միջհանրապետական կոնֆլիկտի։

Կարծում եմ, լուրջ սխալներից մեկն այն է, որ մենք չնկատեցինք, թե վերակառուցման ճանապարհը հատող ինչպիսի խոր ակոս բացեց Սումգայիթը։ Սումգայիթյան հանցագործությանը ժամանակին քաղաքական գնահատական տալը կարևոր էր ոչ միայն հայ ժողովրդի կամ հենց իր՝ ադրբեջանական ժողովրդի համար։ Այդ գնահատականի կարիքն ունեին մեր ամբողջ հասարակությունը, պետությունը։

Որպես սումգայիթյան սինդրոմի հետևանք մեր կյանք մուտք գործեց մի աննախադեպ երևույթ՝ գաղթականներ խաղաղ ժամանակներում։ 300 հազարից ավելի հայեր ստիպված եղան հեռանալ Ադրբեջանից և 157 հազար



ադրբեջանցիներ՝ Հայաստանից։ Մեր պարտքն է ամեն կերպ թեթևացնել նրանց վիճակը, այլ ոչ թե նրանց վրա գցել սոցիալական աղետների պատասխանատվությունը։

Հայաստանում և Ադրբեջանում տեղի ունեցած դեպքերի միջև հավասարության նշան դնելը, ինչպես որ համառորեն անում են մասսայական ինֆորմացիայի որոշ միջոցներ, նշանակում է մոլորության մեջ գցել հասարակական կարծիքը։ Պրոցեսների ամբողջ փոխկապակցվածությամբ հանդերձ չի կարելի չտեսնել, որ դրանք էականորեն տարբերվում են իրարից։

Հարևանների հետ ոչ մի կոնֆլիկտով չի կարելի բացատրել կամ արդարացնել այն, ինչ հնարավոր դարձավ Բաքվում, Նախիջևանում, Լենքորանում և այլ վայրերում՝ ջարդերն ու սպանություններն ըստ ազգային հատկանիշի, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, խորհուրդների զավթումը, հարյուրավոր կիլոմետրերով ԽՍՀՄ պետական սահմանի ավերումը։ Այս ամենը ակնբախորեն ցույց տվեց, որ Լեռնային Ղարաբաղի շուրջ կրքերի բորբոքումը սոսկ ծխածածկույթ էր որոշակի ուժերի համար, որոնք հեռուն գնացող նպատակ են հետապնդում՝ տապալել օրինական կառավարությունը։

Այն, ինչ տեղի ունեցավ, չի տեղավորվում մարդկային նորմալ գիտակցության շրջանակներում, բառացիորեն ցնցեց մեր հանրապետությունը։ Նորից երևացին հազարավոր գաղթականներ՝ արդեն երրորդ ալիքը։ Բարդացավ իրավիճակը սահմանամերձ շրջաններում։ Ուժեղացավ Հայաստանի շրջափակումը, որը ձմռան ամիսներին հյուծեց էներգետիկ, հումքային, նյութական ու պարենային ռեսուրսները։ Ամենուրեք, ներառյալ երկրաշարժի գոտին, կազմալուծված է կյանքը։

Իրադրությունը, ուղղակի կասեմ, վերին աստիճանի շիկացել է։ Հանրապետական կուսկազմակերպությունը ստիպված է մեծ ճիգ գործադրել հույզերի պոռթկում թույլ չտալու, իրադրությունը վերահսկողությունից դուրս չթողնելու համար։

Հասկացեք մեզ, ընկերներ, շրջափակման պատճառով հանրապետությունը արդեն ամիսներ շարունակ փաստորեն գտնվում է պաշարման մեջ։ Ջախողված է թե հանրապետությունում և թե հանրապետությունից դուրս կատարվելիք մատակարարումների ծրագիրը, աղետի գոտու վերականգնման ծրագիրը։ Դա անվստահություն է ծնում միութենական մակարդակով ընդունված որոշումների նկատմամբ, խթանում է կենտրոնի դեմ ուղղված տրամադրությունները և լրջորեն բարդացնում մեր աշխատանքը։

Երբ ժողովուրդը ծանր հոգեվիճակում է, ամեն ինչ չէ, որ հաջողվում է վերահսկել։ Հունվարի 15-ից, երբ արդեն երրորդ օրն էր, ինչ Բաքվում տեղի էին ունենում ջարդերը, հարձակումները հայկական բնակավայրերի վրա, երբ փաստորեն անպաշտպան էր մնացել պետական սահմանը Երևանից ընդամենը մի քանի տասնյակ կիլոմետր հեռավորության վրա, երբ սպառազեն ջոկատների մեծ ուժեր էին կուտակվել հանրապետությանը հարող շրջաններում, իրավապահ մարմիններին չհաջողվեց կանխել զենքի գրավման դեպքերը։

Մենք բնավ չենք արդարացնում այդ հակաօրինական գործողությունները։ Հայկական ԽՍՀ դատախազության մարմինները 104 քրեական գործ են հարուցել զենքի հափշտակման փաստերի առթիվ։ Բայց պետք է տեսնել ողջ ճշմարտությունը։ Այստեղ ավելի շատ գործել է ժողովրդի պատմական դառը փորձով և այսօրվա իրողություններով թելադրված ինքնապաշտպանության բնական մղումը։ Երբ մարդիկ զգացին, որ բանակը պաշտպանում է իրենց, նրանք սկսեցին ակտիվորեն աջակցել զինվորականների գործողություններին, սկսվեց հափշտակված զենքի կամավոր հանձնումը։

Մենք ինքնաքննադատաբար ենք գնահատում իրավիճակը, չենք ձգտում խուսափել պատասխանատվությունից։

Մենք չէ, որ պիտի գնահատենք կատարված աշխատանքը։ Բայց այս դժվարագույն պայմաններում հաջողվել է հանրապետության կուսակցական ու պետական կառուցվածքների բոլոր օղակների աշխատանքը նպատակամղել մարդկանց մեջ վաղվա օրվա հանդեպ հավատի վերականգնմանը, թույլ չտալ քաոս և կազմալուծում, կանխել գործադուլները, միութենական մարմինների օգնությամբ կարգավորել բնակչության կենսապահովումը։

Ժողովրդի ճավաքական բանականությունը, իմաստնությունն ու զսպվածությունը ավելի հուսալի և կայուն գտնվեցին, քան այսրոպեական հույզերն ու պոռթկումները։

Մենք ծայրահեղականներին չենք նույնացնում ադրբեջանական ժողովրդի հետ և հանդես ենք գալիս հանրապետությունների երկխոսության օգտին, ճգնաժամից դուրս գալու փոխընդունելի ուղիների որոնման օգտին։ Ամենքի համար պարզ է, որ ազգամիջյան համաձայնության ճանապարհը լինելու է դժվարին ու երկար, բայց մենք պատրաստ ենք անցնելու մեր մասը։ Բանակցությունների համար հիմք պետք է ստեղծել ղեկավարման բոլոր մակարդակներում, հարցերի քննարկմանը մասնակից դարձնելով երկու հանրապետությունների ողջամիտ ուժերին, օգտագործելով նաև ժողովրդական դիվանագիտության հնարավորությունները։ Ստեղծված իրավիճակում հետագա առճակատումը կանխելու իրական ուղին Լեռնային Ղարաբաղը ժամանակավորապես կենտրոնին ենթարկելն է։ Կարծում եմ, ռեգիոնի իրավիճակին առնչվող պրոբլեմների ամբողջ համալիրը, այդ թվում մարզի հարցը, հարկավոր է հատուկ քննարկման առարկա դարձնել ԽՍՀՄ Գերագույն խորհրդի առաջիկա նստաշրջանում։

Ընկերներ։

Ուզում եմ պաշտպանել ԽՄԿԿ XXVIII համագումարի անցկացման ժամկետները մոտեցնելու անհրաժեշտության վերաբերյալ այստեղ արտահայտված կարծիքը։ Այդ է պահանջում կուսակցության մեջ և երկրում ստեղծված իրավիճակը։

Սկզբունքորեն ճիշտ է այն դրույթը, որ հանրապետական կոմկուսները պետք է հնարավորություն ունենան մշակելու սեփական ծրագրային փաստաթղթեր, իրավունք ունենան ուղղակիորեն մասնակցելու ամբողջ կուսակցության կյանքի սկզբունքային հարցերի լուծմանը։ Մի շարք ռեգիոններում վերջին տարիներին եղած դեպքերը ցույց տվեցին, որ հենց ժողովրդին հուզող և հաճախ հանրապետությունների յուրահատկությունն արտահայտող բազմաթիվ հարցերի առաջադրումից և լուծումից հանրապետությունների կոմկուսների ինքնամեկուսացումը հանգեցնում է նրանց հեղինակության նվազմանը, դեպքերի ընթացքի վրա քաղաքական ազդեցության թուլացմանը։

Հանրապետական կոմկուսների ծրագրերը նաև ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեին կօգնեն խորապես պարզելու տեղերում լուծվող պրոբլեմների յուրահատկությունը և խուսափելու միութենական հանրապետությունների կոմկուսների գործունեության գնահատման նկատմամբ համահարթեցված մոտեցումից։

Հույժ կարևոր է, որ պլատֆորմի նախագծում հավաստված է կուսակցության հավատարմությունը ազգերի ինքնորոշման իրավունքի լենինյան սկզբունքին։ Վերջին տարիների դասերը համոզում են, որ միայն այդ սկզբունքի հետևողական իրացումը թույլ կտա լուծել ազգամիջյան հարաբերությունների բարդ հարցերը։

Պլատֆորմի նախագծում նշվում է, որ ԽՄԿԿ-ն կպայքարի կառավարող կուսակցության իր դիրքի պահպանման համար, բոլոր մակարդակների իշխանության մարմիններ կազմելու ժողովրդի մանդատն ստանալու համար։ Դրանով իսկ ընդունվում է, որ մեր հասարակության մեջ արդեն ձևավորվել են ուրիշ քաղաքական կառուցվածքներ (ժողովրդական ճակատներ, շարժումներ, միություններ և այլն), որոնք կարող են վիճարկել հասարակության մեջ ԽՄԿԿ-ի մենաշնորհ դիրքը։ Թվում է, որ հարկավոր է ուղղակի ասել այդ մասին, արձանագրել երկրում սկսված բազմակուսակցական համակարգի ձևավորման փաստը՝ ԽՄԿԿ-ի համար նախատեսելով այդ կազմակերպություններից առավել առաջադիմականների հետ դաշինք կազմելու հնարավորությունը՝ հանուն ընդհանուր նպատակների։

Գտնում եմ, որ ճիշտ կլիներ, եթե կուսակցությունն ինքը հանդես գար ԽՍՀՄ սահմանադրության 6-րդ հոդվածը վերանայելու նախաձեռնությամբ։ Անկեղծ լինենք, ներկա տեսքով դրա պահպանումը չի նպաստում ԽՄԿԿ-ի հեղինակությանը։

Մեզ հարկավոր է ուժեղ դեմոկրատական իշխանություն, որը ի վիճակի է հասարակությունը դուրս բերել ճգնաժամից և ապահովել դրա դինամիկ զարգացումը։ Համաշխարհային փորձը վկայում է, որ հասարակական կառավարման դեմոկրատական կառուցվածքներն արդյունավետորեն են գործում պրեզիդենտական կառավարման ձևի հետ լավագույն զուգորդման պայմաններում։ Եվ ինձ թվում է, որ երկիրը կարիք ունի լայն լիազորություններով օժտված պրեզիդենտի։

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## ՌԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՎԿԱՍՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ 1921 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒԼԻՍԻ 5-Ի ՈՐՈՇՈՒՄԸ ԱՆՕՐԻՆԱԿԱՆ ՃԱՆԱՉԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ելնելով նրանից, որ Լեռնային Ղարաբաղը՝ Արցախը, Հայաստանի անբաժան մասն է և երբեք չի պատկանել Ադրբեջանին, որ 1918—21 թթ. Լեռնային Ղարաբաղը եղել է անկախ և ունեցել է իր պետականությունը՝ հանձին երկրամասի ժողովրդական կառավարության և հայոց ազգային խորհրդի,

ելնելով այն հանգամանքից, որ Լեռնային Ղարաբաղի ճակատագիրը որոշվել է ոչ սահմանադրական և իրավասություն չունեցող կուսակցական մարմնի՝ ՌԿ(Բ)Կ Կենտկոմի կովկասյան բյուրոյի 1921 թ. հուլիսի 5-ի կամայական որոշմամբ, որը կայացվել է ուրիշ պետության ազգային-պետական շինարարությանը մասնակցելու իրավունք չունեցող սուբյեկտի կողմից և, հետևաբար, դրսևորվել է որպես խորհրդային մեկ սուվերեն հանրապետության ներքին գործերին միջամտելու կոպիտ ակտ, որի հետևանքով ոտնահարվել են ազգերի ինքնորոշման իրավունքի սկզբունքները, հաշվի չի առնվել երկրամասի 95 տոկոս կազմող հայ բնակչության, ինչպես նաև Խորհրդային Հայաստանի բնակչության կամքը,

հենվելով ազգերի ազատ ինքնորոշման իրավունքի, ինչպես նաև ՌԿ(Բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի 1920 թ. հուլիսի 7-ի՝ Վ. Ի. Լենինի նախագահությամբ անցկացված նիստի որոշման վրա, որով Լեռնային Ղարաբաղի ճակատագիրը պետք է որոշվեր բնակչության էթնիկական կազմով և նրա կամքով, Հայաստանի Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության 1921 թ. հունիսի 12-ի դեկրետի վրա, որը ելնելով Ադրբեջանի հեղկոմի դեկլարացիայից և Հայաստանի ու Ադրբեջանի սոցիալիստական հանրապետությունների կառավարությունների միջև կայացած համաձայնությունից, Լեռնային Ղարաբաղը հռչակել է Հայաստանի Խորհրդային Հանրապետության անբաժան մաս,

նշելով, որ Լեռնային Ղարաբաղի հայ բնակչության ազատ ինքնորոշման իրավունքը ճանաչվել է նաև Ադրբեջանական ԽՍՀ հեղկոմի 1920 թ. նոյեմբերի 30-ի որոշմամբ և դեկտեմբերի 1-ի դեկլարացիայով,

հաստատակամորեն հանդես գալով ազգերի ինքնորոշման իրավունքի սկզբունքների պաշտպանությամբ, որն ամրագրված է ԽՍՀՄ կազմավորման պայմանագրով և ԽՍՀՄ սահմանադրությամբ՝ որպես բազմազգ խորհրդային պետության մեջ ազգամիջյան հարաբերությունների հիմք,

Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Գերագույն խորհուրդը որոշում է.

Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ՌԿ(Բ)Կ Կենտկոմի կովկասյան բյուրոյի 1921 թ. հուլիսի 5-ի որոշումը, որի հետևանքով խախտվել է Լեռնային Ղարաբաղի հայության ինքնորոշման իրավունքը, անեքսիայի է ենթարկվել Հայկական ԽՍՀ տարածքի մի մասը և հայ ժողովուրդը բաժանվել է երկու հատվածի, համարել իրավասությունից զուրկ, միջազգային իրավունքին անհարիր և անօրինական։

**Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության նախագահ՝**
**Հ. ՈՍԿԱՆՅԱՆ**

**Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության քարտուղար՝**
**Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

13 փետրվարի 1990 թվականի, քաղ. Երևան

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՆՑԵՊՑԻԱՆ

## (ՏԵՍՈՒԹՅՈՒՆ, ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ, ՊՐԱԿՏԻԿԱ)

Ա. ՀԱԿՈԲՅԱՆ

ԱՐԴԻ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ, հրապարակայնությունը և քաղաքական նոր մտածողությունը հնարավորություն են ընձեռում անկողմնակալ կերպով լուսաբանել մեր անցյալի ու ներկայի պատմության հարցերը, այն մաքրել աղավաղումներից ու կեղծիքներից։ Այդ տեսակետից մեծապես կարևորվում է խորհրդային հասարակության և մասնավորապես կոմունիստական կուսակցության պատմության, նրա տեսության ու քաղաքականության հարցերի ճշմարիտ լուսաբանումը։ Ներկայիս պատմակուսակցական գրականության առջև ծառացած, թերևս, առանցքային խնդիրը սոցիալիզմի լենինյան կոնցեպցիայի բացահայտումն է, խնդիր, որն ունի ոչ միայն գիտատեսական ու մեթոդաբանական, այլև սոցիալիզմի նորացման, նրա հետագա ճակատագրի ճիշտ կանխորոշման համար չափազանց խոշոր նշանակություն։ Ձերբազատվելով ավանդական մտածողության ստերեոտիպերից ու ստալինյան «Համառոտ կուրսի» դոգմաներից՝ մենք, ի վերջո, պետք է կարողանանք ճշմարիտ պատասխան տալ, թե իրականում ինչպիսի՞ն են եղել սոցիալիզմի և նրա կառուցման վերաբերյալ Վ. Ի. Լենինի հայացքներն ու պատկերացումները, դրանք ինչպիսի՞ հակասական էվոլյուցիա են ապրել, եղե՞լ է արդյոք սոցիալիզմի հստակ կոնցեպցիա, որքանո՞վ է կոմունիստական կուսակցությունն իր պրակտիկ քաղաքականությամբ հետևել այդ հայեցակետին և, վերջապես, ինչպիսի՞ն է պատկերանում սոցիալիզմի արդի կոնցեպցիան ու որքանո՞վ է լենինյան գաղափարատեսական ժառանգությունը կիրառելի մեր ներկայիս ճգնաժամ ապրող հասարակարգի առողջացմանն ու նորացմանը։

Սոցիալիզմի մասին լենինյան հայացքներն ու պատկերացումները՝ խարսխված մարքսիզմի գաղափարատեսական ժառանգության, Ռուսաստանի և մյուս երկրների հեղափոխական շարժումների փորձի վրա, իսկ ավելի մեծ չափով հետհոկտեմբերյան ժամանակաշրջանում՝ կապված սոցիալիստական շինարարության գործնական խնդիրների լուծման հետ, յուրօրինակ էվոլյուցիա են ապրել, փոփոխվել ու հարստացել նոր գաղափարներով ու դրույթներով։ Դեռ նախահեղափոխական շրջանում Վ. Ի. Լենինը, որպես համոզված մարքսիստ, բավականաչափ հստակ պատկերացնում էր ապագա սոցիալիստական հասարակարգի հիմնական ելակետային սկզբունքները։ Դրանք ուղղակի և անուղղակի ձևով արտահայտված են այդ շրջանի նրա մի շարք աշխատություններում, կուսակցության ծրագրային փաստաթղթերում և ավելի հանգամանորեն՝ հատկապես «Պետություն և հեղափոխություն» գրքում, որտեղ սակայն մի շարք դրույթներ ու դատողություններ տակավին կրում էին վերացական, ուտոպիական միտումներ։ Պետք է նկատել, որ նախահեղափոխական շրջանում Լենինին, բոլշևիկյան կուսակցության մյուս գործիչներին, բնականաբար, ավելի շատ մտահոգել են ոչ այնքան ապագա հասարակության կառուցվածքային սկզբունքները, որքան կոնկրետ հեղափոխական պայքարը, կուսակցության մինիմում և մաքսիմում ծրագրային պահանջների իրականացումը։ Այդուհանդերձ, սոցիալիստական հասարակական- տնտեսական ֆորմացիա ասելով հասկացվում էր այնպիսի մի հասարակարգ, ուր քաղաքական իշխանությունը և արտադրության հիմնական միջոցները պատկանում են աշխատավորներին (ժողովրդին), չկան շահագործում, գործազրկություն, հարուստներ ու աղքատներ, հասարակական-արտադրական հարաբերությունների և քաղաքական կառուցվածքի հիմքում ընկած են աշխատանքը, դեմոկրատիան, սոցիալական արդարությունը, մարդու իրավունքների պաշտպանությունը, ժողովրդավարությունը, հումանիզմը, բարձր արտադրողականությունը, առաջադիմությունը և այլ դասակարգային ու համամարդկային արժեքներ։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո բոլշևիկները, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, դեռևս պարզունակ և սխեմատիկ պատկերացում ունենալով նոր հասարակարգի վերաբերյալ, կարծում էին, որ սոցիալիզմի կառուցումը կարճատև ակտ է և հենվելով այդ գաղափարի վրա նրանք փորձեցին ռազմակոմունիստական, «կարմիրգվարդիական գրոհի» միջոցով արմատախիլ անել հին կարգերը և «մտցնել» սոցիալիզմ ու կոմունիզմ։ Դեռ այն ժամանակ, կուսակցության փաստաթղթերում, արդեն խոսվում էին մարքսյան գաղափարի անհապաղ իրականացման, մոտալուտ կոմունիստական բաշխման, տարերային շուկայական հարաբերություններից ու ապրանքային արտադրությունից հրաժարվելու մասին։ Արդեն 1920 թ. հոկտեմբերին Վ. Ի. Լենինը կոմերիտմիության համառուսաստանյան III համագումարում արտասանած ճառում հավաստիացնում էր երիտասարդ սերնդին, որ նրանք կապրեն կոմունիզմի օրոք (տես ԵԼԺ, հ. 41, էջ 378—379)։ Ցավոք, պահի համար ասված, դեռևս կյանքում չփորձված ու չստուգված Լենինի այդ ու նմանատիպ այլ ասույթներն ու դրույթները հետագայում կուսակցության ղեկավարությունն ընդունեց որպես մոտակա ծրագրային խնդիր, դրան հասնելու համար դրսևորեց շտապողականություն և թույլ տվեց կոպիտ, կարելի է ասել ճակատագրական սխալներ։

Սոցիալիզմի կոնցեպցիա ասելով պետք է հասկանալ ոչ միայն այդ հասարակարգին բնորոշ սկզբունքներն ու հատկանիշները, այլ նաև դրանց հասնելու կոնկրետ ձևերը և ուղիները։ Չի կարելի թերագնահատել վերջինիս նշանակությունը, քանզի հենց մեր երկրի փորձով կարելի է համոզվել, թե որքան թանկ կարող է արժենալ նոր հասարակարգի կառուցման գործում թույլ տրված ամեն մի շեղում կամ աղավաղում։ Այդպիսով 1918—1920 թթ. սոցիալիզմի մասին լենինյան պատկերացումները հիմնականում կայուն էին, սակայն դրան հասնելու ձևերն ու մեթոդները՝ արատավոր, որովհետև այդ շրջանում խնդիր էր դրված նոր հասարակարգը կառուցել ոչ թե օրինաչափ ձևով, այլ հինը ջարդելով ու խորտակելով։ Արդեն 1921 թ. հոկտեմբերին Վ. Ի. Լենինը խոստովանում էր իրենց թույլ տված սխալների մասին՝ հատկապես տնտեսական շինարարության ասպարեզում (տե՛ս ԵԼԺ, հ. 44, էջ 179—180)։

Մինչև վերջին ժամանակներս մեր պատմակուսակցական գրականության մեջ ընդունված էր ասել, թե «ռազմական կոմունիզմի» քաղաքականությունը պայմանավորված է եղել լոկ նորաստեղծ խորհրդային երկրին պարտադրված օտարերկրյա ռազմական ինտերվենցիայով և քաղաքացիական պատերազմով։ Իհարկե ոչ ոք չի կարող ժխտել այն ժամանակվա արտառոց ծանր պայմանների ունեցած ազդեցությունը կուսակցության պրակտիկ քաղաքականության վրա։ Սակայն «ռազմական կոմունիզմը» բացատրել միայն ինտերվենցիայով ու քաղաքացիական կռիվներով, միակողմանի և թերի կլիներ։ Բանն այն է, որ մինչև այդ պատերազմների սկսվելը Վ. Ի. Լենինի և կուսակցության մյուս նշանավոր գործիչների՝ Լ. Տրոցկու, Ն. Բուխարինի, Գ. Զինովևի, Լ. Կամենևի, Ի. Ստալինի և ուրիշների մեջ արդեն ձևավորվել էր ռազմակոմունիստական գաղափարախոսությունը։ Կարելի է նշել նաև այն հանգամանքը, որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից սկսած՝ 1917 թ. վերջերին և

ՀԱԿՈԲՅԱՆ ԱՐԱՐԱՏ ՄԽԻԹԱՐԻ— ԵՐՊՀ XX դարի սոցիալ-քաղաքական ուսմունքների պատմության ամբիոնի դոցենտ, պատմական գիտությունների թեկնածու։

1918 թ. սկզբներին նորաստեղծ խորհրդային իշխանության ընդունած մի շարք դեկրետներ ու օրենքներ արդեն բովանդակում էին ռազմակոմունիստական քաղաքականության նպատակներ։ Օրինակ, 1918 թ. հունվարին խորհուրդների համառուսաստանյան III համագումարում ընդունված իր բովանդակությամբ էսէռագյուղացիական «Հողի սոցիալիզացիայի մասին հիմնական օրենքը» փաստորեն արտադրության ու բաշխման հավասարարական գաղափար էր (տե՛ս Декреты Советской власти, т. I, М., 1957, стр. 408)։ Այլ բան է, որ այդ օրենքը կյանքում չիրականացավ և չէր էլ կարող իրականանալ։ Համենայնդեպս արդեն 1918 թ. ապրիլի վերջին հանձինս համառուսաստանյան ԿԳԿ-ի նիստում խորհրդային իշխանության հերթական խնդիրների մասին Վ. Ի. Լենինի զեկուցման և դրա հիման վրա ընդունված որոշման՝ մենք գործ ունենք բռնի մեթոդներով կապիտալիզմից անմիջականորեն կոմունիզմի անցման պաշտոնական քաղաքականության հետ (տե՛ս նույն տեղը, հ. II, Մ. 1959, էջ 192—193, Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 295—339, 340—344)։

Կարծում ենք, որ բոլշևիկների մեջ տվյալ ժամանակաշրջանում «ռազմական կոմունիզմը» սոցիալիզմի և նրա հեռանկարի համար ճանապարհ հարթող գերիշխող կոնցեպցիա էր։ «Ռազմական կոմունիզմի» տեսության և պրակտիկայի ուսումնասիրությունը հիմք է տալիս ասելու, որ վարչահրամայական կառավարման համակարգը ձևավորվել է ոչ թե 30—40-ական թվականներին Ստալինի կողմից, ինչպես այդ մասին պնդում են ժամանակակից պաշտոնական և ոչ պաշտոնական մի շարք փաստաթղթերում ու հրապարակումներում, այլ այդ համակարգը ձևավորվել է քաղաքացիական կռիվների տարիներին (1918—1920 թթ.) «ռազմական կոմունիզմի» քաղաքականության պայմաններում։ Կառավարման վարչական սիստեմն էր, որ ծնեց բյուրոկրատիզմը, սոցիալիզմի հակոտնյան։ Հետագայում նէպ-ը կարողացավ նկատելի հարված հասցնել վարչական համակարգին, սակայն 20-ական թվականների վերջին, նէպ-ի վերացումից հետո, այն վերակենդանացվեց Ստալինի կողմից և խաղաղ ժամանակներում հասցվեց կատարելության։

Ռազմակոմունիստական քաղաքականությունը սերտորեն կապված էր նաև այդ ժամանակաշրջանում լայնորեն տարածված համաշխարհային հեղափոխության գաղափարախոսության ու քաղաքականության հետ։ Բոլշևիկյան կուսակցության շատ գործիչներ սխալմամբ կարծում էին, որ «ռազմական կոմունիզմը» այն միակ անհրաժեշտ կարգավիճակն է, որ կպահպանվի մինչև համաշխարհային սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։ Հայտնի է, որ Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցությամբ, ինչպես և առաջին աշխարհամարտի կրակե քուրայում մի շարք պատերազմող երկրներում խմորվող աշխատավորների դժգոհության ընդհանուր ֆոնի վրա կոմունիստական կուսակցության ավանգարդը տարված էր համաշխարհային հեղափոխության մտայնությամբ։ Ընդ որում նույնիսկ «հեղափոխության արտահանման», անգամ առանձին փոքրաթիվ ժողովուրդների ազգային շահերը զոհաբերելու գնով (ինչպես որ, օրինակ, կատարվեց հայ ժողովրդի հանդեպ), նա պատրաստ էր մղել «հեղափոխական պատերազմ», ցույց տալ «ինտերնացիոնալ օգնություն» բոլոր երկրների պրոլետարներին՝ կործանելու համար շահագործողական-կապիտալիստական կարգերը և ապահովելու համաշխարհային սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։ Այդ գաղափարախոսության ու քաղաքականության առանձնապես ակտիվ ջատագովներն էին Լ. Տրոցկին, Գ. Զինովևը, Ն. Բուխարինը, Գ. Պյատակովը, Ե. Պրեոբրաժենսկին և ուրիշներ։ Դրա հետ որոշակի հույսեր էր կապել ու այդ բանին հավատում էր նաև Վ. Ի. Լենինը (տե՛ս ԵԼԺ, հ. 41, էջ 282, 415—416 և այլն)։ Համաշխարհային հեղափոխության պատրանքը շարունակվեց մինչև 20-ական թվականների սկզբները, այսինքն մինչև այն ժամանակ, երբ Արևմուտքի երկրներն սկսեցին տնտեսական կայունացում ապրել և աստիճանաբար մարեցին հեղափոխական շարժումները։ Միայն այդ բանից հետո կուսակցության մեծամասնությունը հանգեց մեկ առանձին երկրում սոցիալիզմի շինարարության գաղափարին և ձեռնամուխ եղավ (արդեն միանգամայն այլ մեթոդներով ու լծակներով) դրա իրականացմանը։

«Ռազմական կոմունիզմի» քաղաքական դասերից մեկն այն էր, որ այնպիսի մի հետամնաց և գյուղացիական երկիր, ինչպիսին Ռուսաստանն էր, չէր կարելի շտապել համատարած էքսպրոպրիացիայի, երկրի տնտեսական



բազմակացութաձևությունը վերացնելու և բռնի միջոցներով «վերևից» սոցիալիստական արտադրահարաբերություններ մտցնելու հարցերում։

Այն բանից հետո, երբ Լենինը և կուսակցության մյուս գործիչները համոզվեցին, որ «ռազմական կոմունիզմի» քաղաքականությունը ոչ միայն իրեն չի արդարացնում, այլև մտել է փակուղի, դարձել արտադրողական ուժերի զարգացման արգելակ, երկրում առաջ բերել քաղաքական խոր ճգնաժամ՝ հարուցելով ժողովրդական զանգվածների, առաջին հերթին գյուղացիության, սուր դժգոհությունը, 1921 թ. գարնանը կտրուկ կերպով փոխեցին իրենց հայացքները սոցիալիզմի շինարարության մեթոդների և ուղիների հարցում։ Լենինի և կուսակցության մշակած նոր քաղաքական կուրսը հետագայում ստացավ նոր տնտեսական քաղաքականություն (նէպ) անունը։ Արդարությունը պահանջում է ասել, որ նէպի գաղափարի մասին (հանձին նոր հարկային սիստեմի) առաջին անգամ հանդես է եկել Լ. Տրոցկին, դեռ 1920 թ. փետրվարին, Կենտկոմի քաղբյուրոյին ուղղված մի գրության մեջ։

Նէպը նորույթ էր «ռազմական կոմունիզմի» համեմատությամբ։ Այդ քաղաքականությամբ վերանայվեց սոցիալիզմին անցնելու կուսակցության մշակած ուղին։ Մի խոսքով, փոխվեց սոցիալիզմին անցման հայեցակետը։ Երբ ասում ենք սոցիալիզմի լենինյան կոնցեպցիա, մենք առաջին հերթին պետք է նկատի ունենաք 1921—1923 թթ. նէպի քաղաքականության հիման վրա սոցիալիզմի կառուցման մասին հիմնադրույթները։

Սոցիալիզմի լենինյան հայեցակետի շրջադարձի իմաստն այն էր, որ 1918—1920 թթ. իրականացվող ռազմակոմունիստական պարենմասնատրման, տնտեսական ու քաղաքական հարկադրանքի, անշուկա, անապրանք, անփող, ձախ հավասարեցման հարաբերություններից, պարտադիր աշխատանքային պարհակից կտրուկ շրջադարձ կատարվեց դեպի ապրանքաշուկայական հարաբերությունները, կոոպերացիան, տնտհաշվարկը, սեփականության և տնտեսական գործունեության ձևերի բազմազանությունը, անձնական շահագրգռվածությունը, կառավարման դեմոկրատական մեթոդները և այլն։ Նէպը կենսունակ եղավ շնորհիվ այն բանի, որ բխում էր կյանքի օրենքներից, մարդու անձնական շահերից։ 1921—1923 թթ. պրակտիկայով ստուգված և հետագա զարգացում ստացած սոցիալիզմի ու կոոպերացիայի մասին Լենինի պատկերացումներն արդեն այնպես էին տարբերվում նախորդ փուլից, որ նա խոստովանում էր սոցիալիզմի վերաբերյալ իր ունեցած ամբողջ տեսակետն արմատական փոփոխության ենթարկելու մասին (տե՛ս ԵԼԺ, հ. 45, էջ 444)։

Պետք է նկատել, որ անգամ 1921—1923 թթ. ընթացքում նույնպես Վ. Ի. Լենինի հայացքները նէպի և սոցիալիզմի վերաբերյալ փոփոխվել են։ Ինչպես հայտնի է, նէպի առաջին տարում Լենինը կարծում էր, որ դա ժամանակավոր նահանջ է, տակտիկական մանևր, սակայն ավելի ուշ (1923 թ.), չնայած ծանր հիվանդությանը, նա նէպին արդեն մոտենում էր որպես ավելի լուրջ և երկարատև քաղաքականության, որպես «մի ամբողջ պատմական դարաշրջանի» (ԵԼԺ, հ. 45, էջ 440)։ Նէպի լենինյան կոնցեպցիան ներառում էր կոոպերացիայի, տնտհաշվարկի, անձնական շահի ու խթանման, սոցիալիստական տնտեսավարման սկզբունքներ։ Նէպի մասին Լենինի վերջնական եզրահանգումն այն էր, որ այն ոչ թե ժամանակավոր միջոցառում է, այլ տևական քաղաքականություն, սոցիալիստական շինարարության ստրատեգիական կուրս։

Այդ քաղաքականությունն ամենևին էլ չէր նշանակում սոցիալիզմի գաղափարից հրաժարում, ընդհակառակը, այն նշանակում էր սոցիալիզմի հիմնավորված հարձակում տնտեսական մարզում։ Ընդ որում, այդ անցումը տեղի էր ունենալու աշխատավորական լայն զանգվածների մասնակցությամբ, այդ թվում բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի ամրապնդման, նրանց շահերի միասնացման միջոցով։ Սակայն նէպը մտցնելուց հետո էլ կուսակցությունը մեկընդմիշտ հրաժարվեց սոցիալիզմի կառուցման ռազմակոմունիստական մեթոդներից։ Ամբողջ 20-ական թվականներին տնտեսական և քաղաքական բնույթի շատ հարցեր լուծելիս իներցիայի ուժով շարունակվում էին պրոբլեմների լուծման ռազմակոմունիստական, բռնի, ոչ դեմոկրատական, վարչական մեթոդներն ու եղանակները։ Օրինակ, 1921—1923 թթ. հենց այդպիսի ուղիով «լուծվեց» Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի պրոբլեմը, երբ ՌԿ(բ)Կ կովկասյան երկրային կոմիտեի բյուրոն, Ստա-

լինի մասնակցությամբ, առանց հաշվի առնելու մարզի բնակչության բացարձակ մեծամասնության ցանկությունը, առանց որևէ իրավական հիմքի, այն բռնակցեց Ադրբեջանին։

Ինչևէ, քանի դեռ շարունակվում էր նէպի քաղաքականությունը, էկոնոմիկայի և հասարակական-քաղաքական կյանքի ղեկավարման ասպարեզում տիրապետող էր տնտեսական լծակներով, դեմոկրատական մեթոդներով կառավարումը, սակայն, երբ 1929 թ. փաստորեն վերացվեց նէպը և «օպոզիցիոն» խմբերի ջախջախումից հետո հաստատվեց Ստալինի անձնական իշխանությունը, մոռացության մատնվեցին սոցիալիզմի և նրա կառուցման վերաբերյալ 1921—1923 թթ. Վ. Ի. Լենինի զարգացրած հայեցակետի հիմնադրույթները։ Կրկին ամբողջ ուժով վերակենդանացվեց ռազմակոմունիստական սնանկացած գաղափարախոսությունը և քաղաքականությունը՝ հանձինս վարչահրամայական համակարգի, բռնի կոլեկտիվացման, համընդհանուր պետականացման, կոշտ ցենտրալիզմի, ոչ դեմոկրատական մեթոդների, արտակարգ միջոցառումների, հակաիրավական գործողությունների, դասակարգային խտրական քաղաքականության՝ էկոնոմիկայի ոչ տնտեսական լծակներով, անհաշվեկշռված զարգացմամբ և այլն։

Ամենայն հավանականությամբ 1929 թ. «մեծ բեկում էր» սոցիալիզմի կառուցման լենինյան սկզբունքներից հրաժարվելու տեսակետից։ Այսինքն, 20-ական թթ. վերջին և 30-ական թթ. սկզբներին հիմք դրվեց այնպիսի մի հասարակարգի, որն այժմ տարբեր հետազոտողների կողմից որակվում է որպես դեֆորմացված, զորանոցային, պետական-ադմինիստրատիվ, ռազմակոմունիստական, ռազմաֆեոդալական սոցիալիզմ, իսկ հեղինակների մի խումբ էլ գտնում է, թե այն հասարակարգը, որ «կառուցվեց» մեր երկրում, առհասարակ, չի կարելի սոցիալիստական համարել։

Այսօր օրինական հարց է ծագում, թե ի՞նչ բան է սոցիալիզմը, և մինչև այժմ մեզ հրամցված սոցիալիստական կոչվող հասարակարգի ո՞ր գծերն ու հատկանիշներն են իրոք սոցիալիստական։ Ինչպես ամեն մի հասարակարգ, սոցիալիզմը նույնպես տնտեսական, սոցիալ-քաղաքական, բարոյական, գաղափարախոսական հարաբերությունների ամբողջություն է։ Մեր հասարակարգի սոցիալիստական բովանդակությունը պետք է չափել նրանով, թե կոնկրետ ինչպես են պաշտպանվում աշխատավոր մարդու շահերը, որքանով բավարարվում նրա պահանջմունքները և որքանով է նա իրեն ազատ զգում հասարակության մեջ։

Մարքսիզմ-լենինիզմի դասականները սոցիալիզմ ասելով հասկանում էին այնպիսի մի հասարակարգ, որը բնութագրվում է էկոնոմիկայի արդյունավետությամբ, աշխատանքի բարձր արտադրողականությամբ, ժողովրդաիշխանությամբ, դեմոկրատիայով, սոցիալական արդարությամբ, հումանիզմով, խաղաղասիրությամբ, բարձր կուլտուրայով, բարոյականությամբ և այլն։

Չմոռանանք, որ մեր երկրում սոցիալիզմի կառուցումն ընթացել է Ստալինի առաջադրած մոդելով, վերջինս երկար տարիներ հրամցվում էր որպես միակ ճիշտ, լենինյան կուրս։ Իհարկե սխալ կլինի կարծել, թե սոցիալիզմի «ստալինյան մոդելը» լենինյան գաղափարներ ու դրույթներ ամենևին չի պարունակում։ Խնդրի էությունն այն է, թե Լենինի հատկապես ո՛ր ժամանակաշրջանում գրված աշխատության մասին է խոսքը։ Չէ՞ որ սոցիալիզմի և նրա կառուցման մասին լենինյան հայացքներն ունեցել են իրենց էվոլյուցիոն, հակասական զարգացումը։ Մինչդեռ ստալինյան ժամանակներից ի վեր Լենինի բազմահարուստ տեսական ժառանգության հանդեպ ցուցաբերվել է, որպես կանոն, ընտրովի մոտեցում։ Ստալինից սկսած յուրաքանչյուր ոք, քաղաքական կոնյունկտուրայի թելադրանքով, Լենինի աշխատություններից վերցրել է, երբեմն էլ «հարմարեցրել» այնպիսի քաղվածքներ (դրույթներ ու ասույթներ), որոնք ավելի նպատակահարմար են եղել իրենց գաղափարաքաղաքական մոդելներն ու սխեմաները հիմնավորելու համար։ Այսինքն ստացվել է այնպես, որ Լենինի գաղափարատեսական հիմնադրույթները հաճախ ուսումնասիրվել են ոչ թե իրենց ժամանակի, կոնկրետ պատմական պայմանների, ամբողջականության ու հակասականության մեջ, այլ կամայականորեն, քաղվածաբար «ցիտատ փնտրելով»։ Ցավոք, այդ միտումը շարունակվում է նաև ներկայումս։

Ինչևէ, 20-ական թվականների վերջին այդ ճանապարհով Ի. Ստալինի



գլխավորած Կենտկոմը, կուսակցության և ժողովրդի մեծամասնությունը զանազան օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների, վախի ու համոզմունքի, հեղափոխական խանդավառության ու վաղվա լավ օրվա ակնկալիքի թելադրանքով համերաշխվեցին սոցիալիզմի կառուցման ստալինյան կուրսին (մոդելին), և միայն մի փոքր խումբ Ն. Ի. Բուխարինի գլխավորությամբ փորձեց դիմադրել՝ առաջադրելով լենինյան գաղափարներին ավելի հավատարիմ, ավելի կշռադատված այլընտրանք, սակայն ուժերի անհավասարության հետևանքով «աջ օպորտունիստական» որակված այդ թեքումը ջախջախվեց՝ սկզբում քաղաքականապես ու բարոյապես, իսկ հետո նաև ֆիզիկապես։

Ըստ ամենայնի 20-ական թվականներին գոյություն են ունեցել սոցիալիզմի կառուցման առնվազն երեք հնարավոր այլընտրանքներ՝ լենինյան, ստալինյան և բուխարինյան։ Հայտնի է, որ սոցիալիզմի կառուցման բուխարինյան և ստալինյան այլընտրանքների առճակատումը սկսվեց այն բանից հետո, երբ 1927—28 թթ. ձմռանը սկսվեցին ոտնձգությունները նէպի վրա։ Վիճակը բարդանում էր նրանով, որ ոչ ճիշտ տնտեսական, հարկային, գների քաղաքականության հետևանքով երկրում ծագեցին հացամթերման լուրջ դժվարություններ, սկսվեցին արտակարգ միջոցառումները, բռնությունները որպես սոցիալիստական շինարարության մեթոդ։ Ստալինին և կուսակցության Կենտկոմի կազմի ճնշող մեծամասնությանն ավելի շատ հետաքրքրում էին ոչ թե էկոնոմիկայի հաշվեկշռված, համամասնական զարգացումը, ճիշտ հարկային ու գների քաղաքականությունը, գյուղացիության շահերի պաշտպանությունը, այլ իրենց պատկերացրած սոցիալիզմի շուտափույթ հաղթանակը՝ մի խնդիր, որը շարունակ «հիմնավորել» են արտաքին գործոնի՝ կապիտալիստական շրջապատման ու միջազգային դրության սրման հանգամանքներով։

Բուխարինը և իր կողմնակիցները գտնում էին, որ սոցիալիստական վերակառուցումը հնարավոր է նէպի հիման վրա և որ այդ պրոցեսը տեղի կունենա ոչ այնքան հիվանդագին, աստիճանաբար ու հաշվեկշռված։ Ըստ Բուխարինի, նէպի տնտեսավարման սկզբունքները, սոցիալիզմի շինարարությանը զուգընթաց, հետագա ճշտման ու կանոնավորման ենթարկվելով պետք է փոխանցվեին խորհրդային սոցիալիստական հասարակարգ։ Դեռ 1925 թ. լույս տեսած «Սոցիալիզմի ուղին և բանվորագյուղացիական դաշինքը», «Նոր տնտեսական քաղաքականության և մեր խնդիրների մասին» աշխատություններում նա տեսականորեն հիմնավորում էր նէպի և կոոպերացիայի հիման վրա մեկ երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորությունը։ Այդ բանի հաջողությունը Ն. Ի. Բուխարինը կապում էր բանվորագյուղացիական դաշինքի ամրապնդման, դասակարգային և հասարակական շահերի ճիշտ զուգակցման, գյուղացու տնտեսական շահերի հաշվառման, քաղաքի և գյուղի, արդյունաբերության և գյուղատնտեսության, ծանր և թեթև արդյունաբերության համամասնական ու հաշվեկշռված զարգացման, գյուղացիական տնտեսությունների կոոպերատիվ միավորման, ապրանքադրամային և շուկայական հարաբերությունների լայն կիրառման հետ (տե՛ս Бухарин Н. И. Избранные произведения. М., 1988, стр. 126, 144—145, 167—169, 174—175, 178, 196)։

Բուխարինը հետլենինյան ժամանակաշրջանի այն եզակի բոլշևիկ տեսաբան գործիչներից էր, որ չէր բացարձակացնում պրոլետարիատի դասակարգային շահերը և հանուն այդ շահերի անթույլատրելի էր համարում մյուս դասակարգերի և սոցիալական խմբերի տնտեսական հարստահարումը, առավել ևս ֆիզիկական ոչնչացումը։ Ահա հիմնականում դրանումն է սոցիալիզմի շինարարության բուխարինյան այլընտրանքի հումանիստական, դեմոկրատական էությունը։ Կարծում ենք, որ դասակարգայինի և հասարակականի հարաբերության հարցում Բուխարինը Լենինից ավելի առաջ գնաց՝ զարգացրեց ու կոնկրետացրեց լենինյան գաղափարները։ Եթե բուխարինյան այլընտրանքը ձգտում էր քաղաքացիական հաշտության, ապա ստալինյանը՝ դասակարգային պայքարի սրման ու ռեպրեսիաների։

Պետք է ասել, որ Բուխարինի տեսական հայացքները, սոցիալիզմի կառուցման նրա այլընտրանքն իր հիմնական գծերով համընկնում էր այն ժամանակվա հայտնի գիտնական-տնտեսագետներ Ա. Չայանովի, Ն. Կոնդրատևի, Ա. Չելինցևի, Լ. Յարոշենկոյի կոնցեպցիաներին, որոնք նույնպես անհիմն կերպով ենթարկվեցին հալածանքների ու ռեպրեսիաների։ Ինչպես տեսնում

ենք, սոցիալիզմի շինարարության հարցում Ստալինի և կուսակցության մեծամասնության առաջադրած ուղուն եղել է այլընտրանք, որը՝ մեր և շատերի կարծիքով, շատ ավելի մոտ էր լենինյան կոնցեպցիային։

Սխալ կլիներ կարծել, թե ստալինականությունը եղել է իրականությունից կտրված, ինչ-որ օդից կախված գաղափարախոսություն ու քաղաքականություն։ Այն անկասկած, ունեցել է իր ծագման գաղափարատեսական ակունքները, մեծ չափով սնվել է պրոլետարական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի մասին մարքս-լենինյան ուսմունքից, այդ թվում բոլշևիկյան կուսակցության կազմակերպական կառուցվածքի մի շարք ոչ դեմոկրատական, ցենտրալիստական սկզբունքներից ու պրակտիկ գործելակերպի ծայրահեղ մեթոդներից։ Ստալինի անսանձ գործունեությանը նպաստեցին Լենինի կենդանության օրոք ընդունված մի քանի ոչ դեմոկրատական կուսակցական ու պետական փաստաթղթեր, այդ թվում՝ «Կուսակցության միասնության մասին» բանաձևը, որը մի տեսակ մահակ դարձավ Ստալինի ձեռքին իր անձնական հակառակորդների, սոցիալիզմի իրական ու մտացածին թշնամիների նկատմամբ հաշվեհարդար տեսնելու համար։ Ստալինականության երևան գալը պայմանավորված էր նույնպես այն ժամանակվա կոնկրետ պատմական պայմաններով, ժողովրդի քաղաքական և իրավական ցածր կուլտուրայով, ինչպես նաև Ռուսաստանում ցարիզմից ժառանգություն մնացած դեմոկրատական ավանդույթների բացակայությամբ։

Եթե դատելու լինենք, ելնելով Վ. Ի. Լենինի տեսական ժառանգությունից և նրա իրականացրած պրակտիկ քաղաքականությունից, ապա պետք է ասել, որ նա սոցիալիզմը դիտում էր ոչ թե ինչ-որ պատրաստի ու ավարտուն համակարգ, այլ որպես կենդանի, շարունակ փոփոխվող ու զարգացող հասարակական օրգանիզմ։ Դրա հիման վրա էլ նա մինչև վերջ չկարողացավ տալ և չէր էլ կարող տալ սոցիալիզմի ավարտուն բնութագիրը։ Ավելին, նա չհասցրեց հստակ կերպով ցույց տալ, թե ինչ պլանով պետք է կառուցել նոր հասարակարգը։ Կնշանակի Լենինի մեջ մինչև վերջ չի ձևավորվել սոցիալիզմի հստակ ու ավարտուն կոնցեպցիան և հավանաբար չէր էլ կարող վերջնական ձևավորում ստանալ, քանի դեռ այն չէր փորձվել ու ստուգվել կյանքում, որովհետև մի բան է տեսությունը, գաղափարը, մտքի թռիչքը և միանգամայն այլ բան՝ ռեալ կյանքը, դրանց պրակտիկ իրականացումը։ Եվ ինչպես սոցիալիզմի շինարարության տխուր փորձը ցույց տվեց, դրանք շատ քիչ դեպքերում իրար համընկան։

Սակայն Լենինի մեծությունը հենց այն էր, որ, ի տարբերություն կուսակցության դոգմատիկ մտածող գործիչների, նա սոցիալիզմի և առհասարակ ցանկացած պրոբլեմի լուծմանը մոտենում էր դիալեկտիկորեն, ստեղծագործաբար, անընդհատ որոնում, ստուգում, փորձում, փոփոխում կյանքի ու պրակտիկայի իրողություններին համապատասխան։ Սոցիալիզմի մասին լենինյան տեսական ժառանգության շատ տարրեր ժամանակի ընթացքում տարբեր պատճառներով չեն կենսագործվել, դրանցից մի մասն էլ ժամանակի ու կյանքի քննությանը չեն դիմացել և հնացել են։

Մեր երկրի առջև ծառացած գլխավոր խնդիրը ոչ թե գոյություն ունեցող, «զարգացող» սոցիալիստական հասարակարգի կատարելագործումն է, որակական նոր աստիճանի հասցնելը, «ավելի շատ սոցիալիզմ» կարգախոսը (ինչպես որ ձևակերպված են ԽՄԿԿ XXVII համագումարում ընդունված և արդեն հնացած կուսակցության գործող ծրագրի նոր խմբագրությունում և հետհամագումարյան այլ փաստաթղթերում), այլ նախկինի փոխարեն սոցիալիզմի բոլորովին նոր, ժամանակակից, դեմոկրատական կոնցեպցիայի տեսական ձևավորումը, գիտական հիմնավորումը և պրակտիկ կենսագործումը։ Սոցիալիզմի ճամանակակից կոնցեպցիայի տեսական մշակումը և գործնական իրականացումը հնարավոր է՝ ամենից առաջ հենվելով մարքսիզմ-լենինիզմի հիմնադրույթների վրա, դասեր քաղելով նախորդ փուլում մեր և մյուս սոցիալիստական երկրներում թույլ տրված սխալներից ու բացթողումներից և վերջապես հաշվի առնելով արդի աշխարհի ռեալ իրողությունները։

Թեև սոցիալիզմն իր հասարակական կարգով արմատապես տարբերվում է կապիտալիզմից, սակայն որպես վերջինիս անմիջական ու օրինաչափ շարունակություն, պետք է որ ժառանգեր նրա տնտեսական մեխանիզմի լավագույն ու մնայուն գծերը։ Այդպես է եղել նախորդ բոլոր հասարակական-տնտեսական ֆորմացիաների անցումային փուլերում, այդպես պետք է լիներ նաև կապիտալիզմից սոցիալիզմին անցման փուլում։ Այդ մասին հիշեցրել է նաև Վ. Ի. Լենինը՝ ասելով, որ բոլոր կազմակերպական ձևերը պրոլետարիատը «վերցնում է կապիտալիզմից, այլ ոչ թե «հնարում», ոչ թե «ստեղծում է ոչնչից»» (ԵԼԺ, հ. 34, էջ 391)։ Բայց իրականում այլ կերպ է արվել։ Ստացվել է այնպես, որ խորտակելով հին կարգերը, ըստ էության ժխտել ու մերժել ենք, եթե ոչ ավելին՝ ջարդել ու ավերել նրանում եղած ամեն մի առաջադեմ կողմ, ռացիոնալ հատիկ և հնի փլատակների վրա փորձել ենք կառուցել նորը։ Այլ կերպ ասած՝ խախտվել է դիալեկտիկայի համընդհանուր օրենքներից մեկի՝ բացասման բացասման օրենքի օրինաչափությունը։ Այդ օրենքը հուշում է, որ սոցիալիզմը, որպես կապիտալիզմի օրինական ժառանգորդ, չի կարող լրիվին բացասել հին կարգերը և ընդհանրապես մինչ այդ մարդկության պատմականորեն ստեղծած համամարդկային արժեքներն ու առաջադեմ գծերը։ Սոցիալիզմի գիտական կոնցեպցիան չի հանդուրժում ոչ մի քարացածություն հասարակական-քաղաքական կառուցվածքի, արտադրատնտեսական գործունեության կազմակերպման, գիտատեխնիկական առաջընթացի և այլ հարցերում։ Նորացվող սոցիալիզմը մեզ պետք է պատկերանա ոչ այլ կերպ, քան բոլոր կողմերով կենսունակ, դինամիկ զարգացող, դեմոկրատական, ժողովրդավարական հասարակարգ, որպես մարդկային քաղաքակրթության օրինաչափ շարունակություն։

Շատ ուսումնասիրողներ իրավացիորեն ուղղակի կապ ու նմանություն են տեսնում մեր երկրի պատմության 20-ական թվականների և ներկայիս վերակառուցման միջև։ Սակայն մի բան պետք է քաջ գիտակցել, որ արդի պրոբլեմները հնարավոր չէ լուծել 20-ական թվականների մեթոդներով ու մոտեցումներով։ Սոցիալիզմի մասին Լենինի անավարտ մոդելը չի կարող տալ ներկայումս կուտակված բոլոր հարցերի պատասխանը և դրանց լուծման ուղիները։ Մնում է, որ դրանց տեսական ու պրակտիկ հիմնարար մշակումները կատարվեն գիտականորեն և ստեղծագործաբար։

Սոցիալիզմի նորացվող այսօրվա կոնցեպցիան պետք է բովանդակի Վ. Ի. Լենինի հիմնականում 1921—1923 թթ. հայացքները, նոր քաղաքական մտածողության մոտեցումները և արդի համաշխարհային զարգացման պրոցեսները։

Սոցիալիզմի ժամանակակից կոնցեպցիայով պահանջվում է վերակառուցել հասարակական-տնտեսական հարաբերությունների ամբողջ համակարգը՝ թե՛ բազիսը, թե՛ վերնաշենքը։ Ի տարբերություն մինչև այժմ մեզ պարտադրված սոցիալիզմի այսպես կոչված ստալինյան-բրեժնևյան մոդելի, սոցիալիզմի նոր ձևավորվող դիմագիծը պետք է ունենա հետևյալ հիմնական գծերն ու հատկանիշները։

— Հասարակության կառավարման տոտալիտար քաղաքական համակարգի փոխարինումը գործնականում դեմոկրատական, իրավական, ինքնավար և ժողովրդավար սոցիալիստական կառուցվածքով։

— Արմատական տնտեսական ռեֆորմ և սոցիալիստական տնտեսական նոր համակարգի ձևավորում։ Իրոք որ սոցիալիզմի ամենախոցելի տեղերից մեկը նրա տնտեսական մեխանիզմի անկատարությունն է։ Սոցիալիզմի վերակառուցման ժամանակակից կոնցեպցիայով խնդիր է ծառացած էապես փոփոխել գոյություն ունեցող արտադրական հարաբերությունները՝ չնահանջելով, իհարկե, նրա սոցիալիստական էությունից ու բովանդակությունից։ Մյուս կողմից, պետք է ելնել այն բանից, որ երկրի առջև ծառացած սոցիալ-տնտեսական բազմաբարդ խնդիրները լուծելիս, մեր կարծիքով, սոցիալիզմի գաղափարաքաղաքական կանխադրույթները չպետք է կաշկանդեն հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման օբյեկտիվ օրենքները, ամբողջ հասարակության տնտեսական շահերը։

Քաղաքականի և տնտեսականի հարաբերության մեջ առաջնությունը պատկանում է վերջինիս։ Դրան հասնելու համար անհրաժեշտ է՝

— էկոնոմիկայի կառավարման վարչահրամայական մեթոդների փոխարինումը տնտեսական լծակներով կառավարմամբ։ Ընդ որում սոցիալիստական տնտեսավարման օրգանական բաղադրամաս դարձնել ապրանքադրամային ու շուկայական հարաբերությունները, տնտհաշվարկը, վարձակալությունը, անհատի ու կոլեկտիվի շահերի միասնությունը և այլն։

— Ապակենտրոնացնել և ապամոնոպոլացնել պետական սեփականությունը, վերջ տալ, այսպես կոչված, «պետական սոցիալիզմին», որը ներկայումս կազմում է երկրի հիմնական ֆոնդերի 85 տոկոսից ավելին և իրավահավասար պայմաններում թույլատրելի համարել սոցիալիստական սեփականության և տնտեսական գործունեության ձևերի բազմազանություն (պլյուրալիզմ)՝ պետական, կոոպերատիվ, խմբակային, բաժնետիրական, անհատական, անձնական և նույնիսկ մասնավոր: Գյուղատնտեսության մեջ կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների կողքին արմատավորել անձնական և ընտանեկան աշխատանքի վրա հիմնված ֆերմերային տիպի տնտեսություններ, իրավահավասար պայմաններ ապահովել դրանց ազատ մրցակցության համար:

— Բոլոր տեսակի բարիքների ստացման և բաշխման հիմքում դնել միայն աշխատանքն ու սոցիալական արդարությունը: Վարել ակտիվ սոցիալական քաղաքականություն, էկոնոմիկան դեմքով շրջել դեպի մարդը, նրա հարաճուն պահանջմունքների բավարարումը:

— Նոր քաղաքական մտածողության շնորհիվ հաղթահարել գաղափարատեսական դոգմատիզմը, ընդունել համամարդկային արժեքների գերակայությունը դասակարգայինի նկատմամբ, երկիրը դարձնել ավելի բաց և ազատ, արդարացիորեն լուծել ազգամիջյան պրոբլեմները, գործնականում առաջնորդվել մարդու և քաղաքացու իրավունքների ու ազատությունների մասին միջազգայնորեն ճանաչված հռչակագրերով և այլ իրավական ակտերով.

— Հրաժարվել դասակարգերի վերացման ու հասարակության անդասակարգ կառուցվածքի հաստատման, սոցիալիստական սեփականության ձևերի մերձեցման, ազգերի մերձեցման ու վերջին հաշվով ձուլման, պետության մահացման և մի շարք այլ, մեր կարծիքով, ոչ միայն հնացած, այլև վնասակար տեսական-ծրագրային պահանջներից.

— Նոր քաղաքական մտածողության և նոր իրողություններին համապատասխան՝ ԽՄԿԿ ծրագրի, կանոնադրության, նրա գործելակերպի և կադրային կորպուսի արմատական նորացում: Կուսակցության ներսում և նրանից դուրս քննադատության և ինքնաքննադատության, հրապարակայնության և բացախոսության ազատ զարգացում: Նորմալ երևույթ համարել կուսակցության ներսում և նրանից դուրս ընդդիմախոս ուժերի, ոչ ֆորմալ կազմակերպությունների գոյությունը, իսկ անհրաժեշտության դեպքում նաև՝ նոր քաղաքական կուսակցությունների առաջացումը: Այս առնչությամբ կոնստրուկտիվ պետք է համարել կուսակցության XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմում արտահայտված այն միտքը, որ ԽՄԿԿ-ն ոչ միայն չի բացառում նոր կուսակցությունների առաջացումը, այլև պատրաստ է քաղաքական երկխոսություն ունենալ և համագործակցել այդպիսիների հետ.

— Միջազգային ասպեկտով կոմունիստական ու բանվորական, սոցիալ-դեմոկրատական ու սոցիալիստական և մյուս պրոգրեսիվ դեմոկրատական շարժումների համախմբում, փոխհարստացում, իսկ առանձին հարցերում՝ նաև ինտեգրացիա: Վերը նշված խնդիրները կյանքի կոչելու համար անհրաժեշտ է ստեղծել համապատասխան տնտեսական, քաղաքական, իրավական երաշխիքներ ու գործուն մեխանիզմներ:

Այսպիսով, Վ. Ի. Լենինը մշակել է սոցիալիզմի և նրա կառուցման վերաբերյալ որոշակի էվոլյուցիա ապրած կոնցեպցիա, որը, սակայն, հետագայում կոպիտ խեղաթյուրման ենթարկվելով չի մարմնավորվել կյանքում: Արդյունքը եղել է ձևախեղված, իր բովանդակությամբ ամենևին էլ ոչ սոցիալիստական մի հասարակարգ: Ներկայիս վերակառուցման առանցքային խնդիրը սոցիալիզմի իսկական լենինյան հայեցակետին վերադառնալն է: Սակայն սոցիալիզմի այժմյան կոնցեպցիան լենինյան կոնցեպցիայի սոսկ պատճենահանումը չէ, այլ նրա հետագա զարգացումը՝ արդի փոփոխված աշխարհի ռեալ իրողություններին համապատասխան:

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՌԱՆԿԱՐԱՅԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Մ. ՔՈԹԱՆՅԱՆ**

1991 ԹՎԱԿԱՆԻՑ ՈՒԺԻ ՄԵՋ ԿՄՏՆԻ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ որոշումը միութենական հանրապետությունների տնտեսական ինքնուրույնության վերաբերյալ: Միութենական հանրապետությունների, ռեգիոնների անցումը տնտհաշվարկային համակարգի պահանջում է նոր չափանիշներով գնահատել ինչպես մեր արտադրատնտեսական պոտենցիալի, այնպես էլ տնտեսական կապերի արդյունավետությունը: Արդյունաբերության ավանդական ուղղությունները, տարիներ ի վեր հաստատված աշխատանքի բաժանումն ու կոոպերացումը կարող են չդիմանալ քննությանը, կպահանջվեն նոր, ոչ ստանդարտ մոտեցումներ և արմատական բարեփոխումներ: Այսօր արդեն օրակարգի հարց է Հայաստանի հեռանկարային զարգացման ազգային ստրատեգիական միասնական ծրագրի մշակումը: Հայաստանի տնտեսական ու սոցիալական զարգացման՝ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտի մշակած կոնցեպցիան հիմնվում է հանրապետության առանձնահատկությունների վրա, որոնք մեզ թելադրել են ուրույն հայեցակետ ձևավորել մեր առաջընթացի արմատական պրոբլեմների նկատմամբ:

Հայաստանը լեռնային երկիր է: Նրա տարածքի միջին բարձրությունը ծովի մակերևույթից 1830 մ է (ամենացածր կետը՝ 375 մետր, ամենաբարձրը՝ 4090): Հանրապետության տարածքի ավելի քան 55 տոկոսը գտնվում է 1500—2500 մ բարձրության վրա և կյանքի նորմալ պայմաններ ապահովելու առանձնահատուկ միջոցառումներ է պահանջում, 16 տոկոսը 2500 և ավելի մետր բարձրության վրա, գյուղատնտեսական օգտագործման համար առհասարակ պիտանի չէ: Հանրապետությունը աղքատ է գյուղատնտեսական օգտագործելի հողատարածություններով և այդ ցուցանիշով Միության մեջ գրավում է վերջին տեղը: Այսպես, Հայկական ԽՍՀ-ում բնակչության մեկ շնչին ընկնում է 0,4 հեկտար գյուղատնտեսական օգտագործելի և 0,14 հեկտար վարելահող, այն դեպքում, երբ ԽՍՀՄ միջինը համապատասխանաբար կազմում է 2,1 և 0,87 հեկտար: Կարելի է նշել, որ գյուղատնտեսական օգտագործելի և վարելահողերի ավելացման ռեսուրսները հանրապետությունում գործնականում սպառված են:

Բնական գործոնի հետ կապված մյուս առանձնահատկությունը Հայաստանի սակավաջուր լինելն է: Բավական է նշել, որ բնակչության մեկ շնչի հաշվով մեզանում տարեկան ընկնում է 2,4 հազար խմ ջուր՝ ԽՍՀՄ 18 հազար խմ միջինի դիմաց:

Հայաստանը գտնվում է չոր կլիմայական գոտում, ուր գյուղատնտեսական օգտագործելի հողատարածությունների գերակշռող մասն առանց ոռոգման ոչ մի արդյունք չի տալիս: Բացի դրանից, հանրապետությունն աղքատ է անտառներով, եղածներն արդյունաբերական նշանակություն չունեն: Այս բոլորի հետ մեկտեղ խիստ սահմանափակ են էներգետիկ և այլ կարևոր բնական ռեսուրսները, որոնք ժամանակակից արդյունաբերության զարգացման նյութական հիմքն են: Արդյունաբերության հզոր պոտենցիալը հիմնականում բազավորված է բերովի հումքային ռեսուրսների վրա: Բավական ցածր է սեփական հումքից վերջնական արդյունքի ստացման տեսակարար կշիռը:

*ՔՈԹԱՆՅԱՆ ՄԻՔԱՅԵԼ ԽԱՉԻԿԻ— ՀԽՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս, ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի տնօրեն:*

ՀԽՍՀ-ն Միության բավական խիտ բնակեցված շրջաններից է: Բնակչության
խտությունը մեկ քառ. կմ-ի վրա կազմում է 117 մարդ (ԽՍՀՄ միջինը՝ 14 մարդ):
Բնակչությունը տարաբնակեցվում է ծայրաստիճան անհամաչափ. հանրապետության
տարածքի տարբեր գոտիներում խտությունը տատանվում է 1 քառ. կմ-ի վրա 17-ից
300 մարդ սահմաններում: Դրա հետ մեկտեղ բնակչության ավելի քան 45 տոկոսը
և արդյունաբերական պոտենցիալի մոտ 70 տոկոսը կենտրոնացված են երեք խոշոր
քաղաքներում (Երևան, Լենինական, Կիրովական):

Մյուս առանձնահատկությունը, որը կարևոր նշանակություն ունի Հայաստանի
հեռանկարային զարգացման հարցերը լուծելիս, գիտատեխնիկական բավական
հզոր պոտենցիալի առկայությունն է: Հարկավոր է գտնել դրա արդյունավետ օգ-
տագործման ուղղությունները:

Անհրաժեշտ կլինի հաշվի առնել նաև հանրապետությունում հոգևոր արտադրու-
թյան և ծառայությունների ոլորտի զարգացման անբավարար մակարդակը և նյու-
թատեխնիկական թույլ բազան: Խիստ հետ է մնում սոցիալական ենթակառուցվածքը,
որն արդյունք է մեր հասարակության զարգացման գործում այդ ոլորտների դերի թե-
րագնահատման: Տնտեսագիտական տեսության մեջ հոգևոր արտադրության և ծա-
ռայությունների ոլորտները դիտվել են անարտադրողական և հասարակության զար-
գացման ու մարդկանց բարեկեցության բարձրացման գործում դրանց վերապահվել
է միայն օժանդակ դեր: Այդ բնագավառների հետ մնալը վաղուց արդեն դարձել է
մեր առաջընթացի լուրջ արգելակը:

Եվ վերջապես, լեռնային մեր երկրում բավական բարձր է բնական ռադիացիան:
Այդ հանգամանքը թելադրում է խուսափել արտադրական և այլ բնույթի այնպիսի
ձեռնարկումներ իրականացնելուց, որոնք կարող են սրել էկոլոգիական իրավիճակը
և խախտել մարդու նորմալ կենսագործունեությունը:

Վերը նշված բնակլիմայական, ժողովրդագրական, տնտեսական ու սոցիալական
գործոնների բազմակողմանի ուսումնասիրությունը հնարավորություն կտա ճիշտ
կողմնորոշվել Հայաստանի հեռանկարային զարգացման հիմնավոր ծրագրեր մշա-
կելու գործում:

Միաժամանակ չի կարելի անտեսել ևս մեկ կարևոր հանգամանք: Դա հանրա-
պետության աշխարհագրական դիրքն է: Հարևան պետությունների և ժողովուրդների
հետ պատմականորեն ստեղծված փոխհարաբերությունների համակարգը, ինչպես
ցույց տվեցին վերջին տարիների իրադարձությունները, կարող է էապես ազդել մեր
տնտեսական զարգացման ուղղությունների և ծրագրերի վրա: Որոշ դեպքերում այդ
փոխհարաբերությունները ձեռք են բերում առաջնային նշանակություն և նկատելիորեն
փոխում են մեր պատկերացումները ռեգիոնի տնտեսական զարգացման արդյունա-
վետության գնահատման չափանիշների վերաբերյալ: Այլ խոսքով, դրանք կարող
են մեծապես ազդել զուտ տնտեսական հարցերի լուծման արդյունավետության մա-
կարդակի վրա: Թեկուզ երբեմն ինչ-որ չափով ի վնաս տնտեսական արդյունավե-
տության, մենք պետք է ստեղծենք տարբեր իրադրություններում գործելու ընդունակ
ճկուն տնտեսական մեխանիզմ, որը մեզ հնարավորություն կընձեռի ապահովել հան-
րապետության տնտեսական հարաբերական անկախությունն ու ազգի գոյատևումը:

Այս բոլորից հետևում է, որ հանրապետության և ոչ միայն հանրապետության,
այլև ամբողջ հայ ժողովրդի գիտական միտքը պետք է ուղղված լինի մեր բնական
և աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման, գիտական և տեխ-
նիկական խնդիրների, ինչպես նաև շրջակա միջավայրի պահպանման և էկոլոգիա-
կան իրադրության առողջացման հարցերի լուծմանը, կայուն, զարգացող, կյանքի
նորմալ պայմաններ ապահովող տնտեսության ստեղծմանը:

Տնտեսական զարգացման ծրագրերի առանցքային հարցերի թվում մեզ համար
առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում ակտիվ ժողովրդագրական քաղա-
քականության իրականացումը: Դա պայմանավորված է նրանով, որ հեռանկարում
ծնընդաբերությունը ունի նվազման միտում, ընդհանուր մահացությունը՝ բարձրացման
միտում, որ երկրաշարժը անհելի թվով մարդկային զոհեր պատճառեց, ինչը որոշա-
կիորեն ազդում է բնակչության վերարտադրության վրա, քանի որ զոհվածների թվի
մեջ մեծ կշիռ էր կազմում երիտասարդ և մատաղ սերունդը, և, վերջապես, նրանով,
որ 80-ական թվականներից սկսվեց բնակչության արտահոսքը Միության մյուս շըր-
ջաններ և արտասահմանյան երկրներ, որը հասցրեց բնակչության շարժի բացասա-
կան արդյունքի:



Այդ երևույթների չեզոքացման համար անհրաժեշտ է իրականացնել միջոցա-
ռումների մի համակարգ, որը նպաստի, մի կողմից, հանրապետության բնակչության
աճի խթանմանը, մյուս կողմից՝ բնակչության համար աշխատելու և ապրելու նոր-
մալ պայմանների ստեղծմանը:

Դրանք հիմնականում նախատեսվում են.

ա) ծննդաբերության խթանման ուղղությամբ (վճարովի արձակուրդների տևո-
ղության ավելացում, վարձատրության չափի, ինչպես նաև նպաստների բարձրա-
ցում, բազմանդամ ընտանիքների գոյության մինիմումի ապահովում և այլն).

բ) զբաղվածության ապահովման, բնակարանային պայմանների բարելավման,
անհատական աշխատանքային գործունեության ոլորտների ընդլայնման, սոցիա-
լական ապահովության, էկոլոգիական իրավիճակի բարելավման և այլ ուղղություն-
ներով:

Հանրապետության տնտեսական զարգացման գործում առանձնահատուկ տեղ
ունեն հանքահումքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման հարցերը:

ՀԽՍՀ-ն ունի մետաղային և ոչ մետաղային հազվագյուտ հանքավայրեր, հան-
քային ջրերի մեծ պաշարներ: Դրանց արդյունավետ օգտագործման ուղղությունների
ճիշտ որոշումը, արտադրաարդյունաբերական կիրառման գիտատեխնիկական մշա-
կումների իրականացումը մեծապես կնպաստեն արդյունաբերական կոմպլեքսի ձևա-
վորմանը:

Ներկայումս հանրապետությունում տարեկան արդյունահանվում է 300 հազար
տոննա գիպս, ավելի քան 400 հազար տոննա բետոնիտային կավ, 1,4 միլիոն տոն-
նա կրաքար, 230 հազար տ. աղ, 2,5 մլն խմ պեռլիտ և այլն: Դրա հետ մեկտեղ
այդ հանքահումքից ստացվող շատ արդյունքներ մենք ներմուծում ենք Միության
այլ ռեգիոններից և արտասահմանյան երկրներից:

Մետաղային հանքերից որոշակի հետաքրքրություն են ներկայացնում պղնձի,
մոլիբդենի, ոսկու, արծաթի, կապարի հանքավայրերը: Հայաստանում կենտրոնաց-
ված են հետախուզված մոլիբդենի զգալի պաշարներ և արտադրվում է մոլիբդենի
կոնցենտրատ: Գունավոր մետաղների հազվագյուտ հանքավայրերը պարունակում
են ռենիումի, տելլուրի, սելենի և այլ բաղադրամասեր, որոնց գերակշռող մասը
(53,76 և 90 տոկոսը) վերամշակման ընթացքում կորչում է:

Չնայած ոչ մետաղային հումքի մի շարք օգտակար հատկություններին, դրանք
հիմնականում օգտագործվում են որպես շինանյութ: Պեռլիտի, բենտոնիտների, տու-
ֆերի, պեմզայի, ցեոլիտի և այլ հանքանյութերի մեծ պաշարները կարող են հում-
քային հուսալի բազա դառնալ մի շարք նոր արտադրությունների կազմակերպման
համար: Դա նշանակում է, որ հանքային ռեսուրսները պետք է դառնան ոչ միայն
լեռնահանքային արդյունաբերության հումքային բազան, այլև միջոց ծառայեն մի
ամբողջ արդյունաբերական և շինարարական կոմպլեքսի զարգացման համար:

Տեղական հումքի բազայի վրա այդ կոմպլեքսներում արտադրությունների և
ճյուղերի զարգացումը անհրաժեշտ է իրականացնել դրանց տեխնոլոգիական վերա-
մշակման շղթայի շարունակման, վերջնական արդյունքի ստացման և դրանց ար-
դյունաբերական կիրառման ոլորտների կազմակերպման միջոցով:

Ժամանակակից արտադրության բոլոր ճյուղերի մասշտաբային զարգացման
համար ունենալով սակավ հումքային ռեսուրսներ, մենք պետք է ղեկավարվենք միա-
վոր բնական հանքային ռեսուրսից բազմատեսակ վերջնական արդյունքների թո-
ղարկման սկզբունքով: Դա հնարավոր է կատարել անթափոն, բազմարդյունք ար-
տադրությունների տեխնոլոգիաների մշակման և ներդրման, երկրորդային հումքի
անմնացորդ օգտագործման, Հայաստանի արդյունաբերության առավել ինտենսիվ
կոոպերացիոն կապերի ստեղծման, ստացված արդյունքների վրա հիմնված հարա-
կից արտադրությունների զարգացման, դրանք գերազանցապես հանրապետության
ներքին շուկային ծառայեցնելու միջոցով:

Նշված սկզբունքներով արդյունաբերության վերակառուցումը հնարավորություն
կտա նվազեցնել այլ տնտեսական շրջաններից ներմուծումների տեսակարար
կշիռը և հանրապետության կախվածության աստիճանը. վերացնել ոչ ռացիոնալ փո-
խադրումները, որոնք շատ թանկ են նստում մեր էկոնոմիկայի վրա և որոնք ավելի
շոշափելի կլինեն բոլոր հանրապետությունները տնտհաշվարկի և ինքնաֆինանսա-
վորման անցնելու պայմաններում. առավել ինտենսիվ կապեր հաստատել հանրապե-
տության արդյունաբերության ճյուղերի միջև, որը նախապայման կլինի տարած-
քային արտադրական կոնցեռնների ստեղծման համար. գիտատեխնիկական լուրջ

որոնումներ կատարել հումքի աստիճանական մշակման և արտադրական կիրառման տեխնիկայի և տեխնոլոգիայի ստեղծման ուղղությամբ, իսկ որոշ տեխնիկական մշակումների բնագավառում՝ գրավել առաջատար դեր. բարձրացնել աշխատուժի արդյունավետ զբաղվածության աստիճանը և այլն:

Մեծ մասշտաբների հումքային ռեսուրսներ չունենալը Հայաստանին թելադրում է զարգացման այլ մոդել, որը հիմնված է նրա գիտատեխնիկական պոտենցիալի արդյունավետ օգտագործման վրա: Դա գիտատար համալիրների և արտադրությունների կազմակերպումն է, որի համար հանրապետությունը ունի համապատասխան բազա (գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական, միջին մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատությունների զարգացած ցանց, ինչպես նաև արդյունաբերության գիտատար ճյուղեր և այլն):

Պրոբլեմի լուծման համար անհրաժեշտ է՝

1. գործնական միջոցառումներ մշակել համապատասխանեցնելու հանրապետության գիտական և արտադրատեխնոլոգիական մասնագիտացումները, ինչպես նաև հետազոտություններ կատարել այնպիսի նոր ուղղություններով, որոնք կնպաստեն գիտատար արտադրությունների տեխնիկական վերակառուցմանն ու ընդլայնմանը, գիտատար համալիրների ձևավորմանը: Արդյունաբերությունը պետք է վերակողմնորոշվի առաջադեմ այնպիսի ուղղությունների գերապատիվ զարգացմանը, ինչպես ռադիոէլեկտրոնիկան, կապի միջոցների, հաշվային տեխնիկայի, ռոբոտատեխնիկայի արտադրությունը, օպտիկաէլեկտրոնիկան, գիտական և կենցաղային սարքաշինությունը, բարձրորակ սոսինձների, լաքերի, գերմաքուր քիմիական ռեակտիվների արտադրությունը և այլն:

2. Հանրապետության գիտական պոտենցիալի օգտագործման մյուս ուղղությունը նրա մասնագիտացումն է նոր նյութերի, սարքերի, դեղանյութերի, գերմաքուր նյութերի և այլնի փորձնական նմուշների ստեղծման և դրանց պատենտների ու լիցենզիաների իրացման բնագավառում:

Առանձնահատուկ ուշադրություն է պահանջվում հանրապետության բնական ռեսուրսներից հազվագյուտ հատկություններով օժտված նյութերի (վոլաստոնիտ, սորբենտներ, հատիկավոր արհեստական մորդենիտներ և այլն) տեխնոլոգիաների մշակումը:

3. Անհրաժեշտ է հասնել գիտության, կրթության և արտադրության ինտեգրացման որակապես նոր մակարդակի՝ գիտաուսումնաարտադրական կոմպլեքսների ստեղծման միջոցով:

Վառելիքաէներգետիկ ռեսուրսներից զուրկ լինելը, ինչպես նաև տարածքի ակտիվ սեյսմիկության պատճառով ատոմային էներգետիկայի զարգացման անհնարինությունը պահանջում են յուրահատուկ ծրագրեր մշակել այդ բնագավառում: Կոնցեպցիան նախատեսում է էներգատար արտադրությունների սահմանափակում, էներգախնայողական տեխնոլոգիաների մշակում և կիրառում, փոքր հզորության հիդրոէլեկտրակայանների կառուցում, վերարտադրվող էներգետիկ ռեսուրսների (արևի էներգիայի, քամու, ստորգետնյա ջերմության, կենսաբանական էներգիայի և այլն) օգտագործման գիտատեխնիկական մշակումների իրականացում և այդ բազայի վրա էներգետիկ նոր կարողությունների ստեղծում:

Հումքային և էներգետիկ ռեսուրսների սահմանափակությունը, էկոլոգիական անբարենպաստ իրավիճակը, ինչպես նաև առավել արդյունավետ, ժամանակակից գիտատար արտադրությունների գծով մասնագիտացման անհրաժեշտությունը թելադրում են որոշակի կուրս իրականացնել հանրապետության արդյունաբերության վերապրոֆիլավորման բնագավառում:

Այդ տեսակետից նպատակահարմար է սահմանափակել և աստիճանաբար կրճատել մեծ քիմիայի արդյունաբերությունը, սահմանափակել, իսկ առանձին դեպքերում վերացնել միջին հաստոցաշինության և քիմիական մեքենաշինության արտադրությունները, դրանց փոխարեն ընդլայնել փորձնական ճշգրիտ հաստոցաշինությունը, էլեկտրատեխնիկական խոշոր սարքավորումների արտադրությունից անցնել էլեկտրատեխնիկական փոքր սարքավորումների արտադրությանը, սահմանափակել թեթև արդյունաբերության ընդլայնման տեմպերը, առավել մեծ ուշադրություն դարձնել դրա տեխնիկական վերակառուցման և որակական զարգացման հարցերին:

Հանրապետության արդյունաբերության զարգացման կոնցեպցիայում առանձնահատուկ տեղ են գրավում արտադրական ենթակառուցվածքի կատարելագործման հարցերը: Այն մեր ամենահետ մնացող բնագավառն է, որի արմատական վերակա-



ռուցումը ամբողջ արտադրական համալիրի համակարգում առաջնահերթ խնդիր է դարձել:

Հանրապետության գյուղատնտեսության հետագա զարգացման ուղին նրա ինտենսիվության աստիճանի կտրուկ բարձրացումն է, մասնագիտացումը և կառուցվածքային էական տեղաշարժերը: Նման մոտեցումը թելադրվում է, ինչպես արդեն նշվեց, օգտագործելի հողերի խիստ սահմանափակությամբ ու գյուղատնտեսական արտադրության ինտենսիվության ծայրաստիճան ցածր մակարդակով:

Բերքատվության զգալի բարձրացման կարելի է հասնել ըստ տնտեսական շըրջանների բուսաբուծության և այգեգործության խիստ մասնագիտացման միջոցով: Առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձնել Արարատյան դաշտում և հովտային շրջաններում պտուղների հազվագյուտ տեսակների (ծիրան, դեղձ, թութ, հոն, թուզ, նուռ), խաղողի, բանջարանոցային կուլտուրաների (պոմիդոր, սմբուկ) արտադրության զարգացմանը, նախալեռնային և լեռնային շրջաններում խնձորի, տանձի, սալորի, հատապտուղների արտադրությանը, ինչպես նաև յուրահատուկ «վայրի» բուսատեսակների (սիբեխ, մանդակ, փիփերթ, դանդուռ, ուրց, դաղձ և այլն), մասուրի ցանքատարածությունների ստեղծմանը: Դա հնարավորություն կտա բավարարել հանրապետության բնակչության պահանջմունքները:

Քանի որ Հայաստանի գյուղատնտեսական արտադրանքը երկրի ներքին, առավել ևս համաշխարհային շուկայում իր ծավալներով էական դեր խաղալ չի կարող, մենք պետք է շուկա նվաճենք մեր արտադրատեսակների հազվագյուտ հատկություններով:

Անասնաբուծության բնագավառում հիմնական հեռանկարային խնդիրներն են անասունների գլխաքանակի խիստ կրճատումը և դրա համապատասխանեցումը հանրապետության կերային բազային: Հարյուր հեկտար հողատարածության հաշվով հանրապետությունում ընկնում է 33 գլուխ անասուն (վերածած խոշոր եղջերավոր անասունի), որը 30 տոկոսով գերազանցում է Անդրկովկասի և 3,1 անգամ՝ Միության միջին տվյալները: Միաժամանակ, ծայրաստիճան ցածր է անասունների մթերատվությունը (1 կովի միջին կաթնատվությունը հազիվ է հասնում 2.000 լիտրի, ոչխարի գառնատվությունը՝ 80-ի, բրդատվությունը՝ 2,5 կգ-ի և այլն).

անասունների ցեղատեսակների բարելավումը, ստացիոնար կերակրման համակարգի անցման միջոցով մթերատվության մեծ չափով բարձրացումը. գյուղատնտեսության բոլոր ոլորտներում, այդ թվում անասնաբուծության բնագավառում, աշխատանքների մեքենայացման աստիճանի խիստ բարձրացումը ագրոզոոտեխնիկական համաշխարհային առաջավոր փորձի ներդրումը: Գյուղատնտեսական արտադրության մեջ արմատական տեղաշարժերի հասնելու համար կարևոր նշանակություն ունի արտադրության կազմակերպման ժամանակակից ձևերի և տնտեսական համակարգերի ներդրումը:

Հանրապետության լեռնային շրջաններում առավել հեռանկարային են և մեծ արդյունք կարող են տալ գյուղական ֆերմերային տնտեսությունները, իսկ Արարատյան դաշտում և նախալեռնային գոտում՝ հողի դրամական վարձակալության համակարգը, թերևս նաև տնտեսավարման այլ ձևեր:

Ջրաշինարարական աշխատանքներն անհրաժեշտ է իրականացնել փոքր և միջին մեծության ջրամբարների կառուցման և ոռոգման ջրի օգտագործման գործակցի բարձրացման (0,565-ից հասցնել մինչև 0,85) ուղղությամբ:

Գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և արդյունքների ծավալների մեծացման հետ մեկտեղ կազմակերպական մեծ աշխատանք է անհրաժեշտ դրանց պահպանման և սպառողներին հասցնելու համար: Գաղտնիք չէ, որ Միության մեջ, ինչպես նաև Հայկական ԽՍՀ-ում գյուղատնտեսական արտադրանքի մի զգալի մասը (ավելի քան 30 տոկոսը) փչանում է, իսկ որոշ մասն էլ սպառողներին է հասնում ապրանքային տեսքը և որակական հատկությունները կորցրած: Բացի դրանից, գյուղատնտեսական մթերքի, հատկապես մրգի և բանջարեղենի առաքումը առևտրական ցանց կանոնավոր, տարվա բոլոր եղանակներին համաչափ չի կատարվում: Այդ խնդիրները լուծելու համար անհրաժեշտ է իրականացնել մի շարք ծրագրային միջոցառումներ. ստեղծել գյուղատնտեսական մթերքի պահպանման մեծ տարողություններ, ինչը հնարավորություն կտա տարվա բոլոր եղանակներին ունենալ, նաև արտահանել թարմ բանջարեղեն և միրգ: Խթանել ազգային սննդատեսակների արտադրությունը, ընդլայնել մրգերի, հյութի, ջեմի; մուրաբայի թողարկումը, արդյունաբերական հիմքի վրա դնել թթի և հոնի օղու արտադրությունը, որոնք մեծ

պահանջարկ ունեն երկրի ներսում և կարող են դուրս գալ միջազգային շուկա (հատկապես այն երկրներ, ուր առկա են հայկական համայնքներ) ու վալյուտային համալրման լուրջ աղբյուր լինել:

Գյուղատնտեսական հումքի վերամշակման և պահպանման այս ուղղությունների զարգացումը լայն ասպարեզ կբացի արտասահմանյան երկրների, հատկապես հայկական ֆիրմաների հետ համատեղ ձեռնարկություններ ստեղծելու և այլ բնույթի համագործակցության համար:

Ծրագրում առանձնահատուկ ուշադրություն է դարձված հանրապետության ռեկրեացիոն ռեսուրսների օգտագործման, տուրիզմի զարգացման, անտառային ռեսուրսների բազմապատկման և ռացիոնալ օգտագործման հարցերին:

Տնտեսական զարգացման պրոբլեմների լուծման հետ մեկտեղ ծրագրում լայն տեղ է հատկացվում հանրապետության սոցիալական ոլորտի զարգացմանը, քաղաքական և տնտեսական նկատառումներ են արտահայտվում դրա հետ մնալը հաղթահարելու, մարդու սոցիալական բոլոր պահանջմունքները բավարարելու ուղղությամբ:

Հրատապ սոցիալ-տնտեսական խնդիր է աշխատուժի արդյունավետ զբաղվածության հարցի ճիշտ լուծումը: Խնդիրը զբաղվածության այնպիսի համակարգի ստեղծումն է, որը կնպաստի ինչպես հանրապետության նյութական արտադրության կառուցվածքի առավել առաջադիմական ուղղությունների զարգացմանը, այնպես էլ սոցիալական, հատկապես ծառայությունների ոլորտների բարձրացմանը նոր մակարդակի, դրանով իսկ հրաժարվելով մեր օրերում գործող ձևական լրիվ զբաղվածության մոդելից:

Հեռանկարային զարգացման կարևոր պրոբլեմներից մեկը տարաբնակեցման խնդրի լուծման ճիշտ մեխանիզմի մշակումն է, որը կնպաստի հանրապետության տարածքների քիչ թե շատ համաչափ բնակեցմանը, մարդկանց կենսագործունեության նորմալ պայմանների ապահովմանը, հատկապես լեռնային և նախալեռնային շրջաններում: Բնակչության աճի գերակշռող մասը նպատակահարմար է տեղաբաշխել լեռնային և նախալեռնային շրջաններում, այլապես հարթավայրերը ամբողջությամբ կվերածվեն բնակավայրերի, և մենք կկորցնենք մեր շտեմարանները:

Հայաստանի հեռանկարային զարգացման պրոբլեմների շարքում ուրույն տեղ ունեն տնտեսական կառավարման համակարգի կատարելագործման, տնտեսական ինքնուրույնության ապահովման և արտաքին կապերի զարգացման, երկրաշարժի գոտու վերածննդի հարցերը:

Ծրագրային այդ բոլոր հարցերը և դրանց լուծումները ներկայացնելը առավել լայն ընդգրկում ունեն և կպահանջեն հատուկ քննարկումներ: Իսկ երկրաշարժի գոտու վերականգնման ու զարգացման մեր որոշ նկատառումները կցանկանայինք ներկայացնել, քանի որ դրանք այսօր առավել հրատապ նշանակություն են ձեռք բերել:

Երկրաշարժից տուժած շրջանների տնտեսության վերականգնման ու զարգացման վերաբերյալ ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ կառավարության մշակած միջոցառումները, դրանց գործնական իրականացումը, մեզ թվում է, ուղղված են ավելի շուտ ընթացիկ և ոչ հեռանկարային ստրատեգիական խնդիրների լուծմանը, նպատակամղված չեն ժամանակակից համաշխարհային գիտատեխնիկական նվաճումների բազայի վրա հանրապետական ողջ կոմպլեքսի վերակառուցմանը: Այստեղ մենք դարձյալ գիտականորեն չհիմնավորված մոտեցում ենք ցուցաբերում ռեգիոնի հարցերի համալիր, հեռանկարային, արմատական լուծման նկատմամբ:

Մշակված միջոցառումները նպատակամղված են կարճ ժամանակամիջոցում (երկու տարում, որի ձախողումն այսօր արդեն ակնհայտ է) վերականգնելու հանրապետության երկրաշարժից տուժած շրջանների սոցիալական ոլորտի օբյեկտները, ինչպես նաև գրեթե բոլոր արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկությունները՝ մեզ հասանելի տեխնիկական հիմքի վրա և իրենց նախկին ծավալներով:

Նման տեմպային միտումը ինչ-որ տեղ հակասության մեջ է մտնում հանրապետության գիտատեխնիկական, սոցիալ-տնտեսական համալիր զարգացման ծրագրերի հետ:

Քաղաքների և գյուղերի վերականգնման տեղանքի ընտրության հարցը բավական լուրջ հետազոտման և հետախուզման կարիք ունի: Այդ աշխատանքներում անհրաժեշտ է լայնորեն ներգրավել նաև միջազգային կազմակերպությունները, տարբեր երկրների ճանաչված մասնագետներին: Մենք այսօր սխալվելու իրավունք չունենք,



այն հետագայում անհնար կլինի շտկել: Պետք է կառուցապատել միայն տեղանքի երկրաբանական, սեյսմոլոգիական, գիտահետազոտական, հետախուզական բազմակողմանի ուսումնասիրությունների ամբողջացման հիման վրա, ինչն այսօր մենք ամբողջ ռեգիոնի մասշտաբով դեռ չունենք: Ստրատեգիական հարցերը լուծելու համար մենք պետք է համանման տվյալներ ունենանք նաև ամբողջ հանրապետության համար: Իհարկե, դա չի նշանակում, որ ոչ մի շինարարական աշխատանք չպետք է կատարվի, կարելի է կառուցապատել միայն այն տարածքները, որոնց համալիր ուսումնասիրությունը հիմնովին ավարտված է: Բացի դրանից, համաշխարհային պրակտիկայում ընդունված է, որ մեծ մասշտաբի ամեն մի ծրագրի իրականացում, ինչպիսին է, ասենք երկրաշարժից տուժած շրջանների վերականգնումը, ուղեկցվում է սոցիալ-տնտեսական խնդիրներին ծառայող ժամանակավոր շինությունների լայն օգտագործմամբ, որոնք մինչև ծրագրի հիմնավոր ավարտումը կարող են բավարարել հասարակական նվազագույն պահանջները:

Պետք է նկատի ունենանք նաև, որ սակավահող մեր հանրապետությունում բնակավայրերը կարող են տեղադրվել միայն գյուղատնտեսության համար ոչ պիտանի հողերի վրա և սկզբունքորեն բացառվում է վարելահողերի՝ քաղաքաշինության նպատակով օգտագործումը:

Մյուս պրոբլեմը վերաբերում է ավերված արդյունաբերական օբյեկտներին, որոնք մենք այժմ վերականգնում ենք իրենց նախկին կարողություններով: Դա լավագույն տարբերակը չէ և անհրաժեշտ է նոր համակարգված մոտեցում:

Հայաստանի տնտեսության վերականգնման և զարգացման համար բավական չեն միայն Խորհրդային Միության ջանքերը, աշխատանքներին անհրաժեշտ է լայնորեն ներգրավել նաև արտասահմանյան երկրների շահագրգռված ուժերը և առաջին հերթին՝ սփյուռքը:

Աշխարհի համարյա բոլոր երկրների բարյացակամ վերաբերմունքը երկրի քաղաքական նոր կուրսի նկատմամբ և օգնությունը երկրաշարժից տուժած շրջաններին, լիովին հիմք են տալիս մշակել և իրականացնել Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման միջազգային ծրագիր: Այն հնարավորություն կտա արդյունավետ օգտագործել ինչպես Խորհրդային Միությունից, այնպես էլ այլ երկրներից եկող նյութական և մտավոր օգնությունը, ընդհանրացնել սեյսմիկ գոտիներում քաղաքացիական և արդյունաբերական շինարարության, ինչպես նաև բնական աղետների հետևանքով ավերված շրջանների վերակառուցման համաշխարհային փորձը:

Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման միջազգային ծրագրի մշակման և իրականացման համար անհրաժեշտ է առաջին հերթին ընդունել քաղաքական որոշում, այսինքն՝ հանրապետությունը հայտարարել ազատ տնտեսական գոտի, երկրորդ՝ ակտիվացնել գոյություն ունեցող, այդ թվում ոչ պետական, միջազգային գիտատեխնիկական համագործակցության ձևերն ու միջոցները, երրորդ՝ ստեղծել խորհրդային և արտասահմանյան էքսպերտների ծրագրային կոմիտե, չորրորդ՝ ստեղծել նախագծի ֆինանսավորման միջազգային կոնսորցիում, ինչպես նաև մշակել նախագծի իրավական ստատուսը:

Միջազգային ծրագիրը հնարավորություն կընձեռի արդյունաբերությունը վերակառուցել համաշխարհային նորագույն տեխնիկայի և տեխնոլոգիայի բազայի վրա, ստեղծել այնպիսի արտադրություններ, որոնք չեն խախտի հանրապետության էկոկառուցվածքը, ապահովել գիտատար արդյունաբերության ժամանակակից ուղղությունների զարգացումը: Հեռանկարային առումով անհրաժեշտ է վերանայել մեր արդյունաբերության կառուցվածքը: Մասնավորապես պետք է հրաժարվել թեթև արդյունաբերության, ծանր հաստոցաշինության հետագա զարգացումից, որովհետև բերովի հումքի պրոբլեմը երկրում գնալով սրվում է, իսկ դրա փոխադրումը հեռավոր շրջաններից դառնում է ոչ արդյունավետ:

Անհրաժեշտ է նոր մոտեցում ցուցաբերել արդյունաբերական ձեռնարկությունների չափերի նկատմամբ: Ժամանակակից գիտատեխնիկական զարգացման պայմաններում, ինչպես ցույց է տալիս համաշխարհային փորձը, ամենաարդյունավետը մինչև 500 աշխատող ունեցող ձեռնարկությունն է: Այլ խոսքով, աշխարհն այսօր հրաժարվում է հսկա ձեռնարկությունների կառուցումից, իսկ մենք շարունակում ենք կառուցել խոշոր (1.000 և ավելի աշխատատեղ) չափերով ձեռնարկություններ:

Առանձնահատուկ ուշադրություն է պահանջում գյուղատնտեսության վերակառուցման և զարգացման նախագիծը: Այստեղ նույնպես մեծ տեղ պետք է հատկացվի միջազգային համագործակցությանը և փոխօգնությանը: Աղետի ենթարկված շրջան-

ներում անհրաժեշտ է գործնական քայլեր կատարել բուսաբուծության, անասնաբուծության, սելեկցիայի բնագավառներում արտասահմանյան փորձի ընդօրինակման ասպարեզում: Այդ խնդիրների լուծումը պահանջում է վարձակալական նոր մոդել, որի էությունը գյուղական ֆերմերային տնտեսությունների ստեղծումն է և անցումը հողերի դրամական վարձակալման համակարգի: Վարձակալը (ֆերմերը) յուրաքանչյուր հեկտար հողատարածության դիմաց, նախօրոք կնքված պայմանագրով, վարձավճարի կամ հարկի ձևով վճարում է պետությանը կամ վարձատրության իրավունքը ստանձնած ներկայացուցչին: Տնտեսության վարման ուղղության, վերջնական արդյունքների իրացման հարցում նա ստանում է լրիվ ինքնուրույնություն: Նշված մոդելի իրականացման պայմաններում նպատակահարմար չէ երկրաշարժից տուժած շրջաններում վերականգնել կոլտնտեսությունների և խորհրդային տնտեսությունների խոշոր անասնագոմերը և պահեստային տնտեսությունները, մեքենաների հավաքակայանները: Դրանք մինչև երկրաշարժն էլ իրենց չեն արդարացրել, իսկ այժմ առավել ևս չեն արդարացնում:

Գյուղատնտեսության արտադրական օբյեկտների վերականգնման ուղին վարձակալական համակարգի առաջարկվող մոդելի պահանջներին համապատասխան, այսինքն՝ փոքր չափերով՝ կովանոցների, ասենք 20—30 գլխի համար, պահեստների՝ մինչև 10—15 հեկտար հողատարածության բերքի պահեստավորման և պահպանման համար, գյուղատնտեսական մթերքների վերամշակման փոքր օբյեկտների ստեղծումն է: Գյուղատնտեսության արագ վերականգնման համար նպատակահարմար է վարձակալներին 5 տարով ազատել վարձավճարից և նրանց արտոնյալ պայմաններով, այսինքն՝ առանց տոկոս 2—3 տարով վարկ տրամադրել: Դա կնպաստի վարձակալների նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը: Պետք է նկատի ունենալ, որ վարձակալական առաջարկվող մոդելը պետությանը կազատի բյուջեից գյուղատնտեսությանը տարեկան մեծ գումարներ հատկացնելուց:

Ժամանակակից գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների հիման վրա երկրաշարժից տուժած շրջանների վերականգնումը, ինչպես նաև հանրապետության ժողովրդական տնտեսության նոր առաջընթացը կարող է արդյունավետ լինել միայն սերտ համագործակցության, մեր պրոբլեմների լուծմանը խորհրդային և միջազգային կազմակերպությունների ակտիվ մասնակցության պայմանով:

Ինչպես տեսնում ենք, Հայաստանի տնտեսական զարգացման ծրագիրը համալիր միջոցառումների մի համակարգ է, որի իրականացումը հնարավորություն կտա հանրապետությունը դուրս բերել որակական նոր մակարդակ:

---

Կուսակցական աշխատանքի

պրակտիկա

# ՍՈՎՈՐԵՆՔ ԱՇԽԱՏԵԼ ՆՈՐ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԸՆԹԱՆՈՒՄ Է ԴԺՎԱՐԻՆ, բայց հույժ կարևոր պրոցես, որի շուրջ գործարար խոսակցություն ծավալվեց ԽՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում, կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծի քննարկման ժամանակ: Պլենումին տրված զեկուցման մեջ և ելույթներում հատկապես շեշտվեց, որ կուսակցությունը քաղաքական ավանգարդի առաքելությունը կկարողանա կատարել, եթե ինքն արմատապես վերակառուցվի, տիրապետի ժամանակակից պայմաններում քաղաքական աշխատանքի արվեստին, կարողանա հաջողությամբ գործակցել վերակառուցման բոլոր ուժերի հետ: Այսօր գլխավորը մարդկանց կենսական պահանջմունքների բավարարման համար կատարվող ակտիվ գործողություններն են, աշխատավորների հետ կուսակցական կոմիտեների կապերի ամրապնդումը, հասարակական կյանքի դեմոկրատացման հետագա խորացումը և կուսակցական-քաղաքական աշխատանքի համապատասխան վերակառուցումը: Եվ այստեղ դանդաղել չի կարելի:

Պարզելու, թե նոր պայմաններում ինչպես է աշխատում Հայաստանի կոմկուսի Արագածի շրջանային կազմակերպությունը, շրջկոմի առաջին քարտուղար ՎՈԼՈԴՅԱ ԱԲՐԱՀԱՄՅԱՆԻ հետ հարցազրույց ունեցավ մեր ամսագրի կուսակցական կյանք բաժնի վարիչ ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆԸ:

ՀԱՐՑ.— Ընկեր Աբրահամյան, շատ է խոսվում նոր պայմաններում աշխատել սովորելու և կարողանալու անհրաժեշտության մասին: Ինչպե՞ս եք Դուք մեկնաբանում նոր պայմանների էությունը: Ի՞նչ պիտի անել վերակառուցման կուրսի պահանջներին համապատասխան գործունեություն ծավալելու համար: Ի՞նչ կասեիք նախկինում արմատացած ղեկավարման վարչահրամայական մեթոդի վնասակարության և այն կուսակցական աշխատանքում հաղթահարելու մասին:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Նախ ասեմ, որ նոր պայմանները, մեր հասարակական կյանքի նորացման, դեմոկրատացման, հրապարակայնության պայմաններն են, քաղաքական սիստեմի ռեֆորմը, քաղաքում ու գյուղում առաջացած նոր հարաբերությունները, երբ կուսակցական կոմիտեներից ու կազմակերպություններից պահանջվում է թոթափել ղեկավարման վարչահրամայական մեթոդները, տիրապետել աշխատանքի քաղաքական մեթոդներին: Կյանքի ու ժամանակի պահանջներից բխող՝ կուսակցության վերակառուցման կուրսն այսօր զարգացման ընթացքի մեջ է և ընդգրկել է մեր կենսագործունեության բոլոր ոլորտները:

Նորացման անհրաժեշտությունը խիստ հրամայական պահանջ է, և կուսակցության ձեռնարկումները այս ասպարեզում հիմնարար ու տեղին են: Վերջապես մենք ևս պետք է շատ լրջորեն մտածենք քաղաքակիրթ հասարակության կառուցման մեր իսկ անելիքների մասին: Դա առավել ևս կարևորվում է, որովհետև մեր երկրի վրա է բևեռված աշխարհի բոլոր ժողովուրդների ուշադրությունը: Մեր ամեն մի հաջողություն ու ձախողում չեն վրիպում նրանց ուշադրությունից: Այդ իսկ պատճառով որքան շուտ թոթափենք մեզանում տեղ գտած թերությունները, որոնք հաճախ անվանում ենք լճացման տարիների, վարչահրամայական մեթոդի հետևանք, այնքան շահեկան և արդարացի կարծիք կվաստակենք մեր գործունեությանը հետևող աշխատավորական զանգվածների, բարի կամքի մարդկանց կողմից:

Ձեր հարցի առնչությամբ ես մասնավորապես կուզեի հայտնել իմ անձնական

կարծիքը վարչահրամայական մեթոդով աշխատելու վերաբերյալ: Այդ մեթոդով աշխատելը նախ՝ նշանակում է վիրավորել այն օղակների ինքնասիրությունը, որոնք իրավասու են և կոչված են կատարելու իրենց պարտականությունները: Երկրորդ՝ այդ մեթոդով աշխատելը նշանակում է չվստահել մարդկանց, նրանց զրկել նախաձեռնությունից, սեփական ուժերին ապավինելուց: Կամ որքա՞ն է ճիշտ կարծել, թե ամեն մի թելադրանքով հնարավոր է հստակորեն կատարել պահանջվածը: Վերջապես, իրոք, կյանքը մեզ ցույց է տալիս վարչարարության, հրամայելու, ուրիշների իրավունքները շրջանցելու հետևանքների վնասակարությունը: Մինչդեռ աշխատելու, արարելու ուղիներ միշտ էլ եղել են ու կան: Եվ պատահական չէ, որ այսօր կուսակցությունը այս հարցի լուծման առնչությամբ բոլորիս ուշադրությունը բևեռում է շահագրգիռ աշխատանք կազմակերպելու, ստեղծված և ստեղծվելիք արժեքների նկատմամբ տիրոջական օրինականությունը (ոչ թե խոսքով) կյանքի կոչելու վրա:

Տարիների ընթացքում վարչահրամայական աշխատաոճը ստեղծեց մի անհելի ճեղքվածք մեր պարտականությունների և արածի միջև, խորացրեց գործնականի խզումը տեսականից, ծլարձակեցին բազմաթիվ մերժելի երևույթներ: Այդ մեխանիզմից էապես տուժեցին սոցիալական ոլորտը, մարդկանց հուզող խնդիրների լուծումը: Տասնամյակներ շարունակ խոսքով կարևորել ենք բնակչության համար բարեկեցիկ պայմաններ ստեղծելը, մինչդեռ, օրինակ, մեր շրջանում բազմաթիվ գյուղեր շարունակել են գոյատևել առանց բնակարանային շինարարության, առանց խմելու ջրի, ապրելու և արարելու պայմանների:

Վարչահրամայական ղեկավարման մեթոդը ստեղծել էր ևս մի լուրջ բարդություն այն առումով, որ բոլոր օղակները փաստորեն զրկվել էին նախաձեռնությունից: Դա աններելիորեն նեղացրել էր կոլեկտիվների գործունեության շրջանակը: Մինչդեռ կյանքը մշտապես գտնվում է շարժման ու զարգացման, փոփոխման ու կատարելագործման մեջ:

Եվ պատահական չէ, որ այսօր տնտեսական ռեֆորմի անկյունաքարը դարձել է ազատ, անկաշկանդ, ստեղծարար գործելակերպը: Դա պարզ երևում է բազմաթիվ վարձակալական, կոոպերատիվ հիմունքներով կազմակերպվող աշխատանքային օրինակներով: Բանը հասել էր նրան, որ արտադրության ոլորտի վրա ըստ էության չէին տարածվում տնտեսագիտական օրինաչափությունները: Ես մեծ սպասելիքներ ունեմ ԽՄԿԿ XXVIII համագումարից, որը նոր քայլ կլինի կուսակցական աշխատանքի հետևողական կատարելագործման ճանապարհին:

ՀԱՐՑ.— 1988 թ. դեկտեմբերյան երկրաշարժն իր ավերիչ գործը կատարեց նաև Արագածի շրջանում: Մամուլից հայտնի է, որ լրջորեն տուժել է նաև ձեր ագրարային համալիրը: Հետևաբար, պարզ է, որ տարերային աղետի հետևանքով ևս առաջացել են աշխատանքի անսովոր պայմաններ: Ի՞նչ կասեք այդ մասին:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ես թվարկեցի վերակառուցման պայմաններում մեր իրականության մեջ հասունացած պրոբլեմներից մի քանիսը միայն, մինչդեռ դրանք բազմաթիվ ու բազմաբնույթ են և որոնց լուծման համար էլ կուսակցությունը առաջադրել է մեր հասարակության նորացման կուրսը: Այստեղից էլ մեր գործունեության գերխնդիրը՝ ճիշտ և արդյունավետորեն աշխատել թելադրված նոր պայմաններում:

Այս ամենով հանդերձ նորովի աշխատելու մեր ծանրաբեռնվածությունը, ճիշտ եք նկատում, էապես մեծացել է նաև երկրաշարժի հետևանքով: Նախ՝ խստորեն խաթարվել է շրջանի նյութատեխնիկական բազան, ծառացել են սոցիալական բարդ լուծելի բազմաթիվ պրոբլեմներ, լրջորեն տուժել են աշխատելու, ապրելու, գործելու պայմանները: Լեռնային շրջանին բնորոշ բազում հոգսերին ավելացել են նորերը: Պատկերացրեք, նախկինում մեր շրջանում կապիտալ ներդրումների ծավալը կազմել է գրեթե երկու միլիոն ռուբլի, մինչդեռ միայն աղետի հետևանքները վերացնելու համար (այն էլ մեզ նման թույլ նյութատեխնիկական բազա ունեցող շրջանում) պահանջվում են 110 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ: Դեռ չեմ խոսում այն մասին, որ աղետից առաջ էլ լուծված չէին այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են շրջանի բնակավայրերը խմելու ջրով ապահովելը, սոցիալական և արտադրական ոլորտների բազմաթիվ օբյեկտների կառուցումը և այլն:

Եվ ահա ստեղծված լարված իրադրության պայմաններում խիստ դժվարացել է թե՛ կազմակերպական, թե՛ քաղաքական աշխատանքը: Այն առնչվում է նաև մարդկանց հոգեբանության մեջ տեղի ունեցած փոփոխությունների, նրանց պահանջմունքների շուտափույթ բավարարման հետ:

ՀԱՐՑ.— Ձեր ասածից պարզվում է, որ հարկավոր է գործել նոր ձևով, կազմակերպական, գաղափարախոսական, կադրային խելամիտ աշխատանքի միջոցով: Այլ խոսքով, նոր բարդ խնդիրները չենք ուզում լուծել հին մեթոդներով: Այսինքն՝ հարկավոր են նոր մոտեցումներ, ոչ ստանդարտ գործողություններ: Վերցնենք, օրինակ, մասսաների հետ տարվող աշխատանքի և կադրային հարցերը: Ինքը՝ կյանքն է ստիպում, ինչպես և պահանջեց XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսը, հրաժարվել կադրերի ընտրության և տեղաբաշխման ձևական-անվանացանկային մոտեցումից, դեմոկրատացնել այդ պրոցեսը, կադրերն առաջադրելիս խորհրդակցել կուսկազմակերպությունների, կոլեկտիվների հետ, նրանց ընտրությունը կատարել այլընտրանքի, իսկական մրցակցության հիման վրա: Այդ առընչությամբ ի՞նչ և ինչպե՞ս է արվում ձեր շրջանի կուսկազմակերպությունում:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Աշխատանքի հին ոճից ու մեթոդներից ձերբազատվելու համար, առաջին հերթին, անհրաժեշտ է ունենալ գործունեության կուռ և հստակ ծրագիր: Կուսակցության պահանջները հայտնի են, իսկ մեր անելիքները պետք է ընդգրկեն թե՛ տնտեսական ու սոցիալական, թե՛ կուսակցական-կազմակերպական ու քաղաքական-գաղափարախոսական ոլորտները: Առաջնահերթ կարևորություն ենք տվել շրջկոմի ապարատի աշխատաոճի վերանայմանը, մերժելի մեթոդներից ազատվելուն և արդեն իսկ ավանդույթ դարձած թեպետ հին, բայց դրական արձագանք ստացած ձևերից ու հնարքներից օգտվելուն:

Ինչպիսին էլ լինի հրատապությունը, աստիճանականությունը միշտ էլ գործում է: Չէ որ մարդիկ միանգամից չեն փոխվում: Շատերն են դժգոհում բյուրոկրատիզմից: Հիրավի, արդարացի է: Եվ երբ խորանում ենք այդ գնահատականն ամբողջացնող տարրերի մեջ, ի հայտ են գալիս նոր խնդիրներ: Ինչու՞ ամեն պահ ու ամեն ժամի չընդունել բնակչին, ունկնդիր չլինել նրա հոգսերին, չզբաղվել նրա պահանջը բավարարելու հարցերով: Թեկուզ չլուծել, բայց լսել նրանց, հոգսաթափ խոսքեր ասել: Միայն անցած տարի շրջկոմ ընդունելության է եկել ավելի քան երեք հազար մարդ (նկատի ունենանք, որ մեզ մոտ 14 հազար բնակիչ է), շրջխորհրդի գործադիր կոմիտե՝ ավելի քան 12 հազար: Այս հոսքի մեջ մենք կարևորում ենք նաև մարդկանց հետ շփվելու անհրաժեշտությունը: Ձգտում ենք հասնել այն բանին, որ բնակիչն զգա՝ իր առջև փակ դռներ չկան:

Կուսշրջկոմի ապարատի աշխատաոճում բավականին նշմարելի են անհարկի խորհրդակցությունների խիստ սահմանափակումը, թղթարարության վերացումը, մարդկանց համար աշխատաժամանակը ոչ թե ցուցումներով օգտագործելը, այլ նրանց այդ հարցում ազատ ու անկաշկանդ դարձնելու պարագան: Խորհրդակցությունների փոխարեն նախընտրում ենք ավելի շատ լինել տեղերում, անելիքների համար պայմանավորվել կոլեկտիվներում, ակտիվացնել նրանց շեփությամբ զբաղվող կոմունիստ ընկերների գործունեությունը:

Մեր գործունեության մեջ ստեղծված նոր պայմաններում ամենադժվարինը և վճռորոշը թերևս կադրերի հետ տարվող աշխատանքն է: Բնական է, որ դա միշտ եղել է, բայց այսօրվա մոտեցումն ավելի առարկայական է, ավելի օբյեկտիվ և հստակ չափանիշների կարիք է զգում: Նախ՝ աշխատանքի նոր պայմաններն ու պահանջները և ապա՝ երկրաշարժի հարուցած հետևանքները թելադրում են ամեն ինչ չկապել ղեկավար կադրերի գործելակերպի հետ, զանազանել օբյեկտիվ ու սուբյեկտիվ հանգամանքները և ճիշտ դիրքորոշում ունենալ նրանց նկատմամբ ինչպես պահանջկոտություն, այնպես էլ հոգատարություն դրսևորելու հարցում: Անտարակույս, ստեղծված բարդ իրադրության պայմաններում կադրերի դերը առավել որոշիչ է: Կադրային քաղաքականության արմատական վերակառուցման նպատակով 1987 թվականից սկսած հրաժարվել ենք կադրերի նշանակման նախկին ձևական անվանացանկային մոտեցումից և հետևողականորեն կիրառում ենք ընտրովիության սկզբունքը՝ բազմաթեկնածության առաջադրմամբ:

Աշխատավորական կոլեկտիվն ինքն է ընտրում իր ղեկավարին: Եվ, թեպետ, ոչ բոլոր դեպքերում է հաջողվում ընտրել ամենալավագույնին, բայց դա կարևորվում է հենց նրանով, որ մեզ մոտ ընթանում է կադրերի ընտրության և տեղաբաշխման դեմոկրատական պրոցես: Հարկ եմ համարում նշել, որ այս գործում դեռևս չենք հասել կատարելության, և շատերն են այս կապակցությամբ դժգոհություն արտահայտում, սակայն սա ևս աստիճանականություն է պահանջում և իմ խորին համոզմամբ նախընտրելի ձև է ու մշտապես պետք է կատարելագործվի: Այլընտրանքային ընտրովիության սկզբունքով շրջանում աշխատում և հեղինակություն են վայելում պետական տնտեսությունների, դպրոցների, հիմնարկ-ձեռնարկությունների շատ ղեկավարներ:

Մեծ ուշադրություն ենք նվիրում բյուրոյի որոշման նախագծերի նախապատրաստմանը, դրանցում հիմնականում պրոբլեմային խնդիրների վերհանմանը, ելակետային նախապայմանների ստեղծմանը և շրջկոմի վարած կուրսի ճշգրտմանը: Թվում է, թե բյուրոյի նիստերի և ընդունած որոշումների քանակի կրճատմամբ մեր աշխատանքը կարող է տուժել: Մինչդեռ իրականում կարևորը որոշումների մակարդակն է և դրանց անթերի կատարման ապահովումը: Մասնավորապես մեծ տեղ ենք հատկացնում կատարման ժամկետների ճիշտ սահմանմանը, պատասխանատու անձանց գործելակերպի արդյունավետությանը, ծագած դժվարությունների լուծմանը, բյուրոյի առջև հաշվետու լինելուն:

Նկատելի փոփոխություններ ենք մտցրել շրջկոմի ընտրովի մարմնի՝ պլենումի նախապատրաստման ու անցկացման աշխատանքում: Քննարկվելիք հարցի առնչությամբ ուսումնասիրում ենք հիմնական պրոբլեմները, դասդասում ըստ բաժինների և նախանշում դրանց լուծման ձևերն ու ուղիները: Հրաժարվել ենք պլենումի ելույթների նախապես պատրաստման պրակտիկայից: Բանավոր ելույթներում հանպատրաստից առաջ են քաշվում բազմաթիվ հրատապ հարցեր, դրանց լուծման գործնական միջոցներ և ուղիներ: Նման դեպքում ընտրովի մարմնի անդամը իրեն ավելի պատասխանատու է զգում: Թերևս դրանով է պայմանավորվում, որ շատերն են ցանկանում ելույթ ունենալ քննարկվող հարցի և ընդունվող որոշման շուրջ:

Նախկինում շրջկոմի բյուրոն կոնֆերանսից կոնֆերանս էր հաշիվ տալիս իր արածի մասին: Ընդ որում, ավելի շատ էին ցուցումները: 1987 թվականից սկսած բյուրոն հաշվետվությամբ հանդես է գալիս ամեն տարի՝ ցույց տալիս ոչ միայն կատարածն ու նրա հիմնավորվածությունը, այլև ընտրովի մարմնում ընդգրկված յուրաքանչյուր կոմունիստի գործունեությունը և մասնավորապես թերացումներն ու բացերը՝ սկսած շրջկոմի առաջին քարտուղարից մինչև բյուրոյի անդամները: Այնպես որ, բյուրոյի անդամների աշխատանքն ու բնութագիրը, որոնք հրապարակվում են շրջանային թերթում, հայտնի են դառնում բոլորին:

Բացի այդ, ձգտում ենք մարդկանց հետ շփում-հաղորդակցումը դարձնել ավելի արդյունավետ ու նպատակասլաց: Նշեմ հետևյալը. ինչպես հանդիպումների, այնպես էլ շրջկոմում կատարվող ընդունելությունների ընթացքում ծառացել էր մի կարևոր պրոբլեմ. աղետից տուժած բնակիչը չէր կարողանում հատկապես քար չլինելու պատճառով սեփական տունը կառուցել: Այս առնչությամբ մեր բոլոր ձեռնարկումները տևական ժամանակ արդյունք չէին տալիս: Հարկ եղավ հայցել հանրապետության շինանյութերի արտադրամիավորման օգնությունը: Պայմանավորվեցինք, որ քարի հայթայթման ընթացքում առաջացող բողոքները կարելի է վերացնել, եթե վերանայվի սպասարկման ձևը: Շրջանը տրամադրեց բեռնատար ավտոմեքենաներ, իսկ միավորումը պարտավորվեց օգնել, որպեսզի քարը հասցվի բնակչի կառույցը առանց նրա մասնակցության, նախօրոք նրա մուծած գումարի կտրոնի հիման վրա: Այս ձևը հնարավորություն ընձեռեց թեթևացնելու մարդկանց հոգսերը և նպաստելու անհատական բնակշինարարության արագացմանը: Ես գտնում եմ, որ այսօրվա տարակարծության պայմաններում շրջկոմի հեղինակությունը ավելի շատ է պայմանավորված մարդկանց նկատմամբ ուշադիր և հոգատար վերաբերմունքով, քան մենք կարծում ենք: Մյուս կարևոր հանգամանքը ճշտակատար լինելն է: Փորձը ցույց է տալիս, որ աշխատավորական զանգվածները շատ զգայուն են այդ հարցի նկատմամբ և միանգամայն օրինաչափ է նրանց խստապահանջությունը:

Նորացման պրոցեսում ձգտում ենք բոլոր օղակներում ապահովել անկաշկանդ արտահայտվելու, երևույթները օբյեկտիվորեն գնահատելու, ճշմարտությունը երևան հանելու առողջ մթնոլորտ, անկախ այն բանից, թե ով է քննադատվողը կամ ով է կատարել սխալը:

Ընտրովի մարմնի, անձի աշխատանքն ու գործելակերպը ունեն բազմաթիվ հնարավորություններ ու հնարքներ՝ նրանց ուժերը ընդհանուր գործի շահերին ծառայեցնելու, կուսկազմակերպությունների հեղինակությունը բարձրացնելու, մարդկանց հետ նրանց մերձեցնելու և ծառացած բարդ խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

ՀԱՐՑ.— ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում խնդիր դրվեց սահմանազատել կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների ֆունկցիաները, ապահովել վերջիններիս նախաձեռնությունն ու ինքնուրույնությունը: ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում ևս արծարծվում է այդ խնդիրը: Կուզեի խոսեիք



այդ մասին և պարզաբանեիք կուսակցական կոմիտեի դիրքորոշումը տնտեսական ու սոցիալական ոլորտի պրոբլեմների լուծման նկատմամբ, քանի որ դա շատ կարևոր է վերակառուցման արդի պայմաններում:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Նախապես ասեմ, որ շատ տեղին և այժմեական վիճակից բխող հարց է: Հիրավի, կուսակցությունը քանիցս նշել է խորհրդային և տնտեսական մարմինների դերի բարձրացման անհրաժեշտությունը: Այդ գիտակցմամբ էլ պատկերացնում եմ, որ յուրաքանչյուր կուսշրջկոմ պարտավոր է գործնական ձեռնարկումների դիմել՝ կատարելու նշված պահանջը: Սակայն դա չի նշանակում, թե կուսակցական կազմակերպությունները պետք է ձեռնպահ մնան և պատասխան չտան տնտեսական իրավիճակի համար:

Շրջանային օղակում տնտեսական ոլորտը որոշիչն է, և շրջկոմի վարած կուրսը ամբողջովին պետք է ներառնի այդ բնագավառի բոլոր խնդիրները: Ինչ վերաբերում է ծագած արտադրական, պլանային, ֆինանսական և այլ խնդիրների լուծմանը, ապա կարծում եմ, որ համապատասխան իրավասու օղակները, հիրավի, կարող են ու պարտավոր են ապահովել այն և բնավ կուսշրջկոմի միջամտության կարիքը չունեն:

Տնտեսական ոլորտում մեր հոգսերի հոգսը եղել և մնում է նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, արտադրության ինտենսիվացումը, կադրերով ապահովվածությունը, շահութաբեր արտադրության կազմակերպումը և, ամենակարևորը, առկա ռեսուրսների նպատակային ու արդյունավետ օգտագործումը: Սրանք հարցեր են, որոնք մշտապես պետք է գտնվեն կուսշրջկոմի տեսադաշտում և դառնան նրա վարած կուրսի բաղկացուցիչ մասերը: Պարզապես ես չեմ կարողանում ընկալել տնտեսական և քաղաքական բնագավառների տարանջատվածությունը, այդ պահանջի հիմնավորվածությունը: Մերժելի է, երբ շրջկոմը փոխարինում է շրջանային խորհրդի գործադիր կոմիտեին կամ շրջանային ագրոարդյունաբերական միավորմանը նրանց վերապահվող օրախնդրական գործերում: Սակայն դա չի նշանակում, թե շրջկոմը տնտեսական ոլորտում անելիք չունի:

Եվ այսօր շրջկոմը նախ՝ ձգտում է ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք բացառեն մյուս օղակներին փոխարինելու անընդունելի ձևը և նպաստեն նրանց նախաձեռնության զարգացմանն ու ինքնուրույնության խորացմանը, ապա՝ ուժեղացնել հսկողությունն ու պահանջկոտությունը նրանց գործունեության նկատմամբ: Տևական ժամանակ է, ինչ մենք աշխատում ենք հետևյալ սկզբունքով՝ շրջկոմը չի անդրադառնում որևէ հարցի, մինչև որ այն պատշաճ կերպով չի քննարկվում համապատասխան օղակում:

Խորհրդային մարմինների դերի բարձրացման գործում կարևորում ենք գործադիր կոմիտեների ապարատների, դեպուտատական հանձնաժողովների ըստ ամենայնի ակտիվացումը: Այսօր սպասարկման ոլորտի, սոցիալական, տնտեսական բազմաթիվ հարցեր նրանք լուծում են ինքնուրույնաբար: Վերջերս կուսշրջկոմի բյուրոյի նիստում քննարկեցինք սեփական և վերադաս մարմինների որոշումների կենսագործման ասպարեզում շրջանային խորհրդի գործադիր կոմիտեի կատարած աշխատանքի հարցը: Նախ՝ գործարար խոսակցություն ծավալվեց խորհուրդների դերի բարձրացման շուրջ, վերհանվեցին տեղ գտած թերությունները և ապա՝ նրա առջև խնդիր դրվեց ունենալ գործունեության հստակ ծրագիր, մի հանգամանք, որի դեպքում կբացառվի կուսշրջկոմի միջամտության անհրաժեշտությունը:

Խորհուրդների դերի բարձրացման ամենակարևոր պայմանը նրա ընդունած որոշումների կատարման նկատմամբ կուսակցական ուշադրության և հսկողության ապահովումն է: Շրջանային խորհրդի գործկոմի որոշմամբ նախկին միջտնտեսային շինարարական ձեռնարկության պետ Ա. Կարապետյանը ազատվել էր աշխատանքից: Եվ շրջկոմի բյուրոն նպատակահարմար գտավ համաձայնել այդ որոշման հետ:

ՀԱՐՑ.— Որդի Արտավազդի, ի՞նչ ուղիներ եք նախընտրել շրջանի տնտեսական պոտենցիալը վերականգնելու, հզորացնելու և երկրաշարժի հետևանքները վերացնելու համար, ինչպիսի՞ գործերով եք պատրաստվում դիմավորել ԽՄԿԿ XXVIII համագումարը:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Մեր ամենադժվարին խնդիրներից են շահեկան արտադրության կազմակերպումը, արտադրական կոլեկտիվների բարձր արդյունավետ աշխատանքի ապահովումը և լեռնային շրջանի պայմաններում տնտեսական ռեֆորմի պահանջների իրականացումը: Այսօր դրանց գումարվել են նաև աղետի գոտու պրոբլեմները: Իրավիճակն այնպիսին է, որ առանձին բնագավառներում ամեն ինչ պետք է նոր ստեղծվի: Անցած տարի շրջանը էապես տուժեց նաև աննախադեպ երաշ-

տից, հոկտեմբերի 5-ին տեղի ունեցած փոթորկից և, ինչ խոսք, Ադրբեջանի ազգայնամոլների՝ մեր հանրապետության դեմ ձեռնարկած անմարդկային տնտեսական շրջափակումից: Ընդհանուր վնասը մեր փոքր շրջանում անցավ ավելի քան տասը միլիոն ռուբլուց: Այդ պայմաններում, բացառությամբ կաթի պետական վաճառքից, կատարվեցին և գերակատարվեցին շրջանի համար սահմանված հիմնական պլանային առաջադրանքները: Սակայն դա մեզ չի գոհացնում, որովհետև այսօր ավելի քան 1.000 ընտանիք տնազուրկ է, մի շարք գյուղերում վերացել են անասնապահական ֆերմաներն ու բրիգադները, առաջացել են նաև սոցիալական բնույթի բազմաթիվ հոգսեր: Լուրջ դժվարություններ են հարուցել արտադրական, սոցիալ-կենցաղային, մշակութային նշանակության շինությունների ավերածությունն ու բացակայությունը: Մինչ այդ ծառացել էր և այսօր է՛լ ավելի է խորացել խմելու ջրի սակավության պրոբլեմը:

Ինչպես տեսնում ենք, կուսշրջկոմի անելիքները քիչ են: Պարզապես նշեմ, որ գրեթե բոլոր պրոբլեմների առնչությամբ մշակվել են միջոցառումներ և դրանք աստիճանաբար իրականացվում են: Ինչպիսիք և ինչ ծավալի էլ լինեն դժվարությունները, դրանք կարելի է հաղթահարել, եթե կուսշրջկոմի վարած կուրսի մեջ չանտեսվի ամենակարևորը՝ ռեսուրսների արդյունավետ ու համակարգված օգտագործումը: Իսկ դրանք մեր լեռնային շրջանում քիչ չեն: Այսօր մենք ունենք շրջկոմում հանգամանորեն ուսումնասիրված ու հիմնավորված բնական ռեսուրսների՝ ջրի, քամու, ավազի ու քարի պաշարների, բնական մարգագետինների ու արոտավայրերի, օգտագործման ծրագրեր: Եռակի անգամ մեծացել են մելիորացվող հողատարածությունների ծավալները, ձեռնարկվել ջրամբարների և ջրատարների շինարարությունը, բացվել են ավազի ու քարի հանքեր, հանրապետությունում առաջին անգամ ստեղծվել է քամու գեներատորների հրապարակ: Միջոցներ ենք ձեռնարկել աշխատուժի զբաղվածությունն ապահովելու համար: Այնուհանդերձ, այսօր մեր շինարարության, կապի, տրանսպորտի, առևտրի ոլորտներում, գյուղատնտեսության մեջ ազատ աշխատատեղեր շատ կան և դրանց լրացումը մեր գլխավոր հոգսերից է:

Կուսշրջկոմի գործունեության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում տնտեսավարման և աշխատանքի կազմակերպման նոր եղանակների ներդրումն ու արմատավորումը: Այսօր շրջանում գործում է գյուղատնտեսական մթերքների արտադրության 33 կոոպերատիվ, որից 9-ը՝ կաթնապրանքային բնույթի: Ստեղծվել է վարձակալական և պայմանագրային կարգով միս արտադրելու լայն ցանց:

Թվարկածս գործերով և առաջիկայում բազում խնդիրների լուծմամբ էլ շրջանի կուսկազմակերպությունը, կոմունիստները, աշխատավորական կոլեկտիվները կընթանան դեպի ԽՄԿԿ XXVIII համագումար, որը նոր ազդակ կհաղորդի վերակառուցման պրոցեսի խորացմանը:

ՀԱՐՑ.— Եվ վերջին հարցը. ձեր անձնական վերաբերմունքը վերակառուցման կուրսի նկատմամբ:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ինձ զարմացնում է ոմանց այն հարցը, թե հավատու՞մ ես վերակառուցմանը: Ես դրան ուզում եմ պատասխանել միանշանակ՝ այո՛: Հավատում եմ նաև նրա հաղթանակին: Միայն ավելացնեմ, որ դրա անհրաժեշտությունը գուցե մենք պետք է զգայինք ավելի վաղ: Բոլոր դեպքերում դա հույժ անհրաժեշտություն էր մեր հանրապետությունում կուտակված բազմաթիվ բացասական երևույթները վերացնելու, նրա առաջընթացն ապահովելու համար:

Հետևաբար, որքան շուտ, այնքան լավ: Չէ՞ որ յուրաքանչյուրը կամենում է ապրել քաղաքակիրթ հասարակությունում: Իսկ վերակառուցումը, ես գտնում եմ, ծառայում է այդ նպատակի իրագործմանը: Ես լավատես եմ և հավատում եմ, որ այդ ասպարեզում կկատարվեն դրական լուրջ տեղաշարժեր: Կարևորն այն է, որ մարդիկ ճիշտ գնահատական տան իրենց շրջապատում կատարվող դեպքերին և ծագող երևույթներին: ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծի ընդունումը ինքնին վկայությունն է այն իրողության, որ կուսակցությունը լայն ճակատով ձեռնամուխ է եղել իր իսկ վերակառուցմանը, և ես համոզված եմ, որ դա միանգամայն դրական ազդեցություն կունենա մեր երկրի գործերի վրա:

---



# ՈՐ ԿԻՆԸ ԼԻՆԻ ԱՎԵԼԻ ԳԵՂԵՑԻԿ

**ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՌՋԵՎ ԾԱՌԱՑԱԾ և անհետաձգելի լուծում պահանջող լուրջ պրոբլեմներից մեկը «կանանց հարցն» է: Դեռ 1868 թվականին Կ. Մարքսը գրել է, որ «հասարակական առաջադիմությունը կարող է ճշտորեն չափվել գեղեցիկ սեռի հասարակական դիրքով» (տե՛ս Соч., т. 32, стр. 486): Եվ թեպետ անցած յոթ տասնամյակների ընթացքում մենք քանիցս խոսել ենք այն մասին, որ կանանց սոցիալական կարգավիճակի արմատական փոփոխման հարցերում XX դարի նվաճումներն անվիճելի են, որ սոցիալիզմն իրական հնարավորություններ է ստեղծել «կանանց հարցի» լուծման համար, սակայն այսօր ստիպված ենք արձանագրել. անհատի հանդեպ հումանիստական կողմնորոշման մասին կուսակցության առաջադրած պահանջի տեսանկյունից մեր հասարակությունը շատ բաներում պարտք է մնացել կանանց: Այս հարցերի մասին է մեր թղթակից ՀԱՍՄԻԿ ԱՆՏՈՆՅԱՆԻ զրույցը կանանց հանրապետական խորհրդի նախագահության նախագահ ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ հետ:**

**Հ. Ա.**— Մեր հանրապետության բնակչության կեսից ավելին կանայք են: Մեզանում արդեն բազմիցս ուշադրությունը բևեռել ենք այն բանին, որ թույլ սեռի ներկայացուցիչների համար անչափ դժվար է կրկնակի բեռնվածությունը: Մի կողմից՝ տուն, ընտանիք, երեխաներ, մյուս կողմից՝ ծառայողական պարտականություններ: Բայց կենցաղի ու աշխատանքի զուգակցման դժվարության հետ միասին դեռևս հաղթահարված չէ մեր ժամանակի համար թերևս ամոթալի ժամանակավրեպությունը՝ կանանց զբաղվածությունը գիշերային հերթափոխերում և առողջության համար վնասակար արտադրություններում: Վերջերս հրապարակված տվյալներով, այդպիսի կանանց թիվը մեր հանրապետությունում մոտենում է 172 հազարի (նրանցից 42 հազարը աշխատում է գիշերային հերթափոխում, 130 հազարը՝ վնասակար արտադրություններում): Բացի նրանից, որ այդ տվյալները համեմատաբար փոքր մեր հանրապետության համար ինքնին բարձր են, լուրջ անհանգստություն են առաջացնում նաև ժողովրդագրական բնույթի մի ամբողջ շարք խնդիրների առումով (ծնելիություն, մայրության ու մանկության պաշտպանություն և այլն):

**Ն. Հ.**— Իհարկե, աշխատող և ընտանիքում ծանրաբեռնված կնոջ պարտականությունների համատեղության բարդության հարցն ինքնին շատ օրախնդիր է, հատկապես գիշերային հերթափոխերում նրանց զբաղվածության համատեքստում: Հանրապետության կինխորհրդի նախաձեռնությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյում մենք քննարկել ենք 42 հազար կանանց գիշերային հերթափոխերում զբաղվածությունից ազատելու հարցը: Հուսով ենք, որ այն դրականորեն կլուծվի:

Արհմիությունների հետ համատեղ մշակել և միջոցառումներ ենք ձեռնարկել գիշերային հերթափոխերում զբաղված կանանց վերաբերյալ տվյալները ճշգրտելու նպատակով: Բացի դրանից, անհրաժեշտ է ունենալ այդ կանանց ցուցակը այն ձեռնարկությունների անվանումով, որտեղ նրանք աշխատում են, քանի որ մենք կինխորհրդի նախագահությունում չունենք այդ 42 հազար կանանց հստակ «աշխարհագրությունը»: Իսկ դա անհրաժեշտ է, որպեսզի պարզենք, թե կոնկրետ ով է պատասխանատու նրանց ճակատագրի համար, չէ՞ որ կանանց զբաղվածության ոլորտն այդ արտադրություններում բավականին լայն է:

Մենք մեծ հույսեր ենք կապում այն բանի հետ, որ ԽՍՀՄ Մինիստրների խորհրդում այսպես կոչված «կանանց հարցի» վերաբերյալ բազմաթիվ առաջարկությունների քննարկումից հետո որոշվեց ստեղծել հատուկ ենթաբաժին, որն զբաղվելու է կանանց խնդիրներով և ենթարկվելու է անմիջականորեն նախագահին: Ուրախ ենք,

որ մինչ այդ Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նստաշրջանում կինխորհրդի նախաձեռնությամբ բարձրացվել էր մեր հանրապետության կառավարությունում այդպիսի ենթաբաժին ստեղծելու հարցը: Հուսով ենք, որ դրա գործունեությունը կնպաստի կանանց դրության հետ կապված բոլոր օրենսդրական ակտերի իրականացման արագացմանը. դրանք են՝ նրանց ազատումը գիշերային հերթափոխերից ու վնասակար արտադրություններից և մի ամբողջ շարք այլ կենսական հարցեր:

**Հ. Ա.**— 1987 թվականին ստեղծված խորհրդային կանանց կոմիտեն ու նրա ենթաբաժինները տեղերում կոչված են ներկայացնելու և պաշտպանելու կանանց շահերը: Ակնհայտ է, որ այդ առաքելության իրականացման համար անհրաժեշտ է սերտ համագործակցություն պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների հետ, ինչպես նաև օրենսդրական նախաձեռնության իրավունք: Ինչպե՞ս են լուծվում այդ հարցերը զուտ իրավական առումով:

**Ն. Հ.**— Օրենսդրական նախաձեռնության իրավունքը վերապահված է կինխորհուրդներին այնպես, ինչպես և մյուս բոլոր հասարակական կազմակերպություններին: Մենք կարող ենք բարձրացնել մեզ հուզող հարցերը և պահանջել միջոցներ ձեռնարկել կանանց կյանքի այս կամ այն պրոբլեմների վերաբերյալ: Ահա, օրինակ, մի քանի ամիս առաջ դիմել էինք հանրապետության Մինիստրների խորհրդին՝ մայրության հիմնադրամ ստեղծելու առաջարկությամբ: Հասարակայնության լայն շրջաններում ծնունդ առած այդ նախաձեռնությունը, որի մշակմանն ու առաջադրմանը մասնակցել են և՛ Հայաստանի գիտությունների ակադեմիան, և՛ արհխորհուրդը, և՛ կոմերիտմիությունը, և՛ գրողների միությունը, և՛ մյուս ստեղծագործական կազմակերպությունները, արժանացել է պաշտպանության: Հունիսի 30-ին կայացավ մայրության հանրապետական հիմնադրամի հիմնադիր կոնֆերանսը: Սակայն հարկ է շեշտել, որ այն գործում է ոչ թե կինխորհրդին կից, այլ ինքնուրույն հասարակական կազմակերպություն է: Իսկ ինչ վերաբերում է կանանց հայկական հանրապետական խորհրդին, ապա այն տվյալ դեպքում հանդես է եկել որպես մայրության հիմնադրամի ստեղծման գլխավոր նախաձեռնող, նրան տալով լիակատար ինքնուրույնություն և համահանրապետական հասարակական կազմակերպության ստատուս, ինչը նրա համար կապահովի գործունեության ավելի լայն ասպարեզ, քան դա կլիներ, ասենք, մեր խորհրդի շրջանակներում: Մայրության հիմնադրամի առջև կանգնած է հայ ժողովրդի համար շատ կարևոր մի հարց. իրականացնել ժողովրդավարական քաղաքականություն: Չէ՞ որ այդ բնագավառում մեզանում լուրջ թերություններ են եղել նաև անցյալում, իսկ աղետալի երկրաշարժից հետո այդ պրոբլեմը հատուկ սրությամբ ծառացավ մեր առջև. աղետի վայրերից մեկնելու և չվերադառնալու վտանգը, այս շրջանում կյանքի չկարգավորվածությունը և այլ գործոններ, որոնք կարող են հանգեցնել մանկածնության էլ ավելի մեծ անկմանը հանրապետությունում: Ուստի մայրության հիմնադրամը իր առջև նպատակ է դնում՝ տնտեսապես խթանել մանկածնությունը, հատկապես աղետի գոտում, ինչպես նաև գործուն օգնություն ցույց տալ բազմազավակ ընտանիքներին: Բացի դրանից, մենք կառավարություն ենք ներկայացրել մի տեղեկանք, որտեղ արտահայտված է հանրապետության կինխորհրդի նախագահության դիրքորոշումը մի շարք հարցերի վերաբերյալ: Դրանք են՝ և՛ վերականգնման կենտրոնի ստեղծումը աղետի գոտում, և՛ սոցիալ-կենցաղային օբյեկտների շինարարության արագացումը, և՛ կանանց կենսագործունեության հետ կապված կենսական պրոբլեմների նախնական քննարկումը հասարակայնության լայն շրջաններում: Մենք շատ ենք գնահատում այն փաստը, որ իր զբաղվածությամբ հանդերձ, հանրապետության կառավարությունը զգայուն և ուշադիր վերաբերմունք է դրսևորում կինխորհրդի նախագահության պահանջների նկատմամբ. դա միևնույն ժամանակ հույս է ներշնչում, որ մեր իրավասության ներքո գտնվող հարցերում կկատարվի առաջընթաց քայլ: Հասարակական կազմակերպությունները չեն կարող գործել մեկը մյուսից անջատ, և կինխորհուրդները այդ իմաստով բացառություն չեն կազմում: Ի՞նչ կարող ենք անել առանց արհմիությունների աջակցության, ասենք, կանանց գիշերային հերթափոխերից կամ առողջության համար վնասակար արտադրություններից ազատելու համար մղվող պայքարում: Ըստ էության, այդ խնդիրը գտնվում է արհմիությունների իրավասության տակ, բայց ակնհայտ է նաև, որ կինխորհուրդները չպետք է մի կողմ քաշվեն դրա լուծումից: Այժմ մեզ համար կարևոր է ճշտորեն նշել բոլոր շեշտադրումները:

**Հ. Ա.**— Այլ կերպ ասած, կարևորը պարտականությունների տարբերակումն է, քանի որ քննարկված խնդիրների վերաբերյալ լայն իրավունքներով ու լիազորություններով են օժտված արհմիությունները, իսկ



կինխորհուրդը հանդես է գալիս միջնորդի դերում՝ ներկայացնելով կանանց շահերը ամենալայն իմաստով:

**Ն. Հ.**— Դա այդպես է, բայց միաժամանակ իրավունք չունենք մի կողմ քաշված մնալ այն դեպքերում, երբ համաձայն չենք դրանց: Մի խոսքով, դա որոշ չափով երկխոսություն է, երբ թե մենք, թե տվյալ դեպքում արհմիությունները «խթանում ենք» մեկս մյուսին, որպեսզի գործը շահի:

Կամ, օրինակ, մեր հարաբերությունները մանկական հիմնադրամի հետ: Բնականաբար, երբ կա երեխաների խնդիրներով զբաղվող հատուկ կազմակերպություն, որն, ի դեպ, ավելի ապահովված, ավելի հարուստ է, քան մենք, ապա այնքան էլ հեշտ չէ որոշել մեր գործունեության ոլորտը այդ առումով: Բայց միաժամանակ անհնար է բաժանել մորն ու երեխային, ուստի ինքնին որոշվում են մեր համատեղ գործունեության շփման կետերը: Այժմ, օրինակ, Աբովյանի շրջանում կառուցվում է մի գյուղ, որը լինելու է, եթե կարելի է այսպես ասել, մանկատան մի հատուկ ձև: Այդ գաղափարի հիմքը շատ գթասիրական է. վեց-յոթ երեխաների հետ ապրելու է «մայրը», (մանկատան աշխատողը), նրանց տրամադրված կլինի իրենց առանձնատունը. իրականացվում է իր միկրոկլիման, հոգսերը և ուրախությունները ունեցող իսկական ընտանեկան օջախ ստեղծելու փորձ: Ահա հենց այստեղ է, որ, մեր կարծիքով, կինխորհուրդները պետք է գործուն օգնություն ցույց տան «մայրերի» ընտրության հարցում, որից, տվյալ դեպքում, մեծապես կախված կլինի նախաձեռնության հաջողությունը: Մի շարք այլ հարցերում ևս մենք համագործակցում ենք մանկական հիմնադրամի հետ:

**Հ. Ա.**— Խորհրդային կանանց կոմիտեն համեմատաբար նոր կազմակերպություն է, որը դեռևս գտնվում է ձևավորման փուլում, ուստի առաջանում են բազում հարցեր նրա իրավական լիազորությունների առումով: Մեր հասարակության մեջ հասունացել են բազմաթիվ խնդիրներ՝ կենսաթոշակով ապահովումը, աղքատության եզրին ապրող անձանց օգնություն ցույց տալը, հոգատարությունը բազմազավակ և ոչ լրիվ ընտանիքների հանդեպ, հարցեր, որոնք ուղղակիորեն առնչվում են կոմիտեի գործունեության հետ: Ի՞նչ կասեիք այս մասին:

**Ն. Հ.**— Ցավոք, այսօր իրավիճակն այնպիսին է, որ կինխորհուրդները, լինեն դրանք շրջանային, քաղաքային, հանրապետական թե միութենական, բոլորն էլ ավելի շատ զբաղված են պրոբլեմների ուսումնասիրմամբ, հարցերի առաջադրմամբ: Մենք չունենք նյութատեխնիկական բազա, այդ մասին խոսել ենք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյում: Իհարկե, դժվար է կանխարկել իրադարձությունները, բայց ես ենթադրում եմ, որ առաջիկա տարիներին պետությունը չի կարողանա լուծել բոլոր այն խնդիրները, որոնք տարիներ շարունակ կուտակվել են մեր հասարակության մեջ: Ուստի, ինձ թվում է, եթե մայրության հիմնադրամը կարողանա իր վրա վերցնել մանկածնության տնտեսական խթանումը և բազմազավակ ընտանիքներին աջակցելու պարտականությունը, որոշ չափով կլուծվի պրոբլեմը: Իսկ միայնակ, զառամյալ կանանց խնամքի և այլ հարցեր առայժմ դժվարլուծելի են: Որքան էլ փորձենք մխիթարել հուսահատության հասած կանանց, որոնք մեր օգնությանն են դիմում, ասենք, այն պատճառով, որ բնակվարձը մուծելու միջոցներ չունեն, մենք առայժմ քիչ բան կարող ենք անել: Փաստորեն մեր ամբողջ փոստը գրեթե բաղկացած է բնակարանային հարցի վերաբերյալ միջնորդություններից: Փոստում կան նաև նամակ-բողոքներ՝ ուղղված վարչական մարմինների դեմ... Ուզում եմ շեշտել, որ եթե նյութական բազա չունենանք իրավաբանական ճանաչման համար՝ սեփական բլանկ, կնիք և բանկում հաշիվ, ապա իրավազոր չենք լինի հարցեր լուծելու: Այդ մասին մենք փաստաթուղթ ենք ներկայացրել հանրապետության Գերագույն խորհուրդ և հույս ունենք, որ այն ըմբռնում կգտնի:

**Հ. Ա.**— Արդի փուլում կանանց գերծանրաբեռնվածությունից ազատելու խնդիրը հասարակության մեջ դրված է այնպիսի սրությամբ, որ այլևս հետաձգում չի հանդուրժում, կինխորհուրդների կողմից սեփական նյութատեխնիկական բազայի ստեղծումը հնարավորություն կընձեռի էապես բարձրացնելու կազմակերպական աշխատանքի մակարդակը և իրականացնելու իրենց վրա դրված պատասխանատու առաքելությունը: Մենք կարծում ենք, որ մեր երկրում ծավալված կոոպերատիվ շարժումը կկարողանար մեծապես աջակցել դրան: Ընդ որում, օգուտն այստեղ երկուստեք է: Չէ՞ որ մեզանում ընդհանրապես վատ է կենցաղսպասարկման գործը, որն, ի դեպ, կոչված է թեթևացնելու կանանց ծանրաբեռնվածությունը: Եվ ահա հենց այստեղ է, որ խորհրդային կանանց կոմիտեի նախաձեռնությամբ կարելի է լայն աշխատանք ծավալել կենցաղում կանանց հոգսերը թեթևացնելու նպատակով: Դրանք են՝ և՛ կիսաֆաբրիկատներ արտադրող կոոպերատիվների, և՛ բազմապիսի լվացքատների, և՛ մի շարք այլ ծառայու-

թյունների ստեղծումը, որոնց անհրաժեշտությունը շատ է զգացվում առօրյա կյանքում:

**Ն. Հ.**— Մենք երազում ենք ստեղծել մեր տնտեսական բազան: Ես կարծում եմ, որ այսօր կկարողանայինք հիմնել տարբեր պրոֆիլի կոոպերատիվներ: Այսպես, հազարավոր կանանց մտահոգում է պոլիկլինիկայից մանկական սնունդը տուն բերելու հարցը: Այն կարելի է լուծել այսպես. կոոպերատիվ հիմունքներով ստեղծել մի կազմակերպություն, որը կունենա 15—20 ավտոմեքենա: Վերջիններս մանկական սնունդը կտանեն հասցեատերերին:

Կամ, օրինակ, ամաններ լվացող մեքենայի արտադրությունը: Չէ՞ որ երկրի գիտատեխնիկական հսկայական պոտենցիալի պայմաններում պարզապես ամոթ է նման մեքենաներով չապահովել մեր կանանց: Այժմ փնտրում ենք արտասահմանյան այնպիսի մի գործընկեր, որը կկարգավորեր այդպիսի մեքենաների թողարկումը մեզ մոտ, ընդ որում մեր նախագահությունը մտադիր է միջնորդելու, որ տվյալ դեպքում արտադրությունը չհարկվի, իսկ ձեռնարկությունից ստացվող շահույթը մնա հանրապետական կինխորհրդի բյուջեում: Ցանկանում ենք ունենալ փոքր կենցաղային տեխնիկա, փափագում ենք ստեղծել այնպիսի ծառայություններ, որոնք կօգնեին կանանց արագ ու համեղ ճաշատեսակներով կերակրել ընտանիքը: Մտադիր ենք զարգացնել լվացքատների մի ցանց, ուր մաքրության ու կարգապահության նկատմամբ մեծ պահանջկոտությամբ աչքի ընկնող հայ կանայք հանգիստ խղճով կարողանային հանձնել տան սպիտակեղենը...

**Հ. Ա.**— Զրուցելիս մեր ուշադրությունը կենտրոնացրինք կինխորհուրդների իրավունքների քննարկման վրա, բազմազավակ, ոչ լրիվ և սակավ ապահովված ընտանիքներին, ինչպես նաև գիշերային ժամերին աշխատելու հարկադրված կանանց օգնություն ցույց տալու հարցերին: Դրանք, անկասկած, ամենասուր, հիվանդագին պրոբլեմներն են: Բայց չէ՞ որ նույնիսկ, այսպես ասած, բարեհաջող ընտանիքներում «կանանց» պրոբլեմները չեն վերանում: Մեզանից յուրաքանչյուրի համար ակնհայտ է ժամանակակից կանանց հոգեբանական-ֆիզիկական գերլարվածությունը, գիտենք, որ նրանց ուսերին է ընկած ընտանիքի հիմնական ծանրությունը, որ նրանք և՛ ստիպված են, և՛ ցանկանում են աշխատել, բարձրանալ ծառայողական սանդղակով: Եվ գաղտնիք չէ, որ այդ երկու ոլորտներում էլ սեռերի իսկական իրավահավասարության սկզբունքը մեծապես խախտված է: Առաջին դեպքում կանանց ուսերին է ընկած, թերևս, հիմնական պատասխանատվությունն ընտանիքի նորմալ կյանքի համար, իսկ երկրորդ դեպքում՝ ոտնահարվում են նրանց ծառայողական շահերը: Կրթական և մտավոր հավասար տվյալների դեպքում էլ առաջնությունն աշխատանքում գրեթե միշտ տրվում է տղամարդկանց: Միջին օղակի ղեկավար պաշտոններում բարձրագույն կամ միջնակարգ-մասնագիտական կրթություն ունեցող կանայք կազմում են 7 տոկոս (տղամարդիկ՝ 18), իսկ իշխանության ամենաբարձր ատյաններում կանայք գրեթե չկան: ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում, ինչպես հիշում եք, Զ. Պուխովան նշեց, որ կին ժողովրդական դեպուտատները կազմում են ընդամենը 17 տոկոս:

**Ն. Հ.**— Անվիճելի է, որ կանանց հոգսերը անչափ շատ են: Եվ այդ իմաստով ժամանակն է, որ կինխորհուրդները «SOS» բացականչեն: Մեր հասարակությունը, չվախենանք ասել, խիստ վարակված է ընչաքաղցությամբ: Իրերը կուռքի են վերածվում ոչ միայն այնտեղ, որտեղ դժվարությամբ են ձեռք բերվում, այլև այնտեղ, որտեղ դրանք լիուլի բավարարում են... Ինձ թվում է, ինչ-որ ժամանակ մենք աչքաթող ենք արել դաստիարակության գործը, գուցե, հենց այդ պատճառով էլ այսօր առանձնապես կարևոր է, որ ողջ հասարակությամբ շրջվենք դեպի այդ պրոբլեմը: Մենք ասում ենք, որ բարեհաջող ընտանիքներում նույնպես կան շատ դժվարություններ, սակայն փոքր ինչ այլ գունավորումներով: Հաճախ դրանք բնորոշ են այն ընտանիքներին, որտեղ մեծացել են մանկամիտ մարդիկ, որոնց համար ամեն ինչ պատրաստի է եղել: Հասկանալի է, որ այդպիսիները պարտքի ու պատասխանատվության զգացում չունեն հասարակության և ընտանիքի հանդեպ:

Հայտնի է, որ աշխատանքային դաստիարակությունը հսկայական դեր է խաղում անձի ձևավորման գործում: Բայց ոչ պակաս կարևոր նշանակություն ունի նաև մայրերի գիտակցականության աստիճանի բարձրացումը, քանի որ հիմնականում նրանց է վիճակված զբաղվելու երեխաներով: Իհարկե, ես հեռու եմ դաստիարակության բոլոր պրոբլեմները նույն գծի վրա դնելու մտքից: Երկրում աճող յուրաքանչյուր քաղաքացու համար պատասխանատու է նաև ամբողջ հասարակությունը: Բայց տվյալ դեպքում մենք խոսում ենք մեր, կինխորհուրդների ազդեցության ոլորտի մասին: Դաստիարակությունը, դժբախտաբար, որոշ իմաստով, ընթացել է արգելքների ու ճնշման ուղիով (չվերցնե՛ս, չգնա՛ս, այդտեղ չդնե՛ս և այլն) և այդ դեպքում երեխայի և անգամ դեռահասի անձը հաճախ կարծես անտեսվել է:



Իհարկե, ընտանիքում գոյություն ունեն իրավահավասարության և երեխայի համար պատասխանատվության սկզբունքներ: Բայց, խոսելով այդ մասին, չպետք է մոռանանք նաև ընտանեկան հարաբերություններում սեռերի հոգեբանության, ազգային առանձնահատկությունները: Այսպես, օրինակ, կինխորհուրդների խնդիրներից մեկը մենք համարում ենք հետևյալը. ճշտել, թե հանրապետության կանանց քանի տոկոսը կցանկանար իրեն նվիրել զուտ ընտանիքին, երեխաների դաստիարակությանը՝ որոշակի (թող նույնիսկ ոչ մեծ) նյութական ապահովությամբ, քանի տոկոսը իրենց կյանքը չեն պատկերացնում առանց աշխատանքի ու պրոֆեսիոնալ զարգացման, քանի տոկոսն է ձգտում իրեն նվիրել հասարակական-քաղաքական գործունեության... Եվ ահա միայն այդ ժամանակ, անցկացնելով այդ շերտավորումը, մենք կկարողանայինք որոշել, թե գործնականորեն ինչպես օգնենք կանանց: Ես անձամբ դեմ եմ վերացականորեն ըմբռնվող հավասարությանը, որն ընկալվում է որպես պարտականությունների կատարյալ բաժանում: Դեմ եմ այն բանին, որ կանայք տրտնջան, թե ամուսինները իրենց հետ հավասար չեն կատարում տնային գործերը (լվացքը, արդուկը, կերակրի պատրաստումը և այլն), մշտական անհամերաշխություն սերմանելով ընտանիքում:

**Հ. Ա.**— Իրոք, չի կարելի բոլորովին հաշվի չառնել զուտ ազգային հոգեբանությունը, ընտանեկան հարաբերությունների ազգային իդեալները: Չէ՞ որ ընտանիքի ղեկավարի իդեալը մեզ՝ հայերիս համար, իսկ նկատի ունենալով նաև այն, որ մի քանի սերունդ ապրում են նույն հարկի տակ, նաև, այսպես ասած, ողջ տոհմի ղեկավարի իդեալը, բնութագրվում է ամբողջ «գերդաստանի» համար եղած պատասխանատվությամբ: Եվ իրավահավասարությունը տվյալ դեպքում թերևս չի կարելի բառացիորեն հասկանալ, այլ միայն ժամանակակից խորհրդային կնոջ սոցիալական կարգավիճակի որոշման համատեքստում:

**Ն. Հ.**— Ինձ թվում է, մեզանում առկա է տղամարդու եսասիրության պարագան: Տղամարդիկ իրենց համար մշակել են կնոջ մի որոշակի կերպար և չեն ցանկանում տեսնել փոփոխված իրավիճակը. վիճակագրությունը վկայում է, որ կանայք հասարակության ամենից շատ կարդացող մասն են, նրանց մեջ ավելի շատ են բարձրագույն կրթություն ունեցող մասնագետները, կանայք ավելի հետևողական են նորամուծությունների որոնման ու ընկալման նկատմամբ և այլն: Իսկ տղամարդիկ, մեկ անգամ վարժվելով լվացք անող, հավաքող, ճաշ պատրաստող կնոջ հաստատված «իդեալին», որն իր վրա է վերցրել նաև երեխաների դաստիարակության պատասխանատվությունը, կարծես մի տեսակ ինքնամփոփվել են: Չէ՞ որ դա նույնքան լուրջ պրոբլեմ է՝ տղամարդուն վերադարձնել հայրությունը:

**Հ. Ա.**— Ընտանիքում սեռերի հավասարության, երեխաների դաստիարակության հարցերում բաժանված պատասխանատվության հարցը խիստ ձևախեղված է: Եվ ահա ևս մի նոր լուրջ պրոբլեմ ժամանակակից ընտանիքում. հայրը հիմնականում ընկալվում է որպես գոյության միջոցներ հայթայթող և շատ անգամ դրանով էլ չափվում ու որոշվում է նրա մասնակցությունը ընտանիքի պրոբլեմների լուծմանը:

**Ն. Հ.**— Հոգեբանական և սոցիալական բոլոր նրբերանգներով հանդերձ, այսօր մենք ունենք տղամարդկանց եսասիրության այնպիսի մի աստիճան, երբ նույնիսկ զուտ, կանացի արտադրություններում դիրեկտորը տղամարդ է, արհմիության նախագահը՝ տղամարդ, կուսկոմիտեի քարտուղարը՝ նույնպես տղամարդ: Մի անգամ այդ առիթով ստիպված եմ եղել ասելու, թե մնում է, որ կինխորհրդի նախագահ ևս ընտրենք տղամարդու, այդ դեպքում իրավահավասարության բոլոր հարցերը կարելի է լուծված համարել...

Այսօր անհրաժեշտ է ստեղծել կանանց մասին գիտելիքների մի հանրագումար, որը մեզ բանալի կտար որոշելու, թե որտեղ են գեղեցիկ սեռի այն ներկայացուցիչները, որոնք կարող են լինել տնօրեններ, մինիստրներ, կուսակցական գործիչներ և այլն: Չէ՞ որ, եթե այդ պրոբլեմների միագումարը համեմատենք բուրգի հետ, ապա դրա հիմքում կին բնակչության 51 տոկոսն է ընդհանրապես, դրանից քիչ բարձր՝ 47,6 տոկոսը (մեր հանրապետության համար)՝ աշխատող կանայք, իսկ որքան ավելի ենք մոտենում բուրգի գագաթին, այդ ներկայացուցչությունն ավելի ու ավելի շեշտակիորեն է պակասում:

Վերջին ընտրություններում մենք, կինխորհուրդներս, կատարյալ ձախողում կրե-

ցինք: Մեզ հետ վարվեցին մոտավորապես այնպես, ինչպես փոքրիկ երեխայի հետ, որի ձեռքն են տալիս մի պսպղուն իր, խլելով նրա համար կարևոր ու պետքական խաղալիքը, և որ նա այդ արտաքուստ խաբուսիկ փայլի հետևում չի կարող միանգամից հասկանալ, թե ինչ տեղի ունեցավ: Մեզ տվեցին 75 մանդատ, և մենք անչափ հրապուրվեցինք այդ թվով, իսկ արդյունքում կորցրինք ընտրական օկրուգներն ու կանանց թեկնածությունները: Այսպես, մենք կազմում էինք բոլոր ընտրվողների 30 տոկոսը, բայց մանդատների գրեթե կեսը կորցնելուց հետո կանանց ֆրակցիան կազմեց ընդամենը 17 տոկոս: Դա մեզ զգաստացրեց, ու սկսեցինք նախօրոք պատրաստվել տեղական խորհուրդների ընտրություններին: Եթե կինխորհուրդները չգիտակցեն յուրաքանչյուր դեպուտատական տեղի համար մրցապայքարի անհրաժեշտությունը, մենք շատ բան կկորցնենք:

Քննարկվող պրոբլեմատիկայի մի կողմ ևս՝ ներկայացուցչությունը իշխանության ատյաններում: Երկար տարիներ կանանց առաջ քաշելու կուսակցական քաղաքականությունը հիմնված է եղել գերազանցապես անկետային տվյալների վրա (դա բացառություն չի եղել միայն կանանց համար, բայց այստեղ դա արտահայտվել է առանձնապես), կանայք քիչ են ընդգրկվել և հաճախ կին բնակչության ոչ լավագույն ներկայացուցիչները: Պաշտոնավարել են համապատասխան պատրաստականություն չունեցող անձինք: Այդ հանգամանքը որոշ չափով ազդել էր նաև հասարակական գործիչ կանանց մասին եղած պատկերացումների վրա՝ իբրև քաղաքական-սոցիալական առումով թույլ պատրաստված գործիչների: Բանն այն է, որ հասարակականորեն ակտիվ, քաղաքականապես հասուն, մտավորապես զարգացած շատ ու շատ կանայք չէին նկատվում և առաջ չէին քաշվում: Մեզանում ծավալված էկոլոգիական պայքարը, իսկ այնուհետև նաև ղարաբաղյան շարժումը, որոնք ուժգնորեն խթանեցին ազգային ինքնագիտակցության զարթոնքը, բացահայտեցին գեղեցիկ սեռի բազմաթիվ ներկայացուցիչների: Նրանք աչքի են ընկնում քաղաքական, սոցիալական և քաղաքացիական բարձր հատկանիշներով:

**Հ. Ա.**— Աշխատող կանանց համար օրախնդիր պրոբլեմներից բացի, այսօր ծառացել է կենսական մի խնդիր ևս՝ տնային տնտեսուհիների աշխատանքի գնահատումը, նրանց հասարակական դիրքի որոշումը: Հաճախ ենք խոսում այն մասին, որ հարկավոր է տնային տնտեսուհիներին ավելի լայնորեն ներգրավել հասարակական գործունեության մեջ: Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, նրանք բավականին ակտիվ ու գործունյա մի միջնախավ են, որոնք ակտիվորեն արձագանքում են հասարակության կարիքներին: Այստեղ է թաքնված նաև իրենց ընտանիքին, ընտանեկան օջախին լիովին նվիրված կանանց սոցիալական պաշտպանվածության ասպեկտներից մեկը: Գաղտնիք չէ, որ կանանցից շատերը «կհեռանային» կրկնակի ծանրաբեռնվածությունից և կզբաղվեին բացառապես մայրությամբ, եթե համոզված լինեին, որ կունենան երաշխավորված կենսաթոշակ:

**Ն. Հ.**— Իրավահավասարությունը իրոք պետք է առաջին հերթին ենթադրի հավասարություն սոցիալական կարգավիճակում: Այն կինը, որ նստած է տանը, զբաղվում է երեխաների դաստիարակությամբ, որպեսզի աճեցնի լիարժեք քաղաքացիներ, և միաժամանակ զբաղվում է տնային տնտեսությամբ, իսկ դա բավականին ծանր գործ է, պետք է համոզված լինի, որ իր համար ևս երաշխավորված են բոլոր այն իրավունքները, որոնցով ապահովված է աշխատող կինը: Եվ, մասնավորապես, տնային տնտեսուհիներին կենսաթոշակ կամ նպաստներ տալու հարցը կինխորհուրդների գործունեության կարևորագույն կողմերից մեկն է: Այժմ մենք աշխատում ենք, որպեսզի ստեղծենք Հայաստանի տնային տնտեսուհիների միություն, որն զբաղվելու է նրանց հոգսերով ու պրոբլեմներով: 1988 թվականին մեր գլխին եկած սարսափելի աղետը ցույց տվեց, որ տնային տնտեսուհիները բավականին շարժուն սոցիալական խումբ են, որոնք ցուցաբերեցին բացառիկ ակտիվություն և խանդավառություն: Երբ այդ ծանրագույն օրերին մենք դիմեցինք նրանց՝ խնդրելով վիրակապեր պատրաստել աղետի գոտու համար, միայն մեկ օրում ստացանք 5000 վիրակապ: Կարծում եմ, որ տնային տնտեսուհիների խորհրդի ստեղծումը մեծապես կբարձրացնի նրանց սոցիալական ակտիվությունը և միաժամանակ հնարավորություն կընձեռի կանանց այդ խմբին համատեղ քննարկելու իրենց պրոբլեմները և դրանք ներկայացնելու հասարակությանը, չսպասելով, թե, վերջապես, երբ կհիշեն իրենց:

**Հ. Ա.**— Ինչի մասին էլ որ այսօր խոսելու լինենք, անպայման հիշում ենք այն սարսափելի դժբախտությունը, որ մեր ժողովրդին բաժին ընկավ 1988 թվականի դեկտեմբերին: Աղետալի երկրաշարժը խլեց տասնյակ հազարավոր մարդկանց կյանք, իսկ փրկվածներից շատերին դատապարտեց ծանր փորձությունների՝ զրկելով հարազատ տնից, կյանքի սովորական շավղից: Ոչ պակաս սարսափելի աղետը, որի անունն է «սումգայիթ» և «բաքու», ստիպեց հազարավոր հայ ընտանիքների թողնել իրենց օջախները, փախչել Հայաստան: Այսօր հայրենիք ներգաղթած հայերի պրոբլեմը դրված է առանձնապես սուր. անհրաժեշտ է մարդկանց ապահովել և՛ բնակարանով, և՛ աշխատանքով:

**Ն. Հ.**— Հանրապետությունն ընկել է շատ դժվարին դրության մեջ, անօթևան են մնացել ավելի քան 700 հազար մարդ՝ երկրաշարժից տուժածներ և փախստականներ: Իհարկե, կինխորհուրդները փորձում են ինչ-որ կերպ օգնել դիմող կանանց, զանգահարում ենք վերադաս ատյաններին, միջնորդում, տեղավորում... Բայց պրոբլեմներն անչափ շատ են, միանգամից հնարավոր չէ դրանք լուծել:

Ահա, օրինակ, ամենակարևոր հարցը՝ բնակարանային պրոբլեմը: Չէ՞ որ Ամասիայում մնացել են բազմաթիվ լքված գյուղեր: Թվում էր, որ անհրաժեշտ է պարզապես բնակություն հաստատել և մշակել հողը: Բայց ստեղծված դրության բարդությունը սաստկանում է նրանով, որ մեկնել են գյուղական աշխատանքով զբաղված մարդիկ, եկել՝ մտավորականներ: Իսկ չէ՞ որ մեր հանրապետությունում կա սեփական մտավորականության գերարտադրություն: Ակնհայտ է, որ հարկավոր է մշակել ինչ-որ խելացի մոտեցումներ փախստականներին տեղավորելու համար, որպեսզի չոտնահարվեն հանրապետության բնակչության այս կամ այն խավի շահերն ու ակնկալությունները: Այդ պրոբլեմն, իրոք, սուր է դրված, և դրա լուծման գործում մեր լուման ներդնելու համար մենք համագործակցում ենք նոր հասարակական կազմակերպության՝ փախստականների կոմիտեի հետ: Այսպես, սումգայիթյան համայնքի ներկայացուցիչները, որոնք ստեղծել են իրենց ընկերությունը, եկան մեզ մոտ: Մենք աշխատեցինք աջակցել նրանց հուզող հարցերի լուծմանը, համայնքի մեծ մասն արդեն ապահովված է բնակարանով, շատերը կառուցում են անհատական տներ և այլն:

Կարծում եմ, որ այդպիսի բարդ պրոբլեմը կարող է լուծվել միայն կառավարական մակարդակով: Մենք՝ կինխորհուրդներս, մեր խնդիրն ենք համարում ներգաղթած հայրենակիցներին օգնություն ցույց տալ հայրենիքի կյանքի պայմաններին ընտելանալու գործում: Չէ՞ որ նրանցից շատերը նույնիսկ չգիտեն մայրենի լեզուն: Ահա Արարատի շրջանի կինխորհուրդը հանդես է եկել մի հիանալի նախաձեռնությամբ՝ ստեղծել են հայոց լեզուն ուսումնասիրելու երեկոյան դասընթացներ, դասախոսություններ են կարդում Հայաստանի պատմության մասին, մի խոսքով, օգնում են հայերի հայացմանը: Հարկավոր է հանրապետության նոր բնակիչներին շրջապատել հատուկ ուշադրությամբ, հոգատարությամբ, որպեսզի հնարավորին չափ արագ դուրս բերենք նրանց հուսահատական վիճակից...

**Հ. Ա.**— Այսպես կոչված «կանանց հարցը» ունի շատ կողմեր, նրանում գումարվում են ռեգիոնալ, ազգային, սոցիալական և այլ պրոբլեմների տարբեր ասպեկտները: Եվ այդ գործոնների համեմատ էլ ձևավորվում են տարբերակված շահեր, կենցաղային տարբերություններ, ապրելակերպի, վարվելակերպի յուրահատկություններ... Օրինակ, մեզ բոլորիս համար հասկանալի է, որ հայ կանանց համար, որքան էլ ժամանակակից լինեն նրանք, գլխավորը տունն է, օջախը, ընտանիքը, երեխաները: Ուստի ցանկալի կլիներ, որ կանանց հանրապետական խորհրդում մշակվեր գուցե երկարաժամկետ մի ծրագիր, որն ուղղված լիներ տնային աշխատանքում, ամբողջ ընտանեկան կյանքում նրանց գործուն օգնություն ցույց տալու նպատակին:

Երեխայի ծնունդը, նրա դաստիարակությունը... Այստեղ ամեն մի կին պետք է վստահ լինի, որ պետությունը պաշտպան է կանգնած իր և իր երեխաների շահերին:

**Ն. Հ.**— Մենք ձեռնամուխ ենք լինում «Կինը Հայկական ԽՍՀ-ում» կոմպլեքսային ծրագրի մշակմանը, որի նախագիծն արժանացել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հավանությանը: Օգտվելով օրենսդրական նախաձեռնության մեր իրավունքից, մտադիր ենք մեր ծրագիրը ներկայացնել լայն քննարկման: Դժբախտաբար, խորհրդային իշխանության անցած տարիներին մինչև վերջ գիտակցված չեն եղել կանանց պրոբլեմների բոլոր կողմերը: Այժմ պլանավորում ենք անցկացնել լայն մասշտաբի սոցիոլոգիական հետազոտություն, որի նպատակն է հանրապետության կանանց մասին լիագումար տվյալներ հավաքելը, ինչի մասին մենք ձեզ հետ արդեն մասամբ խոսեցինք:

**Հ. Ա.**— Այդպիսի կոմպլեքսային ծրա-

գրի մշակումն ու գործարկումը կնպաստեն բոլոր այն պրոբլեմների լուծմանը, որոնք մեր հասարակության մեջ հասունացել են: Դրանով կանայք հնարավորություն կունենան ավելի ակտիվորեն մասնակցելու հանրային արտադրությանը, հասարակական, գիտական ու մշակութային գործունեությանը:

Ն. Հ.— Մենք խորապես գիտակցում ենք պատասխանատվության այն չափը, որ ընկնում է կանանց խորհրդի ուսերին: Ճիշտ է, դեռևս ամեն ինչ չէ, որ հաջողվում է լրիվ չափով իրականացնել կազմակերպական տեսակետից: Կինխորհուրդները պետք է ծավալեն լիարյուն գործունեություն: Նրանք արդեն վեց հազարից ավելի են, բայց աշխատանքում զգացվում է ծրագրեր կազմելու որոշ միտում: Իսկ ինչից է առաջանում դա: Մեր աշխատանքում հաճախ հաշվի չի առնվում այս կամ այն խմբային շահերի յուրահատկությունը: Պատկերավոր ասած, կանանց շարժման մեջ կա ուղղահայաց, բայց չկա հորիզոնական: Եվ հիմա մենք փորձում ենք ստեղծել կանանց խորհուրդներ պրոֆեսիոնալ կամ ճյուղային հատկանիշներով՝ թեթև արդյունաբերության մեջ աշխատող կանանց, իրավաբան կանանց, լրագրող կանանց միություններ և այլն: Ենթադրում ենք ստեղծել այնպիսի մի կառուցվածք, որը նոր ստեղծված միությունների նախագահներին կընդգրկի կանանց հայկական հանրապետական խորհրդի նախագահության կազմի մեջ, ինչը հնարավորություն կընձեռի անցկացնելու կոնստրուկտիվ երկխոսություն, խորհրդակցելու, համատեղ լուծելու մեր բոլոր կենսաթրթիռ հարցերը:

# ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶԸ՝ ՈՒՐԱԽՈՒԹՅԱՆ ՕՋԱԽ

**Ա. ՀՈՎՆԱՆՅԱՆ**

Դեռևս 1927 թվականին մայր հայրենիք ներգաղթած սեբաստացի մի քանի ընտանիքներ դիմեցին Խորհրդային Հայաստանի կառավարությանը՝ խնդրելով հող հատկացնել իրենց, պայմաններ ստեղծել մետաքսի արտադրություն հիմնելու համար: Երևանի ներկայիս Շահումյանի շրջանը, որ հարուստ էր թթենու այգիներով, հիշեցնում էր հայրենի Սեբաստիայի թթաստանները: Եվ ահա այստեղ էլ, ուր բնական մետաքս ստանալու հնարավորությունները մեծ էին, սկսվում է շերամի արտադրությունը: Դրվում են նոր Սեբաստիա թաղամասի հիմքերը, ստեղծվում է բոժոժի փոքրիկ արտադրամաս: Սեբաստացիները, տնավորվելով հայրենիքում, շարունակում են իրենց ավանդական արհեստը՝ շերամագործությունը և շուտով մետաքսե աբրեշումե թելերի արտադրությամբ շարունակում բազմաշնորհ վարպետների ընդհատված փառքը:

Փոքրիկ արտադրամասն ընդլայնվում է, դառնում ֆաբրիկա, ծնվում է մանկապարտեզ, դպրոց ունենալու պահանջը, նույնպիսի մի մանկապարտեզի, դպրոցի, ինչպիսին էր Արամյան վարժարանը, Մանյա վարժուհու մանկապարտեզը: Չէ՞ որ այս հողում արդեն սերունդները պետք է շարունակեին ապրել, նրանց նոր պատմության ծառը այստեղ էր արմատներ գցելու, ընձյուղվելու:

Սեբաստացի տիկին Մարիցան սիրով համաձայնվում է խնամել երեխաներին մինչ ծնողները կաշխատեն: Մի անշուք շինության մեջ, սուղ պայմաններում նա հազիվ կարողանում է պահել երկու խումբ: 1932 թվականն էր:

Այսօր մայրաքաղաքի Սեբաստիա փողոցի բնակիչները, և ոչ միայն նրանք, անտարբեր չեն կարողանում անցնել «Սեբաստիա» մսուր-մանկապարտեզի մոտով: Ով գեթ մեկ անգամ ոտք է դնում մանկապարտեզ, դառնում է այդ համերաշխ կոլեկտիվի և փոքրիկների բարեկամը:

Մտնենք և մենք:

Ամառվանից սկսված շինարարական աշխատանքները դեռ չեն ավարտվել, մանուկները զբոսնելիս, խաղալիս հաջողությամբ հաղթահարում են շինանյութերի կույտերը, ջրափոսերը: «Ստիպված էլի պետք է դիմենք ծնողների օգնությանը,— ասում է վերջին 35 տարիների անփոփոխ տնօրեն, վաստակավոր մանկավարժ Վերոնիկա Գևորգյանը:— Կոլեկտիվի և ծնողների համագործակցության բավական փորձ ունենք արդեն»:

— Երբ 54 թվականին ընդունեցի մանկապարտեզը,— շարունակում է նա,— պայմանները շատ խղճուկ էին, չկար կոմունալ ոչ մի հարմարություն: Բակում կառուցեցինք խոհանոց, ջուր անցկացրինք, նույնիսկ կոյուղի չկար՝ կառուցեցինք: Կարճ ժամկետում 2 խմբից հասանք 8-ի, կարողացանք ավելի շատ մանուկներ ընդգրկել: Իսկ հետո... անցանք նոր շենքի շինարարությանը:

Երկու-երեք հարյուր դիմում էր կուտակվել՝ նախատեսվածից բավական շատ: Նախապատվությունը տրվեց սեբաստացիների ընտանիքներին, բացիկներով տեղեկացվեցին ծնողները, որ իրենց երեխաներն ընդունվել են, իսկ իրենք հրավիրվում են ծնողական անդրանիկ ժողովի: Օրակարգում մի հարց է՝ բարեկարգել մանկապարտեզը: Տնօրենի նախաձեռնությամբ այդ աշխատանքներին ներգրավվում են նաև շրջակա շենքերի պատանիներն ու աղջիկները, «Աստրո» արտադրական միավորման աշխատակիցները, որոնցից շատերը նաև մանկապարտեզի երեխաների ծնողներն են: Ծնվում է մի համագործակցություն ևս. «Աստրոն» դառնում է մսուր-մանկապարտեզի շեֆ կազմակերպությունը: Այդուհետ ոչ մի միջոցառում, շաբաթօրյակ, էքսկուրսիա չի անցնում առանց միավորման օգնության և մասնակցության: Միահամուռ ուժերով տարածքը մաքրվում է, անցուղիները ծառապատվում են, ծաղկազարդվում, կանաչապատվում. մանկապարտեզը պատրաստվում է ընդունել իր սաներին: Այդ տարիներին դեռևս մեր երեխաներն այնքան էլ լավ չէին հագնվում, և տիկին Վերոնիկան որոշում է բացման առիթով Մոսկվայից սեփական միջոցներով միանման հագուստ բերել և նվիրել մանուկներին:

Ահա բաղձալի օրը. 1966 թվականի հունիսի 15-ին նորակառույց, գեղեցիկ ու հարմարավետ երկհարկանի մանկապարտեզը իր դռներն է բացում մանուկների առջև: Լուսավոր ու ընդարձակ ննջասենյակներ, մայրենի լեզվի և կերպ-

---

*ՀՈՎՆԱՆՅԱՆ ԱՐԴԱ ՕԳՍԵՆԻ— ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ*

և թունաքիմիկատ: Միայն Հայաստանում 1988 թ. օգտագործվել է 280—300 հազար տոննա պարարտանյութ և 9 հազար տոննա թունաքիմիկատ: Դրանց մեջ պարունակվող քիմիական նյութերի մի մասը մակերեսային և ներհողային հոսքերի միջոցով թափանցում է ջրային օբյեկտներն ու աղտոտում միջավայրը:

Ջրային ավազանները ագրոքիմիկատներից զերծ պահելու նպատակով մշակվել են մի շարք միջոցառումներ, որոնցից ամենաարդյունավետը ջրհավաք վայրերի շուրջը անտառապաշտպան գոտիների ստեղծումն է: Անտառը բնական համալիրներից միակն է, որն ընդգրկում է կարգավորիչ այնպիսի բաղադրիչների համակարգ, ինչպիսիք են ջուրը, օդը և հողը: Անփոխարինելի է նրա դերը մթնոլորտի, ջրի և հողի փոխազդեցության ու դրանց քանակական և որակական պարամետրերի կայունացման գործում:

Անտառային տնկարկները մակերեսային ջրերը մաքրում են ինչպես պարարտանյութերից, այնպես էլ թունաքիմիկատներից: Ուստի բոլոր այն ջրային օբյեկտները, որոնց շրջակայքում կան գյուղատնտեսական հանդակներ, պետք է շրջապատել անտառային պաշտպանական գոտիներով, որոնք յուրահատուկ կենսաբանական արգելապատ կհանդիսանան շրջակա միջավայրի անաղարտությունը պահպանելու համար:

***

Մարդու ոչ խելամիտ գործունեության հետևանքով վերջին հարյուրամյակում կենդանի բնությունը նկատելիորեն աղքատացել է, անհետացել են հարյուրավոր բույսեր և կենդանիներ, վտանգի տակ է բազմաթիվ այլ տեսակների ճակատագիրը: Այս ամենը պարտավորեցնում է շտապ միջոցներ ձեռնարկել անհետացող բույսերի և կենդանիների արհեստական բազմացման և խնամքի համար: Մեր հանրապետությունում այդ աշխատանքը պայմանավորված է առնվազն երկու խումբ գործոններով: Առաջինը տեսակների մեծ բազմազանությունն է փոքր տարածքի վրա և, այդ պատճառով, նրանցից յուրաքանչյուրի համեմատաբար նվազ քանակական կազմը: Այսպես, Հայաստանում կա 200 ընտանիքի պատկանող ավելի քան 3.200 բուսատեսակ, ընդ որում, դրանցից շատերը յուրահատուկ են միայն հանրապետության ֆլորային: Երկրորդ գործոնը բնակչության հարաբերական բարձր խտությունն է: Այն պարտադրում է, եթե կարելի է այսպես ասել, կենսաբանական, էկոլոգիական հասուն մտածելակերպ: Ընդհանրապես, այսօրվա մարդուն պարզապես անհրաժեշտ են բարձր կուլտուրա ու գիտակից վերաբերմունք նաև տվյալ բնագավառում: Ժամանակն է մշակել բնությունից օգտվելու կարգուկանոն, բնավորություն: Միթե զգաստացուցիչ չէ այն փաստը, որ ըստ բուսաբանների ստույգ տվյալների, մեր հանրապետության բուսածածկի տեսակներից 470-ը այսօր արդեն պահպանության կարիք է զգում: Թե Հայաստանի համար որքան մեծ թիվ է դա, կարելի է ցույց տալ հետևյալ օրինակով: Բարձրակարգ բույսերի 3.200 տեսակներից մոտ 1.000-ը օժտված է բուժիչ հատկություններով: Ստացվում է, որ այդ հազարից 386-ը շատ մոտ ապագայում այլևս անհնար կլինի գտնել մեր տարածքում: Ավելին, Հայաստանում աճող բույսերի զգալի մասը էնդեմիկ է, դրանք ուրիշ ոչ մի տեղ չեն աճում: Այստեղից էլ՝ դրանց պաշտպանության կարևորությունը:

Մեզանում շատ բույսեր օգտագործվում են սննդի մեջ, ինչպես նաև դեկորատիվ և տեխնիկական նպատակներով: Դրանց անփույթ հավաքումը հանգեցնում է տեսականու կտրուկ կրճատման, երբեմն նույնիսկ անհետացման: Բուսական աշխարհը կենդանի բնության առաջնային ու հիմնարար օղակն է, և նրա տեսակների գենոֆոնդի պահպանումը բնության պահպանության կարևորագույն ու հրատապ պրոբլեմներից է:

Ներկայումս աշխարհում գոյություն ունեցող շուրջ 250 հազար բարձրակարգ բույսերից խնամքի ու պահպանության կարիք է զգում ավելի քան 20 հազարը: Բնության պահպանության միջազգային կազմակերպության կարմիր գրքում գրանցված է ոչնչացման եզրին գտնվող 950 բուսատեսակ: Եվրոպայում գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, թունաքիմիկատների մասսայական կիրառման, ինչպես նաև տուրիզմի ծավալուն զարգացման հետևանքով վերջին 50 տարիների ընթացքում բուսական աշխարհից անհետացել է այդ մայրցամաքի բուսատեսակների 10 և ոչնչացման եզրին է գրեթե 25 տոկոսը: ԽՍՀՄ-ում վտանգի տակ է շուրջ 2.000 բուսատեսակ: Երկարամյա ուսումնասիրություններով պարզվել է, որ մեր երկրում ամենից շատ տուժել են Կովկասի, ինչպես նաև Ղրիմի, Ուկրաինայի, Մոլդավիայի համեմատաբար բազմազան ու ինքնատիպ ֆլորաները:



Ոչ պակաս վտանգ է սպառնում մշակովի բույսերի վայրի ցեղակիցներին, որոնց նկատմամբ մարդու հետաքրքրությունը հասկանալի պատճառներով ավելի անմիջական է ու կոնկրետ: Նույնիսկ մշակովի բույսերի ծագման կենտրոնները, որտեղ պատմականորեն գոյացել և պահպանվում են մեծ քանակությամբ միայն տվյալ վայրերին հատուկ, էնդեմիկ տեսակներ, չխուսափեցին տնտեսական յուրացման հետևանքներից: Այսպես, օրինակ, Հայաստանում աստիճանաբար վերանում է պտղատու տեսակների սորտային հոյակապ բազմազանությունը, որը ձևավորվել էր հազարամյակների ընթացքում: Նման վիճակում են նաև հացազգիների, հատկապես ցորենի, գարու և աշորայի վայրի ցեղակիցները, բանջարաբոստանային մի շարք կուլտուրաներ (դդմիկ, սեխ, ձմերուկ):

Որոշ ստանդարտ սորտերի միակողմանիորեն գերապատվություն տալը էապես աղքատացնում է մշակովի բույսերի ընդհանրական գենոֆոնդը, ժամանակակից երկրագործության գենետիկական բազան: Այսպես, օրինակ, հանրապետության աշնանացան տարածությունների 85 տոկոսի վրա աճեցվում է 2 սորտ, ընդ որում, ցանքերի գերակշռող մասը զբաղեցնում է «Բեզոստայա—1»-ը: Գարնանացան ցորենի ամբողջ բերքի 90 տոկոսը ապահովում է 1 սորտ («Նոտունս տեղականը»), իսկ կորնգանի և առվույտի բերքը՝ մեկից երկուսը: Մեծ տարածությունների վրա փոքրաթիվ ստանդարտ սորտերի առկայությունը, տեղական պայմաններին հարմարված տարատեսակների ու պոպուլյացիաների կորուստը, մոնոկուլտուրաները և այս բոլորի հետևանքով գենետիկական բազայի աղքատացումը անխուսափելիորեն հանգեցնում են անբարենպաստ պայմանների նկատմամբ դիմացկունության անկման: Այսպես, օրինակ, 1988 թ. հանրապետության կարտոֆիլի և եգիպտացորենի զգալի ցանքատարածություններ աղետալի չափերով տուժեցին հիվանդություններից: Առանձին շրջաններում կարտոֆիլի բերքի կորուստները կազմեցին 80—100 տոկոս (Կամո, Կրասնոսելսկ): Կրասնոսելսկի շրջկենտրոնի սովխոզում 300 հեկտար կարտոֆիլի ցանքատարածությունից ստացվեց ընդամենը 330 ցենտներ բերք, այն էլ՝ սննդի համար ոչ պիտանի: Մեծ տարածությունների վրա հիվանդության վարակի նման բռնկումներ արձանագրվել են նաև ցորենի ու եգիպտացորենի ցանքերում:

Նոր, բարձրբերքատու, ինտենսիվ սորտերի լայն ներդրումը, ինչ խոսք, ժամանակի պահանջն է, սակայն երբեք չպետք է մոռանալ, որ այն ունի նաև իր ստվերոտ կողմերը: Բազմաթիվ հինավուրց տեղական սորտերի կորուստը դարերով հղկված ու հարմարված գենետիկական համակարգերը շրջանառությունից հանելը, թերևս, շատ թանկ գին է ինտենսիվացման դիմաց: Ստացվում է, որ մենք երբեմն ինտենսիվացման կուրսը հակադրում ենք բնության պաշտպանության շահերին: Դա անթույլատրելի է և աններելի: Ընդհակառակը, հասարակական և սոցիալ-տնտեսական այդ երկու արդիական օբյեկտիվ երևույթները պետք է խելացիորեն զուգակցվեն և գործեն ներդաշնակ:

Նոր սորտերի շարունակական ներդրումը և հների բարելավումը, մշակովի նոր բուսատեսակների ու սորտերի բուծումը հնարավոր են միայն ծավալուն գենետիկական ելանյութի առկայության պայմաններում: Տարբեր տեսակների գենետիկական ելանյութի վերարտադրումը հույժ անհրաժեշտ է նաև բուսական բնական համակարգերի պահպանման ու վերականգնման տեսակետից: Այդ գենոֆոնդը օգտագործվելու է, օրինակ, ոչնչացված անտառների վերականգնման, առավել արժեքավոր ծառատեսակների տարածման, ինչպես նաև արոտների բուսածածկի թարմացման, անապատներում ավազուտների ամրացման, հողերի էրոզիայի արգելակման և երկրագործության այլ կարիքների համար:

***

Ժամանակակից ինտենսիվ գյուղատնտեսության հիմքերից մեկը մշակովի բույսերի սիստեմատիկ սորտաթարմացումն է: Ցորենի և այլ հատիկային կուլտուրաների սորտերի կյանքի միջին տևողությունն այժմ 5—10 տարի է, հազվադեպ՝ մինչև 15 տարի, ինչը, առաջին հերթին, պայմանավորված է սորտի արժեքավոր հատկությունների աստիճանական կորստով: Հանդես են գալիս վնասատուների և հիվանդությունների նոր, առավել վարակունակ ու ագրեսիվ կենսատիպեր ու ռասաներ, տեղի են ունենում հողի ու կլիմայական պայմանների փոփոխություններ, որոնց նկատմամբ սորտերն այլևս դիմացկուն չեն:

Այդ ամենի հետևանքով ընկնում են, հաճախ անսպասելի ու մեծ չափերով, բերքատվությունը, ինչպես նաև հումքի որակը: Ելքը նոր սորտերի բուծումն ու ներ-

դրումն է, իսկ դրանց շարունակական բուծման համար գենետիկական բազմազանության կարևոր աղբյուր են մշակովի բույսերի վայրի ցեղակիցները: Մշակովի գործնական կարիքներից բխող ծավալուն գենոֆոնդ ապահովելու համար անհրաժեշտ է խնամքով պահպանել չօգտագործվող այն տարածությունները, որտեղ դեռևս կա այդ բազմազանությունը: Օրինակ, հանրապետությունում առաջնահերթ ուշադրության արժանի այդպիսի շրջաններ հացահատիկային կուլտուրաների, հատկապես ցորենի վայրի ցեղակիցների տարածման դեռևս պահպանված վայրերը:

Արհեստական վերարտադրման ընդունակ առանձին պոպուլյացիաների գենոֆոնդը հնարավոր է և անհրաժեշտ է պահպանել բուսաբանական այգիներում, սաղմնային բջիջների պահոցներում՝ սերմերի, սաղմնային հյուսվածքների, ծաղկափոշու և այլ տեսքով: Այժմ բուսաբանական այգիներում, տնկարաններում և դենդրարիաներում հավաքված է աշխարհի բարձրակարգ բույսերի տեսակների շուրջ 1/5 մասը:

Խոշոր բուսաբանական այգիներ կան բոլոր մայրցամաքներում ու երկրներում: Առավել հայտնի է թագավորական այգին Անգլիայում, որի հավաքածուում ներկայումս հաշվվում է շուրջ 25 հազար տեսակ: Հայտնի են ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի գլխավոր բուսաբանական այգին՝ 16 հազար տեսակներով, Մոնրեալի (20 հազար), Նյու Յորքի և Կալկաթայի (15-ական հազար), Մելբուռնի (20 հազար) և այլ բուսական այգիներ: Հայկական ԽՍՀ գիտությունների ակադեմիայի բուսաբանական այգում կա շուրջ 1.100 տեսակ, որոնց նշանակալի մասը տեղական է՝ էնդեմիկ:

Գյուղատնտեսական կուլտուրաների և դրանց վայրի ցեղակիցների սերմերի առաջին համաշխարհային հավաքածուն ստեղծել է ակադեմիկոս Ն. Ի. Վավիլովը 1920-ական թվականներին: 1936 թ. նրա հավաքածուում արդեն ընդգրկված էր տարբեր կուլտուրաների ավելի քան 150 հազար սորտանմուշ:

Հետազոտություններից ստացված տվյալների, ինչպես նաև համաշխարհային փորձի հաշվառման հիման վրա սկիզբ դրվեց սերմերի պահպանման հայրենական ազգային պահեստարանի կամ «Գենային բանկի», ինչպես սկսեցին այն անվանել, կառուցմանը: «Գենային բանկը» բարդ տեխնիկական կառույց է, որի կազմի մեջ մտնում են խոշոր պահեստարաններ, հարմարավետ, տեխնիկապես հագեցված լաբորատոր սենյակներ, ցածր ջերմություն ապահովող սառնարանային հզոր հարմարանքներ: Պահեստարաններում սերմերը պահվում են 4° C ջերմության և խիստ որոշակի խոնավության պայմաններում: «Գենային բանկը» հաշվարկված է 400 հազար սորտանմուշների պահպանման համար՝ յուրաքանչյուրից 500 գրամ քանակով: Այդպիսի համակարգը ապահովում է, օրինակ, հացահատիկային կուլտուրաների սերմերի հուսալի, առանց վերացանքի պահպանումը 25—30 տարի:

Սակայն սերմերի պահպանումը 0°C, նույնիսկ —10° կամ — 18° C պայմաններում, ինչպես երաշխավորել է ՅՈՒՆԵՍԿՕ-ի պարենային ծրագրի հատուկ հանձնաժողովը, թույլ չի տալիս խուսափելու սերմերի մեջ ջերմությամբ հարուցված մուտացիաներից, լիպիդների օքսիդացումից, մեմբրանային նուրբ կառուցվածքների քայքայումից և այլն, որոնք, վերջին հաշվով, իջեցնում են սերմերի կենսունակությունը: Հավաքածուի նման պահպանումը, չնայած ոչ շատ հաճախակի, նույնպես պարբերաբար վերացանք է պահանջում: Սակայն ինչպես պահպանման, այնպես էլ վերացանքի պրոցեսները անխուսափելիորեն ուղեկցվում են գենետիկական փոփոխություններով՝ մուտացիաներով, որոնք, որքան էլ հազվադեպ, երկար ժամանակի ընթացքում կուտակվելով, կարող են որակ կազմել: Այսպիսով, ժամանակակից տեխնոլոգիայի մակարդակով այս գործոնների բացառման միակ ուղին գենետիկական ինֆորմացիա կրող բջիջների խորը սառեցումն է բացարձակ զրոյին մոտ ջերմային պայմաններում (— 275 °C), երբ գործնականում դադարում են մոլեկուլների ջերմային շարժումները:

Գոյություն ունի գենոֆոնդի պահպանման ևս մեկ եղանակ այն բույսերի համար, որոնց սերմերը խորը սառեցման չեն դիմանում: Դա բույսերի սաղմնային հյուսվածքների կրիոկոնսերվացումն է: Նման բջիջներից աճեցված բույսերը իրենց գենոտիպով լիովին համապատասխանում են մայր բույսերին: Այդ բջիջները զերծ են հիվանդածին մանրէներից, վիրուսներից, սնկերի միկրոպլազմաներից:

Գենոֆոնդի պահպանման մյուս եղանակը բույսերի աճեցումն է ծաղկափոշուց: Այդ եղանակով առայժմ հաջողվել է աճեցնել շուրջ 50 տեսակի պատկանող հապլոիդ բույսեր, այդ թվում հացազգիներ, մորմազգիներ (ծխախոտ, լոլիկ, կարտոֆիլ



և այլն): Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ծաղկափոշին հեշտությամբ է ենթարկվում խորը սառեցման, ինչ վիճակում սաղմնային բջիջների և ծաղկափոշու տեսքով կարելի է պահպանել բույսերի գենոմները: Այդպիսի «պահածոյացված» «գենային բանկերի» ստեղծումը հազվագյուտ և անհետացող բուսատեսակների գենոֆոնդի պահպանման կարևոր միջոց է:

* * *

Բնության պահպանության, բուսական աշխարհի անխաթարության ապահովման համար հույժ կարևորվում է էկոլոգիական դաստիարակության, հասարակության մեջ, հատկապես աճող սերնդի շրջանում, էկոլոգիական մտածելակերպի նշանակությունը: Բնության աղտոտումը, նրա չմտածված ու անխնա շահագործումը մեծագույն վտանգ են սպառնում ոչ միայն ներկա, այլև ապագա սերունդների առողջությանը: Կենսոլորտի քայքայումը իր հետ բերում է վտանգներից գուցե ամենավատթարը՝ գենետիկական այլասերման, ժառանգական հիվանդությունների մուտացիոն բեռի մեծացման վտանգը, որին դիմագրավելը շատ ավելի դժվար կլինի, քան ֆիզիկական աղտոտվածության հաղթահարումը:

Տվյալ խնդիրների վերաբերյալ ժամանակի պահանջները նկատի ունենալով, մամուլի, ռադիոյի ու հեռուստատեսության, դասախոսությունների ու հանրամատչելի հրատարակությունների միջոցով պետք է լայնորեն մեկնաբանել բնապահպանական, մասնավորապես բույսերի գենոֆոնդի պահպանման պրոբլեմները: Անհրաժեշտ է դպրոցական ծրագրերում նախատեսել այդ հարցերին վերաբերող առարկայի դասավանդում:

Էկոլոգիական պրոբլեմների նշանավոր հետազոտող Դ. Օուենը այսպիսի հաշվումներ է կատարել. մարդու՝ բնությունը էականապես քայքայող գործունեությունը կատարվել է գրեթե ակնթարթորեն: Ընդ որում, պետք է հաշվի առնել, որ այն համամոլորակային մասշտաբներ է ընդունել մեր հարյուրամյակում, սակայն սկսել է մարդկանց լրջորեն մտահոգել միայն վերջին տասնամյակներին: Եթե ընդունենք, որ կյանքը երկրի վրա գոյություն ունի ավելի քան 3 մլրդ տարի, իսկ մարդը հանդես է եկել ընդամենը մեկուկես մլն տարի առաջ, ապա բնության նկատմամբ նրա քայքայող գործունեությունը ծավալվել է այդ ժամկետի աննշան մասում: Եթե ընդունենք նույնիսկ, որ այն սկսվել է 10 հազար տարի առաջ՝ հողագործության սկզբնավորմամբ, իրոք, դա մի «ակնթարթ» է: Մարդիկ ամենուրեք և մշտապես պետք է լինեն զգոն, չափազանց հեռատես ու խելամիտ: Այլապես միլիարդավոր տարիների ընթացքում բնության ստեղծածը հեշտությամբ հնարավոր է ոչնչացնել մի քանի «ակնթարթում»:

Երկրի էկոլոգիական առողջացման մասին ԽՍՀՄ Գերագույն խորհրդի երկրորդ նստաշրջանի որոշմամբ նախատեսվում է 1990 թվականի ընթացքում մշակել և ընդունել օրենք բուսական աշխարհի պահպանության և ռացիոնալ օգտագործման մասին: Որոշված է հողօգտագործումը բարելավելու, հողերի բերրիությունը բարձրացնելու, գյուղատնտեսական կուլտուրաների պաշտպանության կենսաբանական մեթոդների ներդրման վերաբերյալ մշակել պետական հատուկ ծրագրեր: Օրենսդրական այս ակտերը, որոնցով արդեն անմիջականորեն զբաղվում են պետական իշխանության մարմինները, ունեն սոցիալ-տնտեսական մեծ նշանակություն: Դրանք առանձնապես կարևոր են մեր հանրապետության համար, որտեղ խիստ կերպով սրված է էկոլոգիական իրավիճակը, այդ թվում նաև բուսական աշխարհի:

---

# ԿՅԱՆՔ՝ ՆՎԻՐԱԲԵՐՎԱԾ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆԸ

## ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏ ԵՐԵՎԱՆՈՒՄ

Փետրվարի 25-ին մայրաքաղաքի մարզահամերգային համալիրում տեղի ունեցավ հոբելյանական հանդիսավոր նիստ՝ նվիրված հայ ժողովրդի ազգային-ազատագրական շարժման ականավոր գործիչ, փառապանծ զորավար Անդրանիկ Օզանյանի ծննդյան 125-ամյակին: Այն ներածական խոսքով բացեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ:

*Մեր կյանքի այս լարված ու դրամատիկ դեպքերով լեցուն օրերին, երբ զարմանալիորեն միահյուսվել են պատմական իրողություններն ու արդիականությունը, ասաց նա, հավաքվել ենք նշելու հայ ժողովրդի արժանի զավակ, հիրավի ժողովրդական հերոս Անդրանիկ Օզանյանի կամ, ինչպես ժողովուրդն է մեծարել, Անդրանիկ Զորավարի ծննդյան 125-ամյակը:*

*Անդրանիկի ծննդյան հոբելյանը այսօր նշում է համայն հայությունը՝ և՛ մայր հայրենիքում, և՛ բազմաթիվ գաղթօջախներում:*

*Մեր ժողովրդի համար Անդրանիկը լոկ հմուտ ու խիզախ զորավար չի եղել: Նա, իր մեջ խտացնելով հարազատ ժողովրդի դարերից եկող ու բյուրեղացած լավագույն հատկանիշները, դարձավ հայրենասիրության, ազատության մարտիկի, անձնազոհության, անկոտրում կամքի ու ոգու սխրանքի խորհրդանիշ:*

*Անդրանիկը ազգային-ազատագրական պայքարի այն երևելի դեմքերից է, որոնց ամբողջ գործունեությունը դուրս է գալիս իրենց ապրած ժամանակների շրջանակներից, անանց արժեք ձեռք բերում, դառնում ժողովրդի արդար գոյատևման ուղեցույց:*

*Անցած դժվարին տարիներին, լուռ կամ բացահայտ հալածանքների պայմաններում անգամ, ժողովրդի մեջ երբեք չխամրեց մեծ հայորդու հիշատակը: Ընդհակառակը, նրա անունն ու գործը վերածվեց առասպելի, նրա շուրջ հյուսվեցին բյուր լեգենդներ:*

*Այսպես էլ պետք է լիներ, որովհետև իր պատմության բախտորոշ պահերին Անդրանիկին ու նման հերոսներին ժողովուրդն է ծնում, ժողովուրդն է պահպանում ու հավերժացնում նրանց անունը:*

*Եվ ահա այսօր տասնամյակներ տևած սպասումով առաջին անգամ մենք հավաքվել ենք պետականորեն արժանին մատուցելու և մեծարելու համաժողովրդական սիրո արժանացած հերոսին: Հավաքվել ենք նրա անվանն ու գործին հավաստելու մեր խորին հարգանքը:*

*Այսօր մեզ նույնքան անհրաժեշտ է Անդրանիկը, որքան իր ժամանակակիցներին: Անհրաժեշտ է որպես ազգային զարթոնքի ռահվիրա, որպես ժողովրդի ազատագրական ոգին վառ պահող կերպար:*

*Պատմությունը դաժան է գտնվել հայ ժողովրդի հանդեպ: Բայց պատմությունը փակ շղթա չէ, այն ստեղծվում ու շարունակվում է ամեն օր, ամեն ժամ: Ժողովուրդն այսօր ոտքի է կանգնել ուղղելու պատմության դաժան սխալները, վերագտնելու իր ազգային համախմբվածությունը, արտահայտելու իր իղձերն ու նպատակները: Ժողովրդական ոգու այդ հզոր հորձանքի համար խորհրդանշան են դարձել մեծ զորավարի անունն ու գործը:*

*Լինելով հայրենիքի պաշտպանության մեծ նվիրյալ, Անդրանիկը ժողովրդի շահերը միշտ վեր է դասել ամեն ինչից: Նա եկավ շարունակելու հայ ազգային-ազատագրական պայքարի երախտավորների բարի գործն ու անկոտրում կամքը: Եվ այսօր, մեծարելով նրան, մեծարանքի խոսքեր պիտի հասցեագրենք նաև բոլոր հայ ֆիդայիներին, նրանց, ովքեր հավատարիմ իրենց սրբազան ուխտին՝ մահը աչքերի առաջ ծառայեցին իրենց ժողովրդի ազատագրության գործին:*

*Ժողովրդի հարության հույսերով ապրող զորավարը առաջիններից մեկն էր, որ ողջունեց Հայաստանի վերածնունդը: Այդ վերածնունդը պայմանավորված էր նաև նրա սխրանքով: Ահա նրա պատվիրանը. «Բավական է, հայ ժողովուրդ, բավական է ինչքան զրկանքներ կրեցիր, այժմ գոյություն ունի խորհրդային ազատ Հայաստան»:*

*Նա նաև ասում էր. «Ես ունեմ միայն մեկ նպատակ, վերադառնալ ազատ Հայաստան, տեսնել իմ հարազատ ժողովրդին և ապա հանգիստ մեռնել»: Նա չհասցրեց վերադառնալ, իր մահկանացուն կնքեց օտարության մեջ: Այժմ նրա աճյունը վերջնական հանգստի է սպասում հայրենի հողում:*

*Խորապես ճշմարիտ է՝ ժամանակը ծնում է իր հերոսներին: Նույնքան էլ ճշմարիտ է, որ ժողովուրդը ապավինելով նրանց, դարեր շարունակ սնվում ու հզորանում է իր արժանի զավակների շուրջ հյուսված հերոսապատումներից: Ազգը, որի պատմական հիշողության մեջ, ինչպես մի օրգանական ամբողջություն, միահյուսված են քաջ Վարդանի և Անդրանիկ Զորավարի մերօրյա հերնշեղության լեգենդները, վաղուց գտել է հավերժություն տանող իր ճամփան:*

*Անդրանիկն ըմբոստանալով բռնության դեմ, ժողովրդական էպոսի հերոսին արժանի վեհությամբ, բարձր բարոյականությամբ ու քաջագործությամբ, եկավ մեկ անգամ ևս հաստատելու, որ հայ ժողովուրդը, իր արդարացի պայքարով, կռիվ տալով խավարին ու հետադիմությանը, մարդկային քաղաքակրթության զարգացման ճանապարհին առաջադիմության կրողներից է:*

*Պատմությունը նորից մեր ժողովրդին նետել է սոցիալական հեղաբեկումների հորձանուտը: Մենք պետք է լուրջ դասեր քաղենք անցյալից: Մեր բազմադարյան պատմության այս դրամատիկ պահին ամեն մի հայ, մեր հանրապետության ամեն մի քաղաքացի պետք է գիտակցի պատասխանատվությունը ժողովրդի բախտի ու ճակատագրի հանդեպ: Այսօր մեզ սխալվելու իրավունք չի տրված: Անհրաժեշտ է առաջնորդվել բարոյական բարձր արժեքներով, վեր կանգնել եսակենտրոն մղումներից, քանզի մեր առջև հայրենիքի ճակատագիրն է:*

*Հայաստանը՝ որպես ամենայն հայոց հայրենիք, կհարատևի: Ոչ ոք նրան չի կարող զրկել իր անցյալից ու ապագայից:*

*Մեզ համար այսօր Անդրանիկ Զորավարի անունը այս ամենի խորհրդանշանն է՝ իրական ու ոգեշնչող, առաքինի ու գեղեցիկ:*

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԿԵՄԿՈՒՄԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ԱԿԱԴԵՄԻԿՈՍ Գ. ԳԱԼՈՅԱՆԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ

Մենք նշեցինք մեր պատմության առավել պայծառ դեմքերից մեկի, իր կյանքը մեր ժողովրդի ազատագրական պայքարին անմնացորդ նվիրած մեծ զորավար Անդրանիկի ծննդյան 125-ամյակը: Մեծ հայրենասերի մասին ասված խոսքը ոչինչ չի ավելացնում նրա փառքին և նրան չէ անհրաժեշտ, այլ մեզ, մեր ապագա սերունդներին, որոնց ուժ ու կորով է հաղորդում նրա հերոսական կյանքի պատմությունը, մի պատմություն, որն անջնջելի հետք է թողել յուրաքանչյուր հայի սրտում: Անդրանիկը ձուլված է ժողովրդին, ապրում է նրա հոգում, շունչ հաղորդում նրա մարմնին: Նրա աններակերտ հուշարձանի աներեր պատվանդանը ինքը՝ ժողովուրդն է:

Ինձ թվում է, որ այսօր, երբ մեր ժողովուրդը պատմության դառն հեգնանքով նորից ոտքի է ելել իր ազգային ինքնիշխանությունը, պատիվն ու արժանապատվությունը պաշտպանելու, իր ազգային վերամիավորմանը հասնելու համար, մեզ հետ է Անդրանիկը՝ իր սթափ հայացքով, քաղաքական ճիշտ կողմնորոշումով և մեր հաղթանակի նկատմամբ անկոտրում կամքով ու հավատով:

Ամեն անգամ, երբ ժողովրդին պատել է ազգային անպաշտպանվածության զգացումը, նա միշտ էլ պատասխան է փնտրել իր անցյալ պատմությունում, այն գործիչների մոտ, որոնք նեցուկ են հանդիսացել ազգի ինքնապաշտպանությանը: Ահա ինչու հոգեբանորեն արդարացված է այն վերաբերմունքը, որ այսօր մեր ժողովուրդը դրսևորում է իր ազգային հերոսի նկատմամբ:

Անդրանիկը չի ծառայել ոչ մի կուսակցության, ոչ մի վարչակարգի: Նրա քաղաքական հավատամքը ժողովրդի ազատագրական սրբազան պայքարին ծառայելն է եղել:

Ծնվել է 1865 թվականի փետրվարի 25-ին, Սեբաստիայի գավառի Շապին Գարահիսար գյուղաքաղաքում, ատաղձագործ Թորոս Օզանյանի ընտանիքում: Առաջին անգամ բանտի դառնությունը նա ճաշակել է տասնչորս տարեկան հասակում, հոր պատիվը անարգած թուրք հրոսակից վրեժխնդիր լինելու համար: Այդ պահից ի վեր նա զգացել է հայերի ստրկական վիճակը Թուրքիայում և վաղամեռիկ մոր գերեզմանին երդում տվել նվիրվելու հայ ժողովրդի ազատագրական պայքարին:

Դառն ճակատագիր է ունեցել մեր ժողովուրդը: Դարեր շարունակ գտնվելով Թուրքիայի և Պարսկաստանի բռնակալական իշխանության տակ, նա չի կորցրել իր պետականության վերականգնման հույսը և միշտ պայքարի մեջ է եղել: Մեր ժողովրդի վաղեմի սովորույթներն ու ավանդույթները, լեզուն ու կրոնը ենթարկվում էին վայրենի հետապնդումների: Նրան մշտապես սպառնում էր ձուլման կամ ոչնչացման վտանգը: «Քրիստոնյա շղթայակապ գերիներ», այսպիսին էր հայոց գոյավիճակը թուրքերի և պարսիկների տիրապետության տակ:

Եվ երբ ռուսական զենքի միջոցով Արևելյան Հայաստանը ազատագրվեց պարսկական լծից, մեծ լուսավորիչը գրեց. «Դժոխքի քանդվիլը մեղավորների համար էս գինը չէր ունենալ, ինչպես Երևանու բերդի առնելը հայերու համար»:

Դժբախտաբար օսմանյան դժոխքի դռները ավելի ամուր գտնվեցին հայերի համար: Քաղաքական մեծ հեռատեսություն էր պետք հասկանալու, որ այդ դժոխքի դռները ամրապնդվելու էին մեծ տերությունների ձեռքերով, որոնց ճիրաններում ազատագրական պայքարի ելած արևմտահայերը պետք է իրենց գերեզմանները գտնեին:

Անդրանիկը քաղաքական պայքարի ասպարեզ իջավ մեր ժողովրդի պատմության ամենաողբերգական ժամանակաշրջանում: 19-րդ դարի երկրորդ կեսը և 20-րդ դարի երկու տասնամյակները հայ ժողովրդի համար բախտորոշ էին: Արևմտյան Հայաստանին տիրելու խնդրում ռուս-թուրքական մրցակցությունը նոր խթան հանդիսացավ թուրքերի հայահալած ավանդական քաղաքականության սաստկացման համար:



Ի պատասխան՝ 1862 թվականին բռնկվեց հայերի հերոսական ապստամբությունը Զեյթունում: 1876 թվականի գարունը նշանավորվեց Թուրքիայի քրիստոնյա ժողովուրդների հակաթուրքական ապստամբություններով: 77-ի ապրիլին բռնկվեց պատերազմ Թուրքիայի և Ռուսաստանի միջև, որը նոր ալիք հաղորդեց արևմտահայերի ազատագրական շարժումներին: Արևելահայերը մեծ խանդավառությամբ իրենց նպաստն էին բերում ռուսական զենքի հաղթանակին:

Իհարկե, ռուսական ցարիզմը հայ ժողովրդի ազատագրումը չէր հետապնդում: Նա իր նվաճողական նպատակների համար էր զենք ճոճում: Բայց այն օբյեկտիվորեն համընկնում էր մեր ժողովրդի ազատագրական պայքարի շահերին:

Թափած արյունը վերջին հաշվով հաղթանակ չբերեց: Եվրոպական պետությունները խանդով էին նայում Մերձավոր Արևելքում Ռուսաստանի դիրքերի ուժեղացմանը, իսկ հայկական հարցն օգտագործում էին միայն Թուրքիայից զիջումներ կորզելու նպատակով: Նրանք ստանում էին այդ զիջումները՝ Թուրքիային հանձնելով հայերին ոչնչացնելու անստորագիր մանդատներ:

Թուրքական իշխանություններն իրենց հերթին վրեժխնդիր էին լինում հայերից Ռուսաստանի նկատմամբ ցուցաբերած նվիրվածության համար: Միայն 80—90-ական թվականների ջարդերի հետևանքով Արևմտյան Հայաստանում զոհվեց շուրջ 300 հազար հայ: Բայց նրանք չզոհվեցին որպես եղեռնի անդիմադիր զոհեր: Նրանք ընկան ազատագրական պայքարի մարտերում որպես քաջարի զինվորներ, մահ բերելով թշնամուն:

Սուլթանին չհաջողվեց ծնկի բերել արևմտահայերին: Զմարած ազատագրական պայքարի օջախների կողքին ավելանում էին նորերը: Եվրոպական տերությունները քար անտարբերությամբ էին նայում այս ամենին, ասել է՝ թե մեղսակից էին հայերի ցեղասպանությանը: «Հայաստանը կուզե ճար: Անգլիա կու տայ ճառ»,— այսպես էին հայերը գնահատում Անգլիայի սին խոստումները:

Քաղաքական կյանքի այս անցուդարձերը Անդրանիկի համալսարանն էին, որից առած դասերը պետք է առաջնորդեին նրան ամբողջ կյանքի ընթացքում:

Արդիական հնչեղություն ունի հայկական հարցի քաղաքական վայրիվերումներին Նիկողայոս Մառի գնահատականը. «Հայկական կյանքի նորից գործի գցած մակույկը մեծ տերությունների միջազգային քաղաքականության կամակոր ալիքների ազդեցության ներքո մերթ վեր էր խոյանում համաշխարհային հետաքրքրության գըլխապտույտ մակարդակը, մերթ շրջվում համընդհանուր անտարբերության անդունդը, և այնժամ մակույկավարները, հանձինս հայ եկեղեցու, որ երկար ժամանակ հայ ժողովրդի միակ ներկայացուցիչն էր, և հանձինս մտավորականության, համառորեն և բարձրաձայն դիմում էին մարդկությանը՝ արդարության խնդրանքով»:

Անդրանիկը մեր ազգային-ազատագրական շարժման այն գործիչներից էր, որը դեռևս վաղ հասակում հասկացավ «արդարության խնդրանքի» գինը և մերժեց այն: Հայ ժողովրդի ազատագրման միակ երաշխիքը նա տեսնում էր նրա հավաքական ուժի և դիմադրական հզորության մեջ:

90-ական թվականների կեսերին Անդրանիկը Աղբյուր Սերոբի քաջարի մարտիկների հետ Տարոնում ու Սասունում հերոսաբար կռվում էր թուրքական կանոնավոր զորքերի դեմ: Աղբյուր Սերոբի եղերական մահից հետո (նրան թուրքերը թունավորեցին հայի ձեռքով) շուրջ 25 տարի Անդրանիկը արևմտահայ ազատագրական շարժման փաստական առաջնորդն ու գաղափարախոսն էր: Մշո սուրբ Առքելոց վանքի հերոսական պաշտպանությունը (1901 թ.), Տարոնի, Վասպուրականի, Սասունի՝ 1902—1904 թթ. հերոսամարտերը մեծ ճանաչում բերեցին Անդրանիկին, նրան դարձրին արևմտահայ ազատագրական շարժման ոգին:

1904 թվականի ապրիլին սասունցիները Անդրանիկի գլխավորությամբ նորից ապստամբության դրոշ պարզեցին: Թուրքական 15-հազարանոց կանոնավոր զորքերի և քուրդ հրոսակների գրոհներին Գևորգ Չաուշի, Հրայրի, Սեբաստացի Մուրադի և մյուս ֆիդայիների ջոկատները դիմակայում էին հերոսաբար: Անդրանիկի ղեկավարած զինյալ ջոկատները փայլուն հաղթանակներ տարան մի քանի անգամ գերազանցող օսմանյան զորքերի դեմ: Բայց ուժերը անհավասար էին: Թուրքերը ճնշեցին ապստամբությունը, ամայացրին Սասունի գյուղերը: Հայ շինականները հեռացան հարազատ վայրերից, իջան Մշո դաշտ, իսկ ֆիդայիները Անդրանիկի գլխավորությամբ Անդոկի լեռներում շարունակեցին պարտիզանական կռիվները մինչև մայիսի 2-ը:

Անդրանիկը հասկանում էր, որ արևմտահայերի ապստամբական անջատ-անջատ գործողությունները ջլատում են ուժերը և ընդունակ չեն Արևմտյան Հայաստանը դուրս բերելու օսմանյան բռնակալների ճիրաններից: Ապստամբության պարտությունից հետո Անդրանիկը եկավ Կովկաս, որտեղ հայ ժողովրդի ուժերի համախմբման նոր ուղիներ էր որոնում: Այդ նույն նպատակով նա Կովկասից ուղևորվեց Եվրոպա, եղավ Բուլղարիայում, Շվեյցարիայում, Ֆրանսիայում, Անգլիայում, հանդիպումներ ունեցավ այդ երկրների հասարակական ու քաղաքական գործիչների հետ, փորձեց Եվրոպայի ուշադրությունը հրավիրել Թուրքիայի հայահալած քաղաքականության վրա, դրդել նրանց պաշտպան կանգնելու հայերին: Հիասթափված նա խոստովանեց. «Հիմա ես եկած եմ այն համոզումին, որ անոնք չեն, որ մեզ խաբած են, կյլ մենք ենք, որ մեզ խաբած ենք»: Անդրանիկը կրկին համոզվեց, որ յուրաքանչյուր ժողովուրդ ինքն է իր բախտի տերը, և որ ուրիշին ապավինելու պատրանքը միայն փակուղու առջև է կանգնեցնում նրան:

Անդրանիկի ազգային գաղափարները նեղ ազգայնական չէին: Նա բոլոր ժողովուրդների ազատ ու անկախ զարգացման կողմնակիցն էր: Նա չէր ձգտում իր ժողովրդի երջանկությանը հասնել ուրիշ ժողովուրդների դժբախտության հաշվին: Նա բազմիցս շեշտել է, որ իր ժողովրդի պայքարը ուղղված չէ որևէ ազգի դեմ, որ ինքը պայքար է մղում բոլոր ճնշվածների ազատագրության համար՝ անկախ նրանց ազգային պատկանելիությունից: Նա արգահատանքով էր մերժում իրեն ներկայացրած այն մեղադրանքները, թե՝ սուր է բարձրացնում մուսուլման խաղաղ բնակչության վրա: Մերժելով այդ մեղադրանքը, Անդրանիկը իր ֆիդայիներին բարոյական դաս էր տալիս, կոչ անելով ձեռք չբարձրացնել խաղաղ բնակիչների, ծեր մարդու, կնոջ ու երեխայի վրա, ինչ ազգի էլ պատկանեն նրանք: Անդրանիկի այդ խրատները կարգախոս էին դարձել հայ ֆիդայիների համար:

Բարդ ու հակասական են եղել Անդրանիկի փոխհարաբերությունները հայ ազգային քաղաքական կուսակցությունների հետ: Նա հեռու էր փառասիրությունից և ատում էր խմբակային պայքարը, երբ վտանգի տակ էր դրված ազգի գոյությունը: Որպես ինքնօրինակ բնավորության տեր և արտասովոր մտածելակերպով օժտված անձնավորություն, Անդրանիկը երբեք լիովին չէր կիսում ոչ հնչակների (որոնց գաղափարները բաժանում էր երիտասարդ տարիներին), ոչ էլ դաշնակցականների գաղափարախոսությունը, որոնց շարքերում էր նա մինչև 1907 թվականը: Նա անկախ մտածելակերպի տեր մարդ էր և պարտավորված չէր համարում կատարելու այս կամ այն կուսակցության վերնախավի ցուցումներն ու դիրեկտիվները, եթե դրանք հակասում էին սեփական համոզմունքներին: Նրա բոլոր մտքերը, ձգտումները, գործերը ուղղված էին մի նպատակի՝ հայերին փրկել ողբերգական վիճակից:

1903 թվականից հետո, երբ ցարական կառավարությունը բռնագրավել էր հայ եկեղեցու հողերն ու գույքը, փակել ծխական դպրոցները, դաշնակցությունը սկսեց իր գործունեությունը ծավալել նաև Կովկասում, Ռուսաստանում: Անդրանիկը գտնում էր, որ երբ արևմտահայերի ազատագրման խնդիրը հայ ժողովուրդը կապում էր Ռուսաստանի օգնության հետ, քաղաքական պայքարի դուրս գալ Ռուսաստանի դեմ առնվազն անմտություն է: Ուստի նա գտնում էր, որ և դաշնակցությունը, և հնչակյանները, և հայ ժողովրդի քաղաքական բոլոր այլ ուժերը իրենց ջանքերը պետք է կենտրոնացնեն Արևմտյան Հայաստանում՝ թուրքական բռնակալության դեմ պայքարը շարունակելու համար: Ավելին, նա այն կարծիքին էր, որ անհրաժեշտ է շահագրգռել Ռուսաստանին սատար կանգնելու արևմտահայերի ազատագրական շարժմանը:

1908 թվականի հուլիսին երիտթուրքերին հաջողվեց տապալել սուլթանի իշխանությունը և երկրում հաստատել, այսպես կոչված, Սահմանադրական միապետություն: Հայերը խանդավառված էին, որ իրենք, վերջապես, կազատագրվեն ազգային դաժան հալածանքներից ու կոտորածներից: Դժբախտաբար, հայ քաղաքական կուսակցությունները չկարողացան գնահատել այդ օրերի քաղաքական իրավիճակը. նրանք կարծում էին, թե իսկապես վրա է հասել հայոց ազատագրության պահը և որ երիտթուրքերը կկատարեն «մուսուլմանների և քրիստոնյաների լիակատար իրավահավասարության» իրենց հռչակած կարգախոսը:

Անդրանիկն այս անգամ ևս դրսևորեց քաղաքական հեռատեսություն, չխաբվեց և չնետվեց երիտթուրքերի գիրկը: Երբ հայ քաղաքական գործիչներից մեկը նամակով Անդրանիկին հրավիրեց Կ. Պոլիս՝ նրա թեկնածությունը երիտթուրքական պառլամենտում առաջադրելու նպատակով, Անդրանիկը կտրականապես մերժեց այդ առաջարկը, պատճառաբանելով, որ «հանցագործների այդ ոհմակին, որ նստած է այնտեղ, ես չեմ հավատում...»: Անդրանիկը երիտթուրքերի կեղծ խոստումներից խաբված հայ քաղաքական գործիչներին գրում էր. «Զգույշ ձեր այդ նորագույն ընկերներին. շատ չանցած՝ անոնք ձեր գլուխն ալ պիտի ուտեն, ձեր ժողովրդին ալ»: Չանցած մեկ տարի, 1909 թվականի ապրիլին Ադանայի կոտորածներից հետո միայն, երբ սրի քաշվեց 30 հազար հայ, խաբված հայ գործիչները սթափվեցին: Բայց ոչ բոլորը: Նրանցից ոմանք փարված մնացին երիտթուրքերին դեռ երկար ժամանակ: Անդրանիկը երիցս խարազանել է նրանց, ովքեր համագործակցում էին երիտթուրքերի հետ: Նա կռահում էր, որ երիտթուրքերը ավելի դաժան են գտնվելու հայերի հանդեպ, քան նույնիսկ արյունոտ սուլթան Աբդուլ Համիդը: Անդրանիկը անհրաժեշտ էր համարում խորամուխ լինել քաղաքական անցքերի ծալքերում, ճիշտ ուղիներ որդեգրել հայ ժողովրդի ազատագրական պայքարում: Նա ցասումով դատապարտում էր ժողովրդի ուժերը ջլատող բոլոր այն գործիչներին, ովքեր քաղաքական իմաստությունից զուրկ էին և ժողովրդի դիմադրական շարժումը կազմակերպելու փոխարեն անհարկի վեճեր էին հարուցում հայ հասարակական քաղաքական կյանքում:

Այսօր էլ, եթե Անդրանիկը մեզ հետ լիներ, չեմ կասկածում, նույն դիրքորոշման վրա կանգնած կմնար:

1912 թվականի աշնանը բռնկվեց բալկանյան պատերազմը: Անդրանիկը ներքին մղումով ներքաշվեց Թուրքիայի դեմ ըմբոստացած բալկանյան ժողովուրդների ազատագրական պայքարի մեջ, իր հավաքագրած հայ կամավորների հետ մտնելով բուլղարական բանակի կազմը: Բուլղար ժողովուրդը, երկրի իշխանությունները բարձր գնահատեցին նրա գլխավորած հայ կամավորական գումարտակի հերոսական գործողությունները: Անդրանիկին շնորհվեց սպայի կոչում: Նա և իր շատ զինակիցներ պարգևատրվեցին Բուլղարիայի մարտական շքանշաններով: Հետագայում Անդրանիկը պետք է հիշեր. «Ես մեկ իդեալ և մեկ նպատակ ունեի. հարվածել մեր դարավոր թշնամիին: Ասկե դուրս՝ որևէ պետության կամ կառավարության դեմ շարժումի մը հակառակ մնացի մինչև վերջը»:

Երբ 1914 թվականի օգոստոսի 1-ին սանձազերծվեց առաջին համաշխարհային պատերազմը, երիտթուրքերը նորից փորձեցին խաբել հայերին, առաջարկելով նրանց ստեղծել կամավորական ջոկատներ՝ Ռուսաստանի դեմ կռվելու համար: Արևմտահայությունը և նրա քաղաքական բոլոր ուժերը մերժեցին այդ առաջարկությունը: Արևելահայերի հետ մեկտեղ նրանք ակնկալում էին, որ պատերազմում Անտանտի պետությունների կողմը հանդես գալով, նրանք կնվաճեն մեծ տերությունների, այդ թվում նաև Ռուսաստանի համակրանքը և պատերազմի հաղթական վախճանից հետո կհասնեն հայկական հարցի արդարացի լուծմանը:

Հենց այդ գաղափարներով էր տոգորված Անդրանիկը, երբ մեծ հավատով Բուլղարիայից եկավ Կովկաս, նշանակվեց առաջին հայ կամավորական գնդի հրամանատար և անմիջապես ընդգրկվեց կովկասյան ռազմաճակատի մարտական գործողությունների մեջ: Ռուսական զորքերի հետ միասին հասավ Ուրմիա լճի ափերը, որտեղ իրանական Դիլմա գյուղաքաղաքի մոտ թուրքերը մեծ զորաբանակ էին կուտակել՝ Նախիջևանի վրա շարժվելու համար: Ռուսական զորքերի առջևից ընթացող Անդրանիկի կամավորական ջոկատը առաջինն ընդունեց թուրքերի հարվածը և պարտության մատնեց Խալիլ Բեյի ուժերին: Անդրանիկը խափանեց Անդրկովկաս մտնելու թուրքերի պլանները: Դա 1915 թվականի ապրիլի 18-ն էր:

Մի քանի օր անց, ապրիլի 24-ին երիտթուրքերի կառավարությունը ձեռնամուխ եղավ արևմտահայերի զանգվածային բնաջնջման դիվային պլանի իրագործմանը: Ավելի քան մեկ և կես միլիոն հայեր դժոխային սպանդի զոհ դարձան: Դա 20-րդ դարի առաջին մեծ եղեռնն էր: Հայ ժողովրդի ողնաշարը կոտրվեց: Նա զրկվեց իր հայրենիքից: Թուրքերը տեր դարձան նրա բնօրրանին: Ջարդերից փրկված հայերի բեկորները ցրվեցին աշխարհով մեկ: Նրանց մի մասը ապաստան գտավ Ռուսաստանում:

Անդրանիկը նվիրվեց նրանց փրկության գործին: Նա մեկնեց Հյուսիսային Կովկաս, որտեղ կուտակվել էին մեծ թվով փախստականներ, զբաղվեց նրանց տեղավորելու, սնունդ ու հագուստ հայթայթելու, բժշկական օգնություն կազմակերպելու հարցերով:

1917 թվականի փետրվարին Ռոմանովների 300-ամյա տիրապետությունը տապալվեց: Բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակը Ռուսաստանի ճնշված ազգությունների հոգում անկախության հասնելու հույսեր ծնեց: Անդրանիկը կարծում էր, թե ռուսական զորքերի գրաված Արևմտյան Հայաստանի տարածքները կմնան Ռուսաստանի կազմում, կկազմեն Արևելյան Հայաստանի մի մասը, ինչը և հնարավորություն կընձեռի անկախ ու միացյալ Հայաստան ստեղծելու: Այդ ակնկալություններով էլ նա լծվեց հայ փախստականներին Ռուսաստանից Արևմտյան Հայաստան վերադարձնելու գործին: Ժամանելով Թիֆլիս, նա հիմնեց իր «Հայաստան» թերթը, որի էջերում հրապարակված հայրենասիրական նյութերն ու հոդվածները նպատակամղված էին հայերին հույս ու հավատ ներշնչելու ապագայի նկատմամբ:

1917 թվականի Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո խորհրդային կառավարությունը հրապարակեց «Թուրքահայաստանի մասին դեկրետը», որով ճանաչեց հայ ժողովրդի իրավունքները իր հայրենիքի՝ Արևմտյան Հայաստանի նկատմամբ: Բայց դեկրետը, ցավոք, հնարավոր չեղավ իրականացնել կյանքում:

1918 թվականի սկզբներից թուրքական զորքերը հարձակման անցան ռուսական զորքերի դեմ: Թողնելով Արևմտյան Հայաստանի գրաված տարածքը, չունկընդրելով Ստեփան Շահումյանի հորդորներին, ռուսական զորքերը նահանջելով անցան Անդրկովկաս և հեռացան Ռուսաստան: Ճանապարհին, Ադրբեջանի տարածքում մուսավաթականները կազմակերպեցին ռուս զինվորների զինաթափումն ու ջարդը: Միայն Շամխոր կայարանում նրանք սպանեցին ավելի քան 2000 ռուս զինվորներ:

Թուրքերի դեմ ըստ էության կռվում էին միայն հայ կամավորական զորամասերը, որոնց հյուսիսից մշտապես սպառնում էին մուսավաթականները: Ուժերը անհավասար էին: Անդրանիկը իրադարձությունների բուն կենտրոնում էր: Չնայած բոլոր ջանքերին, հայկական զորամասերին չհաջողվեց կանգնեցնել թուրքերի առաջխաղացումը, որոնք հասան Անդրկովկասի սահմաններին, ապա, խախտելով Բրեստ-Լիտովսկի դաշնագիրը, մտան երկրամասի տարածքները, նոր արհավիրքներ պատճառելով այս անգամ արդեն արևելահայերին: Թուրքերի մուտքը Անդրկովկաս նոր ուժ տվեց մուսավաթականներին, որոնք Անդրկովկասի հայաբնակ վայրերում ձեռնամուխ եղան նորանոր կոտորածների: Նրանք խռովություն բարձրացրեցին Խորհրդային Բաքվում, սկսեցին հայերի կոտորածը, մտադրություն ունենալով նրանց քշել Բաքվից: Բաքվի խորհրդի զինված ուժերին հաջողվեց տապալել այդ խռովությունը:

Անդրկովկասում ստեղծված իրավիճակը, մուսավաթականների դաշինքը թուրքերի հետ հայ ժողովրդին նորից կանգնեցրին լինել-չլինելու հարցականի առջև: Զրկված լինելով որևէ օգնությունից, հայ ժողովուրդն ապավինեց սեփական ուժերին և իր որդիների արյան գնով կանգնեցրեց Երևան և Բաքու շտապող թուրքական հորդաների առաջխաղացումը: Հայ աշխարհազորայինները Սարդարապատի, Բաշ Ապարանի, Ղարաքիլիսայի հերոսական ճակատամարտերում ջախջախեցին հղփացած թուրքական զորամասերին և փակեցին նրանց ճանապարհը: Օսմանյան զավթիչների դեմ ժողովրդի տարած հաղթանակը հնարավորություն տվեց իրականացնելու 1918 թվականի մայիսի 28-ի պատմական ակտը: 600 տարվա ստրկությունից հետո հայ ժողովուրդը կարողացավ Արևելյան Հայաստանի փոքրիկ հողակտորում վերականգնել իր ազգային պետականությունը:

1918 թվականի հունիսին Բաթումում թուրքերը Հայաստանի հանրապետությանը պարտադրեցին մի պայմանագիր, որով նորաստեղծ հանրապետությանը իրավունք էր վերապահվում ունենալ միայն 1200 զինվորից բաղկացած զորաբանակ: Ըստ այդ պայմանագրի՝ Կարսը, Արդահանը, Սուրմալուի գավառի մի մասը, Ալեքսանդրապոլի և Էջմիածնի գավառների երեք քառորդը, Երևանի և Շարուր-Դարալագյազի գավառների կեսը և Անդրկովկասի այլ տարածքներ մեկ միլիոն 250 հազար ընդհանուր բնակչությամբ անցան Թուրքիայի ձեռքը:

Թուրքական զավթիչները, իհարկե, կարող էին «լեզու գտնել» մուսավաթականների և վրաց մենշևիկների հետ և վիժեցնել Հայկական հանրապետության ծնունդը, իսկ նրան բաժին ընկած 9 հազար քառակուսի կիլոմետր տարածությունը կիսել իրար մեջ: Սակայն Թուրքիան այդ ժամանակ շահագրգռված չէր դրանում: Ամիսներ անց Թալեաթ փաշան Ալ. Խատիսովի հետ ունեցած հանդիպման ժամանակ հայտարարելու էր. «Վերջապես, փոքրիկ Հայաստանն մը ստեղծելով՝ մենք լուծած կըլլանք հայկական հարցը և այդպես կներկայանանք հաշտության միջազգային խորհրդաժողովին»:



Անդրանիկը, որի զորամասի թիվը անցնում էր 3 հազարից, չէր կարող մնալ Հայկական հանրապետության տարածքում, մանավանդ որ թուրքերը Հայաստանի կառավարությունից պահանջում էին ձերբակալել և իրենց հանձնել Զորավարին: Ուստի զորամասի և հազարավոր գաղթականների հետ միասին Անդրանիկը Ղարաքիլիսայից անցավ Նախիջևան, նպատակ ունենալով Պարսկաստանի վրայով մտնել Արևմտյան Հայաստանի տարածքը: Բայց, հանդիպելով թուրքական զորքերի ուժգին դիմադրությանը, նա նորից վերադարձավ Նախիջևան:

Անդրանիկը ամեն կերպ ձգտում էր կասեցնել թուրքական զորքերի հետագա առաջխաղացումը դեպի Անդրկովկասի խորքերը: 1918 թվականի հուլիսի 14-ի հրամանով նա Նախիջևանի գավառը հայտարարեց Խորհրդային Ռուսաստանի անբաժանելի մաս և այդ մասին նույն օրը ռադիոգրով հայտնեց Բաքվի ժողկոմխորհի նախագահ Ստեփան Շահումյանին:

Ուժերը անհավասար էին: Թուրք մուսավաթական հրոսակախմբերի ճնշման տակ Անդրանիկը ստիպված թողեց Նախիջևանը և իր զորամասով անցավ Զանգեզուր, հույս ունենալով, որ Գորիսի և Լեռնային Ղարաբաղի կողմից կհաջողվի օգնության հասնել Բաքվի պաշտպաններին և քաղաքի հայ բնակչությանը:

1918 թվականի օգոստոսից մինչև 1919 թվականի մարտ ամիսը գտնվելով Զանգեզուրում, Անդրանիկը կազմակերպեց լեռնաշխարհի հերոսական պաշտպանությունը թուրք-մուսավաթական ներխուժումից:

Պատերազմում Թուրքիայի պարտությունից հետո Անդրկովկասում ստեղծվել էր քաղաքական նոր իրավիճակ: Անգլիացիները 1918 թվականի նոյեմբերի կեսերին մտնելով Բաքու, իրենց հովանավորության տակ էին վերցրել Ադրբեջանի մուսավաթական կառավարությանը, որն ամեն ինչ անում էր զավթելու Լեռնային Ղարաբաղը, որի հայ բնակչությունը հռչակել էր իր անկախությունը և ձգտում էր միանալ Հայաստանին:

1919 թվականի հունվարին անգլիական օկուպանտները Ղարաբաղում ստեղծեցին ժամանակավոր գեներալ նահանգապետություն, որի կազմում էր նաև Զանգեզուրը: Նահանգապետ էր նշանակված թուրքական գործակալ Խոսրով Բեկ Սուլթանովը: Նահանգի փաստական կառավարումն իրականացնում էր անգլիական ռազմական միսիան: Նահանգի կենտրոնը Շուշին էր: Հայերը ստեղծել էին իրենց ազգային խորհուրդը, որն իր ձեռքն էր վերցրել լեռնաշխարհի ինքնապաշտպանության գործը: Կենաց ու մահու պայքարի ելած ղարաբաղցիները վճռականապես մերժեցին մտնել մուսավաթական լծի տակ:

Ղարաբաղի հայերի խնդրանքով և նրանց օգնելու նպատակով 1918 թվականի աշնանը Անդրանիկը իր զորամասով Զանգեզուրից շարժվեց դեպի Շուշի: Նրան կատաղի դիմադրություն ցույց տվեցին թուրքական զորքերի և մուսավաթական հրոսակախմբերի միացյալ ուժերը, և նա ստիպված եղավ վերադառնալ Զանգեզուր:

Զանգեզուրում Անդրանիկի գտնվելը մեծ դեր խաղաց այդ երկրամասի պաշտպանության և բնակչության անվտանգությունն ապահովելու գործում: Անդրանիկը մնաց մինչև 1919 թվականի մարտի վերջը, թույլ չտալով մուսավաթականներին ոտք դնել այդտեղ: Սակայն հենց այդ ժամանակ էլ, փախստականների մի մասին տեղավորելով Զանգեզուրում, նա եկավ Էջմիածին, զենքերը հանձնեց կաթողիկոսին, ցրեց զորամասը և իր 20 զինվորների հետ մեկնեց Բաթում, այնտեղից էլ՝ արտասահման: Մեկնեց և, իր կամքին հակառակ, այլևս չվերադարձավ հայրենիք:

Անդրանիկի կենսագիրներից մեկը՝ Անդրանիկ Չելեբյանը, այսպես է բացատրում Զորավարի Հայաստանից հեռանալու դրդապատճառները. «Բաթումի դաշնագրով ստեղծված Հայաստանի հանրապետությունը վստահություն չէր ներշնչած Զորավար Անդրանիկին, որովհետև ան հավատք չուներ հայոց անկախություն պարտադրող թուրքերուն անկեղծության վրա... Թուրքերու պարտադրած անկախ Հայաստանի մեջ Անդրանիկը ոչ պաշտոն ուներ, ոչ ալ բանակ. հերոսին գործը վերջացած էր»:

Գալով Էջմիածին, Անդրանիկը մտադրություն ուներ վերջին անգամ այցելել Երևան: Սակայն քաղաքի մատույցներում Դրոյի զինվորները Անդրանիկին դիմավորեցին զենքով: Հայի ազատության համար իր կյանքը անմնացորդ տված Զորավարը չէր կարող կրակ բաց անել հայ զինվորի վրա: Դառնացած ու խոշտանգված սրտով նա վերադարձավ Էջմիածին, այստեղից՝ Թիֆլիս ու անցավ արտասահման:

Ինքը՝ Անդրանիկը, այսպես է բացատրում Հայաստանից հեռանալու իր որոշումը. «Թերթերու կողմե տարածված այն լուրը, թե անգլիական սպառնալիքի կամ

խնդրանքի տակ հեռացած եմ Զանգեզուրեն, բոլորովին սխալ է. ես հեռացած եմ որոշ կլիքի մը կատարած անվերջ դավադրությանց, խոչընդոտներուն, զիս ու իմ զորքեր քաղաքական խաղերուն պատճառով»:

Անդրանիկի հետագա կյանքն ու գործունեությունը անցան Անգլիայում, Ֆրանսիայում, ԱՄՆ-ում: Մոտավորապես 1921 թվականից սկսած նա փաստորեն հեռացավ քաղաքական ակտիվ գործունեությունից: Դա բացատրվում էր գլխավորապես նրանով, որ Անդրանիկը այլևս հեռանկար չէր տեսնում Արևմտյան Հայաստանի հարցի լուծման գործում, այլև հույս չուներ նորից վերադառնալու հայրենիք, նորից այցի գնալու ծնողների գերեզմանին: Կյանքի վերջին տարիները նա նվիրաբերեց Սփյուռքի հասարակական կյանքին, մասնավորապես՝ հայ փախստականների տեղավորման գործին:

Ապրելով ԱՄՆ-ի Ֆրեզնո քաղաքում, Անդրանիկը հանդես էր գալիս որպես խորհրդային երկրի անկեղծ բարեկամ, առաջվա նման մնում էր որպես ռուս ժողովրդի հետ հայ ժողովրդի բարեկամության ջատագով: Սթափ մտածողությամբ նա նշում էր, որ, գտնվելով թշնամական միջավայրում, հայ ժողովուրդը չի կարող գժտվել Ռուսաստանի հետ, որ ռուս և հայ ժողովուրդների բարեկամությունը հավասարապես ձեռնտու է թե մեկին, թե մյուսին:

Այսօր մեր ռեգիոնում ստեղծված իրավիճակը մեզ էլ է հուշում սթափ նայել իրերի վիճակին և թույլ չտալ մեր ժողովրդի շահերը ոտնահարող քայլեր:

Անդրանիկին ուրախացնում և ոգևորում էին Խորհրդային Հայաստանի հաջողությունները, նա մշտապես ընդգծում էր նրա դերն ու նշանակությունը, որպես համայն հայության հայրենիքի: Խորհրդային Հայաստանը, ասում էր Անդրանիկը, պետք է ամեն կերպ պաշտպանել: Նա մեծ ուրախություն էր ապրում, երբ նրան հայտնում էին երկրում սկսված շինարարական աշխատանքների մասին: Անդրանիկի գործուն մասնակցություն էր ունենում Հայաստանին օգնություն ցույց տալու ուղղությամբ ամերիկահայության ձեռնարկումներին, դրանք համարելով հայրենասիրական գործ:

Իհարկե, Անդրանիկի հոգում մնացել էր արևմտահայության ապրած աղետների անբուժելի վերքը: Նա դառնությամբ ու զայրույթով էր արտահայտվում արևմտյան պետությունների նկատմամբ, որոնք ջանքեր չգործադրեցին Արևմտյան Հայաստանի փրկության համար: Բայց նա երբեք չէր կորցնում հավատը հայ ժողովրդի լուսավոր ապագայի հանդեպ: Անդրանիկը համոզված էր, որ եթե Խորհրդային Հայաստանը ամրապնդվի և հզորանա, ապա այն պատվար կդառնա հայ ժողովրդի օրինական պահանջների իրականացման:

«Ես ունեմ մի նպատակ՝ գալ Հայաստան, տեսնել իմ հարազատ ժողովրդին և ապա հանգիստ մեռնել...,— մի հավաքույթի ժամանակ ասել է Անդրանիկը: Ինչ խոսք, եթե հանգամանքները թույլ տային, նա անպայման կգար Հայաստան և հայրենիքում կանցկացներ իր կյանքի վերջին օրերը: Սակայն դա նրան չհաջողվեց: Տառապալից կյանքը և ծանր հիվանդությունը վերջնականապես խախտել էին նրա առողջությունը: 1927 թվականի օգոստոսին դադարեց բաբախելուց հայ ժողովրդի մեծ զավակի սիրտը:

Հայաստանի կառավարությունը մտադրվել էր Անդրանիկի դին Ամերիկայից տեղափոխել Երևան և կազմակերպել ազգային հերոսի համաժողովրդական հուղարկավորությունը: Սակայն այդ բանը չհաջողվեց ժամանակի քաղաքական անհանդուրժողականության պայմաններում: Հայրենիքի ճանապարհը բռնած աճյունը ստիպված հողին հանձնվեց Փարիզի Պեր լա Շեզ գերեզմանատանը:

Հուսանք, որ հանրապետության այսօրվա ղեկավարները միջոցներ ձեռք կառնեն Զորավարի աճյունը օտար հողից հայրենիք բերելու և հանձնելու այն հողին, որի ազատության համար նա չխնայեց իր կյանքը:

Տասնամյակներ շարունակ մոռացության էին տրված մեր ազգային-ազատագրական շարժման շատ դեմքեր: Մոռացության էին տրված պաշտոնապես, սակայն նրանք ապրում էին ժողովրդի սրտում: Մոռացության էին տրված ազգային շատ արժեքներ, որոնք այսօր վերադարձվում են ժողովրդին, նոր շունչ հաղորդելով նրան իր ապագայի նկատմամբ:

Այսօր Անդրանիկը մեզ հետ է, այդ փաստն իսկ վկայում է, որ ժամանակները փոխվել են: Մեծերի հոբելյանները, կրկնում եմ, չեն նշվում նրանց փառքն ավելացնելու, այլ նրանց կյանքից ու պայքարից դասեր քաղելու համար:



Խորհրդանշական է, որ մեծ Զորավարի հոբելյանը համընկնում է մեր ազգային շարժման երկրորդ տարեդարձին:

Երկրի դեմոկրատացման ու վերակառուցման պրոցեսները բացեցին ժողովրդական լայն զանգվածների աչքերը սոցիալ-քաղաքական այն հակասությունների վրա, որոնք հայտնի պատճառներով առաջ էին եկել տասնամյակների ընթացքում և որոնք ծվատում և հետ էին պահում մեր երկիրը նրա հնարավոր առաջադիմական զարգացման ընթացքից: Այսօր կարող ենք նշել, որ երկիրն արդեն դուրս է եկել լիբերալ ռեֆորմիզմի տառապանքներից և իրոք կանգնել հեղափոխական վերափոխման ճանապարհին: Սա է երկրի վերակառուցման հինգ տարիների գլխավոր արդյունքը: Այսօրվա բարձրացող սերունդը, թեև խարխափելով, բայց հետևողականորեն և առարկայաբար գաղափարներ ու տեսություններ է առաջադրում, որոնք մատնանշում են երկրի ազգային, սոցիալական ու քաղաքական բարենորոգումների ուղին:

Մենք ևս ապրում ենք ազգային զարթոնք, մենք ևս ձգտում ենք վերացնել ազգային ու սոցիալական այն անարդարությունները, որոնք տասնամյակներ շարունակ ծվատել են մեր հոգիները, կաշկանդել մեր ազատ զարգացումը:

Ինչու՞ են այսքան ցավագին ընթանում ազգային շարժումները, ինչու՞ են դրանք հանգեցնում ազգամիջյան սուր ընդհարումների, բախումների, արյունահեղության: Թերևս այն պատճառով, որ վերակառուցումը դեռևս հեռու է մնացել ազգային ու սոցիալական խնդիրների արմատական լուծումից, իրական փոփոխություններ չի մտցրել ժողովուրդների նաև իրավական կյանքում:

Եթե այդպես չլիներ, ապա մեզ տանջող ղարաբաղյան պրոբլեմը վաղուց իրավական ու սահմանադրական լուծում պետք է գտած լիներ: Մեր ժողովուրդն այսօր հոգեկան խռովքի մեջ է: Բայց թող նրան և հատկապես իրենց հայրենիքն այնքա՜ն սիրող մեր պանծալի երիտասարդությանը ուժ ու կորով տա մեծ Զորավարի կերպարը, որը հավատ է ներշնչում, թե Անդրանիկ ծնող ժողովուրդը չի կարող մեռնել: Նա կապրի ու կարարի:

---

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆԵՆԳԱՓՈԽՈՒՄԸ ԹՈՒՐՔ ՊԱՏՄԱԲԱՆՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

Ռ. ՍԱՀԱԿՅԱՆ

1915 ԹՎԱԿԱՆԻ ԵՂԵՌՆԻ համակողմանի գիտական լուսաբանումը հույժ կարևոր և արդիական խնդիր է, քանի որ ազգային-էթնիկական հողի վրա կատարվող հանցագործությունները այսօր էլ շարունակվում են երկրագնդի տարբեր մասերում՝ ներառյալ Խորհրդային Միության տարածքում, ուստի չափազանց հրատապ է վերստին անդրադառնալ ցեղասպանության բոլոր դրսևորումներին՝ քողարկված թե անսքող, ուշադրություն հրավիրել այդ հանցագործության բուն պատասխանատուներին քողազերծ անելու և օրենքի ամբողջ խստությամբ դատապարտելու վրա: Այժմ արդեն գաղտնիք չէ, որ Սումգայիթի եղեռնագործության ոգեշնչողները ու կազմակերպիչները շատ լավ գիտեին, որ 1915 թ. եղեռնի ամենագլխավոր կազմակերպիչները ու պատասխանատուները անպատիժ են մնացել, որ միջազգային չափանիշով նրանց չդատապարտեցին մարդկության դեմ կատարված հանցագործության համար: Ադրբեջանական ազգայնամոլները շարունակեցին իրենց հայասպան արարքները: Բաքվում առավել դաժանությամբ, քան թուրքական զավթիչները ու մուսավաթական հրոսակները 1918 թվականին: Եվ պատահական չէ, որ 1990-ի հունվարյան վայրագությունները Բաքվում ոչ միայն չդատապարտվեցին, այլև պաշտպանության տակ առան Անկարայում կլոր սեղանի շուրջը հավաքված այն պատմաբանները, որոնց կողմից պատմության խեղաթյուրումները վեր են հանվում սույն հոդվածում:

***

Հետպատերազմյան տարիներին և, հատկապես, 1960—1980-ական թվականներին լույս տեսած թուրքական պատմագիտական գրականության մեջ զգալի տեղ է հատկացված Հայաստանի, հայ ժողովրդի և, մասնավորապես, հայկական հարցի ու եղեռնի պատմությանը: Առաջին ծավալուն գիրքը, որը լույս տեսավ 1950 թ., վերնագրված է՝ «Հայերը պատմության մեջ և հայկական հարցը»: Սակայն սիստեմատիկ և նպատակասլաց կերպով թուրք պատմաբանները Հայաստանի և հայ ժողովրդի XIX—XX դարերի պատմության հարցերին նվիրված գործերն սկսեցին հրատարակել 1960-ական թվականներից:

Հայ ժողովրդի պատմության նկատմամբ ժամանակակից թուրք պատմագրության ցուցաբերած առանձնահատուկ հետաքրքրությունը, մեր կարծիքով, բացատրվում է այն բանով, որ 1965 թ. ապրիլին, աշխարհի 23 երկրներում հայերի ցեղասպանության 50-ամյակը նշելու կապակցությամբ, համաշխարհային հասարակայնությունը, նոր սերունդները տեղեկացան արդեն իսկ մոռացված դեպքերին և փորձեցին հասկանալ, թե ի՞նչ է, այնուամենայնիվ, տեղի ունեցել հայ ժողովրդի հետ Թուրքիայում 1915 թ.: Այդ ձգտումը, բնականաբար, մղում էր մարդկանց ծանոթանալու բազմաթիվ այն նյութերին, որոնք տպագրվում էին այդ օրերին ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի, Շվեյցարիայի, Արևմտյան Գերմանիայի, Արգենտինայի, Ուրուգվայի, Բրազիլիայի, Լիբանանի, Եգիպտոսի, Սիրիայի, Իրանի և այլ երկրների պարբերական մամուլում, ինչպես նաև հրատարակվում առանձին բրոշյուր-

---

*ՍԱՀԱԿՅԱՆ ՌՈՒԲԵՆ ԳԱՐԵԳԻՆԻ— ՀԽՍՀ ԳԱ արևելագիտության ինստիտուտի Թուրքիայի բաժնի վարիչ, պատմական գիտությունների դոկտոր։*



ներով ու գրքերով: Կարճ ժամանակում վերահրատարակվեցին հայկական ջարդերի, զանգվածային ցեղասպանության, էթնիկական և ազգային հողի վրա հայերին ոչնչացնելու թուրքական ավանդական քաղաքականությունը մերկացնող առավել հավաստի փաստագրական աղբյուրները, դեպքերի, ականատեսների ու ժամանակակիցների հուշերը: Տեղի ունեցավ Հայաստանի, նրա հերոսական անցյալի, նրա փառահեղ մշակույթի, երկրորդ հայտնագործումը: Օտարերկրյա ընթերցողները սկսեցին հասկանալ, որ աշխարհացրիվ հայերը սոսկ այն ժողովրդի ներկայացուցիչներն են,
որոնց բռնի կերպով արտաքսել են իրենց պատմական հայրենիքից՝ Արևմտյան Հա-
յաստանից: Պատմական ճշմարտությունը դառնում էր լայն հասարակայնության սե-
փականություն, որը սկսեց առաջ քաշել Թուրքիայի նախկին կառավարողների կող-
մից հայերի նկատմամբ գործադրված զանգվածային ցեղասպանության ճանաչման
ու դատապարտման հարցը:

Նման իրադրության մեջ թուրք կառավարող շրջանները միջոցներ ձեռնարկե-
ցին իրենց երկրի միջազգային հեղինակությունը փրկելու համար: Կարճ ժամանակում
հրապարակ եկան տարբեր մակարդակի պատմագիտական աշխատություններ՝ նվիր-
ված հայկական հարցին ու նրա ժամանակակից միտումներին: Սակայն պատմա-
կան ճշմարտության վերհանման մեթոդը մնաց նույնը՝ թուրք պատմաբանները գնա-
ցին իրեն արդեն վարկաբեկած ճանապարհով՝ ամեն ինչ ներկայացնել գլխիվայր,
ապացուցել, որ Հայաստանը, որպես ինքնուրույն պետություն, երբեք գոյություն չի
ունեցել, իսկ իրենք՝ հայերը, եկվոր ժողովուրդ են, զուրկ իրենց սեփական մշակույ-
թից, և որ իբր նրանք միշտ էլ փոքրամասնություն են կազմել իրենց բնակված վայ-
րերում, այդ թվում և Արևմտյան Հայաստանում: Ինչ վերաբերում է հայերի ոչնչաց-
ման փաստին, ապա դա, ըստ թուրք հեղինակների, լոկ հակաթուրքական պրոպա-
գանդայի արդյունք է: Պարզապես հայերը որոշ կորուստներ կրեցին իրենց «ժամա-
նակավոր» բնակության վայրերը տեղափոխվելու ընթացքում: Իսկ այդ քայլին էլ,
նրանց պնդմամբ, թուրքական իշխանությունները ստիպված էին դիմել՝ ի նկատի
ունենալով հայերի ոչ լոյալ վարքագիծն այն պահին, երբ Թուրքիան կենաց ու մահու
կռիվ էր մղում իր դարավոր թշնամու՝ Ռուսաստանի դեմ:

Ահա այս կոնցեպցիոն բնույթ ունեցող պաշտոնական վարկածը շրջանառության մեջ դրվեց նշված ժամանակաշրջանում լույս տեսած բազմաթիվ ու բազմաբնույթ հրատարակություններում:

Հարկ է նշել, որ հայերին տեղահանելու «անհրաժեշտության», հայերի «համընդհանուր ապստամբության», «հայրենիքի դավաճանության» և այլ զրպարտություններ պարունակող պաշտոնական վարկածները հիմնականում կրկնվում են 1970-ական թվականներին լույս տեսած աշխատություններում: 1980-ական թվականների սկզբից, ինչպես նշում են գենոցիդի պատմության ֆրանսիական հետազոտողներ Իվ. Տերնոնը և Պիեռ Վիդալ-Նակեն, թուրք պատմագրությունը, լինելով պետական պատմագրություն, իրենից ներկայացնում է «ժխտման պատմագրություն»:

Ժամանակակից թուրք պատմաբանները առանձնահատուկ տեղ են հատկացնում առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Թուրքիայի ներքին կյանքում տեղի ունեցած ահավոր դեպքերի քննությանը, մասնավորապես 1915-ի բռնագաղթի ու զանգվածային ցեղասպանության պատմությանը: Ծգնելով հերքել հայ ժողովրդի ցեղասպանության բուն իսկ փաստը, նրանք դիմում են բազմապիսի մեթոդների՝ կատարվածը կեղծ հայելու մեջ ներկայացնելու, թվական տվյալները խեղաթյուրելու, Արևմտյան Հայաստանի հայ ազգաբնակչության նախապատերազմական վիճակն աղավաղված ձևով ներկայացնելու և այդ բոլորի հետևանքով թուրք կառավարողների ձեռնարկած հակահայկական միջոցառումներն արդարացնելու նպատակով: Արհամարհելով օտարերկրյա աղբյուրների տվյալները հայերի թվաքանակի վերաբերյալ և բացառապես հենվելով թուրք պաշտոնական վիճակագրության վրա, որը քաղաքական նպատակներից ելնելով խիստ նվազեցնում էր արևմտահայության թիվը, թուրք հեղինակները, վկայակոչելով 1911—1912 թվականների տվյալները, պնդում են, որ հայերի թիվն ամբողջ Օսմանյան կայսրությունում կազմել է ընդամենը 1 միլիոն 161 հազար, 1 միլիոն 193 հազար կամ լավագույն դեպքում 1 միլիոն 294 հազար մարդ:

Թուրք պատմաբան Թայիբ Գյոքբիլգինը, օրինակ, պնդում է, որ «Պատմության ողջ ընթացքում թուրքերի հայրենիքը հանդիսացող արևելյան վիլայեթներում հայերը շատ վաղուց աննշան փոքրամասնություն են կազմել» (*T. Çökbilgin. Milli mücadele baslarken. Birinci kitap. Ankara*, 1959, *s.* 78):

Թուրք պատմաբանների ձգտումը՝ նվազեցնելու հայերի ընդհանուր թիվը, նպա-

տակ ունի ժխտելու այն փաստը, որ մոտ 2 միլիոն 300 հազար հայերից 1 միլիոն 300 հազարը զոհ է գնացել ցեղասպանության քաղաքականությանը միայն 1915—1917 թվականներին: Ժխտելով այդ քաղաքականությունը, թուրք հեղինակներն ամեն կերպ ջանում են պատճառաբանել ու «հիմնավորել» հայերի բռնի արտաքսումը իրենց պայքենական հողերից: Հայտնի պատմաբան Յուսուֆ Հիքմեթ Բայուրը, օրինակ, հայերի տեղահանությունը որակում է որպես բացառապես ստիպողական միջոց, որը նպատակ ուներ ապահովել թուրքական բանակի թիկունքը «հայկական ապստամբության» պահին:

Հեղինակը համառորեն այն միտքն է անցկացնում, որ երիտթուրքերի ձեռնարկած «պատժիչ միջոցառումները» լոկ հետևանք էին այն խռովությունների, որոնք ծագել էին հայկական վիլայեթներում, և որ կառավարությունն առաջինը չի ձեռնարկել և չի մշակել ջարդի ծրագիր, այլ միայն ստիպված է եղել դիմելու որոշ «պաշտոնական քայլերի». (*Y. H. Bayur. Türk inkilabi tarihi cilt* 3, *kisim* 3. *Ankara*, 1962, *s.* 3—8):

Մի այլ հայտնի պատմաբան, պրոֆ. Էնվեր Զիա Կարալը գրում է. «Դաշնակից տերությունների հետ համագործակցելով՝ հայերը թուրքերի դեմ քաղաքացիական պատերազմի ճակատ բացեցին: Դաշնակիցները շահագրգռված էին այդ բանում, քանի որ հայկական հարցը նրանց համար առիթ էր ծառայում հայերին զինելու, թուրքերին թիկունքից հարվածելու և այդ եղանակով կարճ ժամանակում պատերազմն ավարտելու համար: Թուրքերը ձգտում էին պաշտպանել պետության գոյությունը, կանխել հայերի համագործակցությունը դաշնակից տերությունների հետ՝ հայերին էվակուացնելով ռազմական գոտիներից» (*E. Z. Karal. Armenian Question* 1878—1923. *Ankara*, 1975, *p.* 15):

Ինչպես տեսնում ենք, այս պատմաբանն էլ գործածության մեջ է դնում երիցս հերքված թուրք պաշտոնական վարկածը հայերի, այդ թվում կանանց, մանուկների ու ծերերի վտանգավորության մասին: Բերելով այս փաստարկը, հայ ազգաբնակչության տեղահանությունը դեպի սիրիական անապատ հիմնավորելու համար, Կարալը գիտակցորեն լռության է մատնում իրեն քաջ հայտնի այն փաստը, որ ըստ «Դեպորտացիայի մասին օրենքի», բռնի տեղահանության էր ենթարկվում ամբողջ Օսմանյան կայսրության ամբողջ հայ ազգաբնակչությունը, բացառությամբ երկու քաղաքների՝ Կ. Պոլսի և Իզմիրի, որտեղ գտնվում էին չեզոք կամ տակավին պատերազմի մեջ չմտած օտար պետությունների դիվանագիտական ու հյուպատոսական ներկայացուցչությունները: Քանզի քաջ հայտնի է, որ Արևմտյան ու Կենտրոնական Անատոլիան, մասնավորապես Անկարայի, Սեբաստիայի, Կեսարիայի ու Մալաթիայի վիլայեթները երբեք էլ պատերազմական գոտի չեն դիտվել: Թվական ստույգ տվյալները, որ բերված են դոկտոր Լեպսիուսի հայտնի «Զեկույցում», վկայում են, որ հիշյալ և մի քանի այլ վիլայեթների ու նահանգների մի քանի հարյուր հազար հայ ազգաբնակչություն նույնպես տեղահանվել և սպանվել է 1915—16 թթ. (*J. Lepsius. Rapport secret sur les massacres d' Arme'nie. Paris*, 1918, *p.* 157—167):

Փորձելով արդարացնել հայերի տեղահանությունը, Կարալը գրում է. «Բացարձակորեն ճշմարիտ է այն, որ երկու կողմերից էլ թափվել է շատ արյուն այն պատճառով, որ հայերի կողմից ցույց է տրվել զինված դիմադրություն, իսկ զգալի թվով հայեր զրկվել են կյանքից հիվանդությունների, ցրտի, ինչպես նաև այն պատճառով, որ նրանք դիմել են ռեանշի գործողությունների, մի բան, որ չէր կարող հավանության արժանանալ թուրք ժողովրդի կողմից» (*E. Z. Karal*, նշվ. աշխ., էջ 15—16):

Այնուհետև հեղինակը հայտարարում է, որ իր բերած փաստերը, «օգնում են հաստատելու, թե ինչու՞ ցավալի նախաձեռնությունները չեն կարող մեկնաբանվել որպես հայ ազգի սպանություն»: Որո՞նք են այդ փաստերը: Պարզվում է, որ դա հնչակյան կոմիտեի փարիզյան կենտրոնի ընդունած այն որոշման նախագիծն է, որն ավարտվում էր «Կեցցե՛ Հայաստանը» խոսքերով և մի կոչով, որտեղ ասված էր, որ «հասել է ժամը, երբ հայերը պետք է ազատվեն օսմանյան կեղեքումից» (նույն տեղը):

Որոշ թուրք պատմաբաններ էլ հատուկ քննության են առնում հայերի բռնագաղթի պատճառները: Այսպես, Ի. Ջ. Օզքայան, անդրադառնալով այս հարցին, որպես հիմնական փաստարկ բերում է «ողջ հայ ազգաբնակչության» խռովարար վարքագիծը, որը հրահրվում էր Ռուսաստանի կոմիտեների կողմից Թուրքիային պատերազմ հայտարարելու առաջին իսկ օրերից. «Երբ, ցավոք, պատերազմական իրավիճակ հայտարարվեց Օսմանյան կայսրության և այն երկրների խմբի միջև, որին



պատկանում էր իմպերիալիստական Ռուսական կայսրությունը, հայկական կոմիտեները, առանց որևէ պատճառի և հակառակ ամեն մի քաղաքականության ու ողջամտության, գտան, որ իրենք պատերազմի վիճակի մեջ են այն պետության հետ, որին իրենք պատկանում էին... Այդ իսկ պատճառով,— շարունակում է հեղինակը,— կայսերական կառավարությունը որոշում ընդունեց ոչնչացնել հայկական այդ կոմիտեները և ցրել նրանց ղեկավարներին: Որոշումն ի կատար ածվեց սկսած 1915 թվականի ապրիլի 15-ից, զորակոչ հայտարարելուց գրեթե ինը ամիս հետո» (*J. C. Ozkaya. Le peuple armenien et les tentatives de reduire le peuple turc en servitude. Istanbul*, 1971, *p.* 228, 234—235):

Այս մեջբերումներից պարզորոշ երևում է թուրք պատմաբանի հեղհեղուկ դիրքը: Այստեղ ոչ մի խոսք չկա այն մասին, որ նշված ժամանակաշրջանում հայ տղամարդկանց մի զգալի մասը, զորակոչվելով թուրքական բանակ, զինաթափվել էր, ընդգրկվել աշխատանքային գումարտակներում, որոշ ժամանակ օգտագործվել էր որպես քարշուժ, իսկ այնուհետև տմարդի կերպով ոչնչացվել: Այդ մասին հանգամանորեն գրել է դեպքերի ականատես, ամերիկյան հայտնի իրավաբան, պրոֆեսոր Հերբերտ Ադամս Գիբոնսը «Նորագույն պատմության ամենասև էջը» վերնագրով գրքում (Герберт Адамс Гиббонс. Самая черная страница новейшей истории. Последние избиения в Армении. Факты и ответственности. Пер. с англ. Петроград, 1916, с. 11—13.

Թուրք պատմաբանն այնուհետև թույլ է տալիս բացահայտ խեղաթյուրում, գրելով, թե իբր ապրիլի 24-ին ցրվել են լոկ հայկական կոմիտեներն ու նրանց ղեկավարները, այն դեպքում, երբ ամբողջ աշխարհին հայտնի է, որ սարսափելի այդ գիշերը և նրան հետևած մի քանի օրերին ապօրինի կերպով ձերբակալվել էին և առանց դատ ու դատաստանի արտաքսվել ու բարբարոսաբար ոչնչացվել հայ մտավորականության 600-ից ավելի ներկայացուցիչներ՝ գրողներ, երաժիշտներ, նկարիչներ, փաստաբաններ, բժիշկներ, մանկավարժներ, լրագրողներ, գործարար շրջանների ներկայացուցիչներ, այդ թվում օսմանյան պառլամենտի բոլոր հայ դեպուտատները:

Ֆահրի Բելենը նույնպես կրկնում է թուրքական պաշտոնական վարկածը. «Թուրքական բանակի թիկունքում ծայր առած հայկական ապստամբության կապակցությամբ կառավարությունը հրաման արձակեց հայերին ճակատային գծից հեռացնելու և նրանց Սիրիա ու Իրաք ուղարկելու մասին» (*F. Belen.* XX *yuzilda Osmanli devleti. Istanbul*, 1973, *s.* 243):

Այնուհետև նա գրում է, որ խոսելով հայերի տեղահանության մասին, մոռանում են, որ ավելի մեծ թվով մահմեդականներ են սպանվել, թաքցնելով այն փաստը, որ այդ մահմեդականները սպանվել են ոչ թե հայերի կողմից, այլ ռազմի դաշտում:

Վերջին տարիներին հրատարակված գործերից նշենք պրոֆեսոր Թյուրքկայա Աթաևովի անգլերեն լույս տեսած «Թուրքիկ հայացք հայկական հարցի վրա» վերնագրով գրքույկը, որտեղ հեղինակը ամբողջովին աղավաղում է 1915-ի դեպքերը, պնդում, թե իբր հայերը փաստորեն հանդես էին գալիս որպես պատերազմող կողմ՝ Ռուսաստանի կողքին, ուստի նրանց հարկ էր հեռացնել սահմանից, հետևաբար «տեղափոխումը», ինչպես նա անվանում է բռնագաղթը, պատերազմի հանգամանքով ծագած անհրաժեշտություն էր:

Առանց որևէ փաստարկման պնդելով իր ասածը, հեղինակը հասկանալի պատճառով չի հիշատակում մերկացուցիչ այն փաստաթղթերը, որոնք ժամանակին բերվել են Յոհաննես Լեպսիուսի, Ջեյմս Բրայսի հայտնի ժողովածուներում, Առնոլդ Թոյնբիի, Անդրեյ Մանդելշտամի, Հենրի Մորգենթաուի, Ժակ դը Մորգանի և եվրոպական ու ամերիկյան մի շարք այլ հեղինակների գործերում:

Ի մի բերելով վերը նշված «փաստարկումներն» ու պնդումները, կարելի է ասել, որ թուրք հեղինակների հիմնական դրույթները հանգում են հետևյալին.

Թուրքիայի պատերազմի մեջ մտնելու հենց սկզբից արևմտահայերը ամենուրեք սկսել են պատրաստվել համընդհանուր ապստամբության՝ թուրքերին թիկունքից հարված հասցնելու և օսմանյան կայսրությունից անջատվելու նպատակով.

Սարիղամիշի տակ 1915 թ. հունվարին թուրքական զորքերի կրած պարտության մեջ գլխավոր մեղավորները հայերն են.

Հայկական ապստամբությունը միաժամանակ նպատակ ուներ աջակցություն ցույց տալ հարձակվող ռուսական զորքերին.

Հայերը մերժեցին թուրքական կողմի առաջարկը՝ ռուսական կովկասյան բանակի թիկունքում ապստամբություն բարձրացնելու վերաբերյալ:

Հայերը թրով ու սրով ոչնչացնում էին մահմեդական գյուղերը՝ նրանց խաղաղ ազգաբնակչության հետ միասին:

Մինչև «հայերի խռովությունը» Վանում, որը սկսվեց 1915 թ. ապրիլի 20-ին, և հատկապես հայկական կամավորական խմբերի և ռուսական զորքերի Վան մտնելը 1915 թ. մայիսի 19-ին, թուրքական իշխանությունների կողմից ոչ մի պատժիչ միջոցառումներ չեն ձեռնարկվել և չի եղել նախապես մշակված պլան Թուրքիայի ողջ հայ ազգաբնակչության տեղահանության ու ոչնչացման վերաբերյալ:

Կենտրոնական կառավարությունը և երիտթուրքական «Իթթիհատ վե թերաքքի» կուսակցությունը ոչ մի պատասխանատվություն չեն կրում հայերի զանգվածային տեղահանության ու ջարդերի համար:

Այդպե՞ս է արդյոք: Բերենք մի քանի առավել հավաստի փաստագրական տվյալներ պաշտոնական տարբեր աղբյուրներից:

Քննենք, այսպես կոչված, հայկական համընդհանուր ապստամբության վարկածը:

Ահա թե ինչ է գրում այդ կապակցությամբ Թուրքիային լավատեղյակ իրավաբան-միջազգայնագետ, պրոֆեսոր Ա. Ն. Մանդելշտամը «Օսմանյան կայսրության ճակատագիրը» հիմնարար հետազոտության մեջ:

«Հակառակ թուրքական կառավարության կեղծ հայտարարությունների, չի եղել հայկական ոչ մի խռովություն կամ հեղափոխություն: Հայերը զենքի դիմեցին միայն այն ժամանակ, երբ տեսան ջարդի սպառնալիքը և ենթարկվելով իրենց կյանքը որքան հնարավոր է թանկ ծախելու բնական ձգտմանը... Եվ այսպես, զինված դիմադրության բոլոր դեպքերում մենք տեսնում ենք ոչ թե հեղափոխականների, այլ դժբախտ մարդկանց, որոնք ինչ-որ զենքեր են պահել և գերադասում են կռվել մինչև մահ, քան տանել դանդաղ չարչարանքները կամ տեղահանության տառապանքները... Այսպիսով հայերին չի կարելի մեղադրել այն բանում, որ նրանք պաշտպանում էին իրենց կյանքը: Սակայն չպետք է մոռանալ, որ միայն չնչին փոքրամասնությունը կարող էր այդ բանն անել: Հայերի մեծամասնությունն արդեն պատերազմի սկզբին զենքը հանձնել էր իշխանություններին: Եվ այդ պատճառով նրանք ստիպված էին առանց նվազագույն իսկ դիմադրության ընդունել այն դաժան ճակատագիրը, որը կառավարությունը պատրաստել էր իրենց համար» (*A. Mandelstam. Le sort de l' Empire Ottoman. Lausanne—Paris*, 1917, *p.* 248—250):

Ահա մեկ այլ լավատեղյակ անձնավորության, 1913—1916 թթ. Թուրքիայում ԱՄՆ-ի դեսպան Հենրի Մորգենթաուի վկայությունները.

«Որպեսզի ազգի ոչնչացման պլանը հաջողություն ունենար, պիտի արվեր երկու նախնական քայլ. անհրաժեշտ էր բոլոր մեծ և ոչ խոշոր քաղաքներում հայ բոլոր զինվորներին զրկել պաշտպանության միջոցներից և բռնագրավել արդեն նրանց մոտ եղած զենքը: Նախքան հայերին ոչնչացնելը պետք էր նրանց զինաթափել» (*Ambassador Morgenthau's story. New York*, 1918, *p.* 301):

Գերմանական արևելագետ և հումանիստ Յոհաննես Լեպսիուսը նույնպես հերքել է «ռազմական անհրաժեշտության մասին» փաստարկը, ցույց տալով, թե ինչ նպատակի են ծառայել անսպասելի կերպով իրենց պաշտոններից հայ գործիչների ազատումը, նրանց ձերբակալությունը և բռնի տեղահանությունը: «Դա համընդհանուր մի միջոցառում էր,— գրում է Լեպսիուսը,— որը նպատակ ուներ զրկել հայ ժողովրդին իր ղեկավարներից և իր մարմիններից այն հաշվով, որ դեպորտացիան կարելի լիներ անցկացնել առանց աղմուկի և առանց դիմադրության»: Խոսելով երևելի հայերի, այդ թվում՝ օսմանյան պառլամենտի դեպուտատների, գրողների, հրապարակախոսների, փաստաբանների ձերբակալության մասին, Լեպսիուսը շեշտում էր այն փաստը, թե դրանք բոլորը կատարվել են առանց որևէ դատաքննության, որը կարող էր նախորդել կամ հաջորդել այդ ձերբակալություններին (*J. Lepsius*, նշվ. աշխ., էջ 45—46):

Նույն ձևով էին վերաբերվում հայ երևելիների, հայկական համայնքների ներկայացուցիչների հետ նաև Արևմտյան Հայաստանի բոլոր գավառներում: Յոհաննես Լեպսիուսը բերում է հավաստի փաստեր դիվանագիտական ներկայացուցիչների ու հյուպատոսների զեկուցագրերից, որոնցում այն միտքն է հայտնվել, որ տեղահանությունների իսկական նպատակը հայ ժողովրդի ոչնչացումն է Թուրքիայում:

Այսպես, ամերիկյան հյուպատոս Օսկար Կայզերը իր 1915 թ. հուլիսի 28-ի թվակիր զեկուցագրում, տեղեկացնելով Տրապիզոնի հայերի բռնագաղթի մասին, նշում էր. «Գերմանական դեսպանն ասաց ինձ, որ ինքը չի կարծում, որ հայերը կարող



են վերադառնալ Տրապիզոն նույնիսկ պատերազմի ավարտից հետո» (նույն տեղը, էջ 58):

Խարբերդի ամերիկյան հյուպատոսը, տեղեկացնելով իր դեսպանին տեղի հայերի բռնի արտաքսման մասին, բերում էր փաստեր, թե ինչպես էին թուրք ոստիկանները Խարբերդից ոչ հեռու զազանաբար ոչնչացրել 800-ից ավելի հայերի, այդ թվում երևելի անձանց: «Երբեք այդ մարդկանց դեմ որևէ մեղադրանք առաջ չի քաշվել,— ավելացնում էր հյուպատոսը:— Նրանք բոլորը ձերբակալվել էին և սպանվեցին սոսկ այն պատճառով, որ կառավարության գլխավոր պլանի համաձայն պետք էր ազատվել հայ ազգից» (նույն տեղը, էջ 96):

Դոկտոր Լեպսիուսը հանգամանորեն ներկայացրել է հայերի տեղահանության պատկերն ըստ առանձին վիլայեթների: Հեղինակի բերած փաստերը, տվյալներն ու կոնկրետ թվերը չեն կորցրել իրենց արժեքը շնորհիվ դրանց հավաստիության ու ճշգրտության:

Չափազանց կարևոր է առաջին անգամ դոկտոր Լեպսիուսի բարձրացրած, այսպես կոչված, հայկական համընդհանուր ապստամբության հարցը, որով երիտթուրքական կառավարությունը փորձում էր հիմնավորել տեղահանության անհրաժեշտությունը: Թուրքական այս պաշտոնական վարկածը, որը շրջանառության մեջ է դրվել դեռևս այն ժամանակ և տարածվում է մեր օրերում, նպատակ ունի ապակողմնորոշելու մարդկանց: Դոկտոր Լեպսիուսը համոզիչ կերպով ցույց է տալիս այդ տեսակետի ողջ սնանկությունը, հայերի «դավաճանության» վերաբերյալ թուրքական պնդման սադրիչ բնույթը:

«Այսպես կոչված խռովությունը Վանում,— գրում էր Լեպսիուսը,— օրինական պաշտպանության մի քայլ էր և մի դրվագ ջարդերի պատմության մեջ, բայց ոչ մի դեպքում՝ դավաճանություն: Այդ բանը հաստատում են պաշարմանը ներկա գերմանացիները»: Հեղինակը ցույց է տալիս, որ Վանի հայ ազգաբնակչությունը կազմակերպել էր ինքնապաշտպանություն՝ խուսափելու համար այն ճակատագրից, որը բաժին ընկավ թուրքական խոստումներին հավատացած իրենց հայրենակիցներին: Քննարկելով քաղաքի ապստամբ բնակիչներին ռուսական զորքերի օգնության գալու հարցը, հեղինակը նշում է. «Երկու իրադարձություն՝ Վանի հայերի օրինական ինքնապաշտպանությունը նրանց սպառնացող ջարդի դեմ-հանդիման և ռուսների հարձակումը, իրար հետ ոչ մի կապ չունեն և չեն կարող դիտվել, որպես պատճառ և հետևանք... իրենց ինքնապաշտպանությամբ Վանի հայերը միայն նպատակ էին հետապնդում փրկել իրենց մերձավորների կյանքը» (նույն տեղը, էջ 128—129):

Հարցը քննարկելով առավել լայն, համաթուրքական մասշտաբով, Լեպսիուսը հանգում էր այն եզրակացության, որ կառավարության դեմ ուղղված որևէ կանխամտածված շարժում չի եղել, այլ կանխամտածված են եղել այն հետապնդումները, որոնք կիրառվում էին մեթոդիկ կերպով: Ընդհանրացնելով իր բերած փաստագրական բոլոր տվյալները, Լեպսիուսը շեշտում էր, որ չի կարելի լուրջ համարել այն փաստարկները, որոնք բերվում են տեղահանությունը հիմնավորելու համար: Բացառությամբ Վանի շրջանի, որը խուսափեց տեղահանությունից, քանի որ այն գրավվել էր ռուսական զորքերի կողմից, երկու-երեք այլ վայրերի, ուր հայերը դիմադրություն էին ցույց տվել, մնացածներն այնքան հեռու էին ճակատային գոտուց, որ կայսրության բոլոր մասերում ցրված մեկ և կես միլիոն ազգաբնակչության տեղահանությունը, առավել ևս պատերազմական թատերաբեմից ամենամեծ հեռավորության վրա գտնվող վայրերից, ոչ մի կերպ չի կարելի արդարացնել ռազմական նկատառումներով: Միակ բացատրությունը, որը հիմք չի տալիս կառավարության այդ միջոցառման մեջ տեսնել խելացնոր մի ակտ, գտնում էր Լեպսիուսը, դա այն է, որ կառավարությունը գործում էր ներքաղաքական մի պլանի համաձայն և իր առջև խնդիր էր դրել ոչնչացնել հայ էթնիկական տարրը (տե՛ս նույն տեղը, էջ 259):

Բերված և մի շարք այլ անաչառ գնահատականները, ջարդերի անմիջական ականատեսների ու ժամանակակիցների անհերքելի վկայությունները մերժում են թուրքական շինծու վարկածը Օսմանյան կայսրության ողջ հայ ազգաբնակչության բռնագաղթի անհրաժեշտության վերաբերյալ: Ավելին, նշված և օտար այլ հեղինակներ, մերժելով «ռազմական նկատառումների» մտացածին փաստարկը, միաժամանակ ցույց են տալիս, որ հայ ժողովրդի բնաջնջումը մանրակրկիտ կերպով մշակված մի օպերացիա էր, իսկ տեղահանությունը սոսկ դրա իրականացման եղանակը:

Հետաքրքրական է, որ այդ մասին իրենց կառավարությանը ժամանակին տեղեկացրել են գերմանական դիվանագիտական գործակալները, ներկայացուցիչներն այն պետության, որը սուլթանական Թուրքիայի դաշնակիցն ու պաշտպանն էր ա-

ռաջին համաշխարհային պատերազմի սկզբից մինչև վերջ: Բերենք դրանցից մի քանիսը միայն: Էրզրումում գերմանական հյուպատոս Շոյբներ-Ռիխտերը 1915 թվականի հունիսի 2-ին տեղեկացնում էր Կ. Պոլսի իր դեսպանությանը. «Իմ բանակցությունները գլխավոր հրամանատարի հետ հայերի տեղահանության վերաբերյալ դրական արդյունքի չհանգեցրին: Հայ ազգաբնակչությունը դաշտային բոլոր շրջաններից, հավանական է և Էրզրումից, պետք է արտաքսվի Դեյր-էր Զորի կողմերը: Մեծ մասշտաբի այս տեղահանությունը հավասարազոր է զանգվածային ոչնչացմանը, քանի որ տրանսպորտային միջոցների բացակայության պատճառով տեղահանվածների հազիվ կեսը ողջ կհասնի նշանակված վայրերը և, հավանական է, այս տեղահանությունն իր հետ կբերի ոչ միայն հայերի, այլև ամբողջ երկրի քայքայում: Ռազմական բնույթի հիմքեր չեն կարող բերվել այդ գործողությունների համար, քանի որ տեղի հայերի ապստամբության հնարավորությունը բացառվում է, որովհետև տեղահանվողները ծերունիներ, կանայք ու երեխաներ են...» (ընդգծումն իմն է՝ Ռ. Ս.) (*Deutschland und Armenien* 1914—1918. *Potsdam*, 1919, *S.* 80: Մեջբերումն արվում է ըստ՝ Геноцид армян в Османской империи. Сборник документов и материалов. Составители: М. Г. Нерсисян, Р. Г. Саакян. Под ред. М. Г. Нерсисяна. Вт. доп. изд. Ереван, 1982, с. 288—289):

15 օր հետո, 1915 թվականի հունիսի 17-ին, Կ. Պոլսում գերմանական դեսպան Հանս Վանգենհայմը, որը, իմիջիայլոց, հայտնի էր իր թուրքասիրությամբ, կանցլեր Բետման-Հոլվեգին ուղարկած իր զեկուցագրում մատնանշում էր. «Միանգամայն ակներև է, որ հայերի տեղահանությունը ոչ միայն ռազմական միջոցառումների հետևանք է: Ներքին գործերի մինիստր Թալեաթ բեյը վերջերս անկեղծորեն հայտարարեց կայսերական դեսպանությունում ներկայումս հավատարմագրված դոկտոր Մորդմանին, որ Բարձր Դուռը ցանկանում է համաշխարհային պատերազմն օգտագործել վերջնականապես հաշվեհարդար տեսնելու համար ներքին թշնամիների (տեղական քրիստոնեաների) հետ, անտեսելով արտասահմանից եկող դիվանագիտական միջամտությունը» (նույն տեղը, էջ 289—290):

Ավելի ուշ, 1915 թվականի հուլիսի 7-ին, այդ նույն Վանգենհայմը կանցլերին տեղեկացնում էր տեղահանության իսկական նպատակների մասին.

«Դեռ 14 օր սրանից առաջ հայ ազգաբնակչության արտաքսումը սահմանափակվում էր մոտավորապես այն գավառներով, որոնք մոտ են գտնվում ռազմական գործողությունների արևելյան թատերաբեմին, ինչպես նաև Ադանայի նահանգի առանձին շրջաններին: Դրանից հետո Բարձր Դուռը որոշում ընդունեց այդ գործողությունները տարածել Տրապիզոնի, Մամուրեթ-ուլ-Ազիզի և Սվասի նահանգների վրա և արդեն ձեռնամուխ է եղել վերն ասվածի իրականացմանը, թեև երկրի այդ մասերը չեն գտնվում թշնամական որևէ ներխուժման սպառնալիքի տակ:

Այդ գործողությունները և այն եղանակը, որով իրականացվում է տեղահանությունը, վկայում են, որ կառավարությունը իսկապես նպատակ ունի ոչնչացնել հայ ազգը թուրքական պետության մեջ» (նույն տեղը, էջ 291):

Վերը հիշատակված Շոյբներ-Ռիխտերը իր նախորդ զեկուցագրերը լրացնում էր թուրք պաշտոնական անձանց և նրանց կողմնակիցների անկեղծ խոստովանություններով: «Տեղական վալի Թահսին բեյի կողմնակիցներն անկեղծորեն խոստովանում են, որ իրենց գործունեության վերջնական նպատակն է լրիվ ոչնչացնել Թուրքիայի հայերին: Պատերազմից հետո «մեզ մոտ՝ Թուրքիայում, հայեր այլևս չեն լինի»— բառացիորեն այսպիսին է հեղինակավոր մի անձի արտահայտությունը: Քանի որ այդ նպատակին հնարավոր չէ հասնել տարբեր բնույթի ջարդերի օգնությամբ,— շարունակում էր հյուպատոսը,— այստեղ հույս են դնում, որ մինչև Միջագետք տևող երկար ճանապարհի ընթացքում կրած զրկանքները և անսովոր կլիման կամբողջացնեն գործը: Հայկական հարցի այս «լուծումը» թվում է իդեալական ծայրահեղ ուղղության բոլոր կողմնակիցներին, որոնց թվին են պատկանում գրեթե բոլոր զինվորական և կառավարական պաշտոնյաները: Ինքը՝ թուրք ժողովուրդը ո՛չ մի չափով համաձայն չէ հայկական հարցի նման լուծման հետ և արդեն հիմա ծանրորեն զգում է տնտեսական այն կարիքը, որը ծագել է երկրի այս մասում հայերի արտաքսման հետևանքով» (նույն տեղը, էջ 295):

Այն ժամանակ դեռ չեզոք տերության՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների դեսպան Հենրի Մորգենթաուն 1915 թվականի ապրիլի 30-ին պետական քարտուղարին ուղղած իր հեռագրում տեղեկացնում էր, որ «չեն դադարում ստացվել զեկուցագրեր կայսրության մի քանի շրջաններում հայերի հետապնդումների, թալանի և ջարդերի վերաբերյալ: Հայ պատրիարքը, Իտալիայի դեսպանը, Բուլղարիայի դես-



պանորդը և ես եռանդուն կերպով միջամտեցինք... Ակներև է,— եզրակացնում էր նա,— որ այս միջոցառումները ոչ թուրք տարրերի ու կազմակերպությունների դեմ ուղղված կամպանիայի մի մասն են կազմում, նրանց դեմ, ովքեր չեն պատկանում «Միանություն և առաջադիմությանը» (*Henri Morgenthau Memoires suivis de documents inedits du Departement d'Etat Paris*, 1984, *p.* 349—350):

Այնուհետև ասվում էր, որ նույն օրը Հալեպի ամերիկյան հյուպատոսից ստացված զեկուցագրից հայտնի էր դարձել, որ «թուրքական իշխանությունները անհավատալի դաժանությամբ են վարվում Զեյթունի ու Մարաշի հայ ազգաբնակչության հետ. հենվելով առանձին դասալիքների գործողությունների վրա՝ նրանք տեղահանում և ցրում են անմեղ բնակչության մեծ մասին» (նույն տեղը, էջ 350): Մի այլ հեռագրում (1915 թ. մայիսի 25-ին) ամերիկյան դեսպանը գրում էր. «Պատիվ ունեմ տեղեկացնելու Ձեզ այն քաղաքականության մի քանի ասպեկտների մասին, որին հետևում է ներկա կառավարությունը հայ համայնքի նկատմամբ: Նրա հետ վարվելակերպը, որն արդեն կոպիտ կերպով շեղվում էր թուրքական հեղափոխության ժամանակներից ի վեր, պատերազմի հետևանքով ընդունել է բացահայտորեն անբարենպաստ ընթացք: Եվ դա ճիշտ է, որ ներկա օսմանյան կառավարությունը հայերին այլևս չի համարում իր օրինական հպատակներ»: Այնուհետև նա տեղեկացնում էր, որ «կառավարությունը անփոփոխ կերպով ժխտում է փաստերը կամ դրանք ամբողջությամբ աղավաղում»: Վերջում դեսպանը երկյուղ էր հայտնում, որ ստեղծված իրադրությունը «հեշտությամբ կարող է հանգեցնել ամենածանր և ամենատխուր հետևանքների» (նույն տեղը, էջ 353—354):

Եվ, իսկապես, շուտով՝ 1915 թ. հուլիսի 10-ին, Հենրի Մորգենթաուն, հենվելով ամերիկյան հյուպատոսների զեկուցագրերի վրա, պետական դեպարտամենտ է ուղարկում հետևյալ բովանդակությամբ խիստ գաղտնի հեռագիրը. «Հայերի հետապնդումը կրում է անհամեմատելի մասշտաբներ: Ամենատարբեր շրջաններից ստացվող զեկուցագրերը վկայում են սիստեմատիկ փորձերի մասին, որոնց նպատակն է խաղաղ հայ ազգաբնակչությունը արմատախիլ անել կամայական ձերբակալությունների, սարսափելի խոշտանգումների, զանգվածային տեղահանությունների, կայսրության մի տեղից մեկ ուրիշը բռնի տեղափոխման ճանապարհով, որոնք ուղեկցվում են բռնությամբ, թալանով ու սպանություններով և որոնք ընդունում են ջարդի մասշտաբներ, հանգեցնում են հայերի ոչնչացմանը» (նույն տեղը, էջ 360):

Թուրքական կառավարողների հետապնդած վերջնական նպատակների, հայ ժողովրդի վերացման գոյություն ունեցող պլանի մասին հաղորդում էին իրենց զեկուցագրերում Օսմանյան կայսրության տարբեր շրջաններում գտնվող ԱՄՆ-ի հյուպատոսական ներկայացուցիչները: Այսպես, Հալեպում ամերիկյան հյուպատոս Ջ. Ջեքսոնը, զեկուցելով Սիրիա հասած տեղահանված հայերի շարասյուների աղետալի վիճակի մասին, եզրակացնում էր. «Անկասկած է, որ խոսքը գնում է մանրակրկիտ կերպով մշակված պլանի մասին, որը նպատակ ունի հայ ցեղի լրիվ բնաջնջումը» (նույն տեղը, էջ 365):

Պետք է ավելացնել, որ հայկական տեղահանությունների հարցին Հենրի Մորգենթաուն առավել հանգամանորեն անդրադարձել է 1918 թ. լույս տեսած իր հուշերում, որտեղ նա մասնավորապես նշում էր. «Եթե նույնիսկ նա (թուրքական կառավարությունը— Ռ. Ս.) ձեռնարկած լիներ նման մի տեղահանություն բարի նկատառումներով, ապա նույնիսկ դա կլիներ դաժանության ու անարդարության գագաթնակետ, բայց հարցն այն է, որ թուրքերը երբեք էլ չէին մտածում այն մասին, որ հայերին թույլ տան իրենց համար նոր կյանք ստեղծելու այդ նոր երկրում: Նրանք գիտեին, որ հայերի ճնշող մեծամասնությունը ոչ մի դեպքում չի հասնի իր նշանակված կետին, իսկ նրանք, ովքեր կհասնեն, կամ կմեռնեն ծարավից ու քաղցից, կամ կսպանվեն անապատում բնակվող մահմեդական վայրենի ցեղերի կողմից: Տեղահանության իսկական նպատակն էր թալանն ու ոչնչացումը. դա իսկապես ջարդի նոր մեթոդ է: Երբ թուրքական իշխանությունները հրաման էին արձակում այդ տեղահանությունների մասին, նրանք դա հիանալի կերպով հասկանում էին և ինձ հետ ունեցած խոսակցության ժամանակ առանձնապես փորձ չէին անում թաքցնելու այդ փաստը» (*Ambassador Morgenthau s story*, *p.* 309):

Ամերիկյան դեսպանը եզրակացնում էր. «Թուրքական կառավարության հավաստիացումներն այն մասին, որ իբր ինքը լրջորեն նպատակադրվել էր «հայերին տե-

ղափոխել իրենց նոր վայրերը», անհեթեթություն են: Ջինված պահակախմբի ուղեկցությամբ շարասյուների նկատմամբ վերաբերմունքը հստակ կերպով ցույց է տալիս որ Էնվերի ու Թալեաթի իսկական նպատակն էր ոչնչացնել հայերին» (նույն տեղը, էջ 318):

Հայերի տեղահանության հարցը շոշափել է նաև դոկտոր Լեպսիուսը 1921 թ. հունիսի 2—3-ին Բեռլինում կայացած դատավարության ժամանակ, որը քննում էր ժողովրդական վրիժառու Սողոմոն Թեհլերյանի կողմից արյունարբու դահիճ Թալեաթի սպանության հարցը: Հանդես գալով դատարանում իր վկայություններով, դոկտոր Լեպսիուսը մասնավորապես հայտարարեց հետևյալը. «Համընդհանուր տեղահանության մասին որոշումը կայացրեց երիտթուրքական կոմիտեն, այդ մասին հրամանը արձակել էր ներքին գործերի մինիստր Թալեաթ փաշան (ռազմական մինիստր Էնվեր փաշայի հետ համատեղ): Հայերի տեղահանությունը իրականացվեց երիտթուրքերի հատուկ կազմակերպության օգնությամբ...

Ի՞նչ էր նշանակում այդ տեղահանությունը:

Թալեաթ փաշայի կողմից ստորագրված հրամանում կան հետևյալ խոսքերը. «Տեղահանությունը ոչնչացում է»:

Ամեն ինչ տեղի էր ունենում այդ հրամանի համաձայն...

Պաշտոնապես հայտարարվում էր, որ այդ տեղահանությունները սոսկ նախազգուշական միջոցներ են, սակայն առանձին հեղինակավոր անձինք միանգամայն բացեիբաց խոստովանում էին, որ տեղահանության նպատակը հայ ազգի ոչնչացումն է...» (*Der Prozess Talaat Pascha. Berlin*, 1921, *S.* 56—57):

Եվ այսպես, վերը մեջբերված հավաստի, ոչ մի լուրջ պատմաբանի կողմից չհերքված փաստաթղթերը մերկացնում են հայկական ցեղասպանության պատմության կեղծարարների փաստազուրկ պնդումները և անառարկելիորեն վկայում, որ հայերի զանգվածային տեղահանությունը ամբողջ մի ժողովրդի ոչնչացման սոսկ քողարկված եղանակն էր:

(Շարունակությունը՝ հաջորդ համարում)

---



# ՄԵՆԱԿ ՉԵՆ ՑԱՎԻ ՈՒ ՀՈԳՍԵՐԻ ՀԵՏ

**Ա. ԱՎԱԳՅԱՆ**

1988 Թ. ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ տարերային աղետը մեծ վնաս պատճառեց նաև Գուգարքի շրջանին: Ավերվեց կամ վթարային դարձավ բոլոր գյուղերի բնակելի շենքերի, արտադրական ու սոցիալ-կուլտուրական օբյեկտների 70 տոկոսը, հազարավոր ընտանիքներ մնացին անօթևան: Երկրաշարժից տուժեցին ինը դպրոց, յոթ մանկապարտեզ, տասնհինգ բուժկետ, մշակույթի բազմաթիվ օջախներ: Մեծ վնաս կրեց ագրոարդյունաբերական համալիրը: Զրույցի ժամանակ ժողովրդական դեպուտատների Գուգարքի շրջխորհրդի գործկոմի նախագահ Հրահատ Նազարյանն ասաց, որ միայն գյուղատնտեսական նշանակության ավերված հիմնական միջոցների արժեքը կազմում է 14,8 միլիոն ռուբլի, իսկ ճյուղին հասած ընդհանուր վնասն անցնում է 80 միլիոնից: Բավական է նշել, որ անասնապահական 91 շենքից 52-ը փլվել էր, մնացածը վթարային էր: Երկրաշարժի հենց առաջին օրը ոչնչացվել էին 596 տավար և 541 ոչխար: Գոմերի բացակայության պայմաններում անասունները փրկելու նպատակով 1.918 գլուխ տավար և 6.428 գլուխ ոչխար պահ տրվեցին հանրապետության տարբեր շրջանների: Փաստորեն շրջանը զրկվեց անասնապահական մթերքներ արտադրելու հնարավորությունից: Հալավարը, Լեռնապատը և Արջուտը, որպես տնտեսական միավորում, լրիվ դադարել էին գոյություն ունենալուց, յոթ տնտեսությունում խաթարվել էր արտադրության կանոնավոր ընթացքը:

Բայց սա դեռ բոլորը չէ, ինչ որ թվարկեց նախագահը, ճյուղն ավելի ծանրակշիռ կորուստ է կրել. դա հարյուրավոր պրգավանդ հեկտարների հատկացումն է Կիրովականի քաղաքաշինության նպատակին: Պետշինի ղեկավարների ու մասնագետների անկշռադատ որոշման հետևանքով միայն Բազումի տնտեսությունից ավելի քան 800 հեկտար ոռոգելի հողատարածություն վերածվել է շինհրապարակի: Դա նշանակում է տնտեսության արտադրական կարողությունները կրճատել շուրջ 60 տոկոսով: Այդ բարեբեր հեկտարները Ղշլաղի տարածքում են և առատ եկամուտ էին բերում տնտեսությանը: Հիմա այդ հատվածներում կառուցվում է Կիրովական քաղաքի Տարոն միկրոշրջանը: Գուգարքի տնտեսություններից Կիրովականը «խլել» է ավելի քան 550 հեկտար հողատարածություն, բայց դրանով չի սահմանափակվել. այսօր էլ Կիրովականի և Գուգարքի կուսակցական ու խորհրդային մարմինների ղեկավարները ակտիվ վեճեր են շարունակում հողերի շուրջ: Առաջինները նոր հեկտարներ են պահանջում, Գուգարքը մերժում է: Եվ վեճը չի լուծվում:

— Վիճելու հարց չկա,— զրույցը շարունակում է շրջխորհրդի նախագահը,— փոքրիկ Դարբասն իր ընտիր վարելահողերից 160 հեկտար է տրամադրել քաղաքաշինությանը, բայց նրանից դարձյալ հող են ուզում: Իսկ նա ի՞նչ միջոցներով պիտի գոյություն ունենա որպես տնտեսություն և կերակրի իր աշխատավորին: Ես հիմքեր չեմ տեսնում քաղաքի ղեկավարների հողապահանջման միտումներում: Ավելի ընդունակ. մեզնից 20 հեկտար հող են պահանջում մանկավարժական, պոլիտեխնիկական ինստիտուտների և ասֆալտի գործարանի կառուցման համար: Այնինչ բանից պարզվում է, որ պոլիտեխնիկական ինստիտուտի շենքը ամրացման ենթակա է, չի քանդվելու: Բայց չէ որ կիրովականցիներն այդ փաստն ինձնից լավ գիտեն: Մեկ ուրիշ փաստ. հիվանդանոցի կառուցման համար պահանջվում է 85 հեկտար հողամաս, այնինչ նախագծով վեց հեկտար է նախատեսված: Երկուստեք շահավետ կլիներ, եթե Կիրովականը զարգանար ոչ թե Ղշլաղի ու Գուգարքի պրգավանդ հողերի հաշվին, այլ դեպի հյուսիս, ուր հարյուրավոր անմշակ հեկտարներ կան: Այդ դեպ-

---

*ԱՎԱԳՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ ԱՐՇԱՎԻՐԻ— «Հայաստանի ագրոարդյունաբերություն» հանդեսի գլխավոր խմբագրի տեղակալ։*

# ՀՈԳՈՒ ՀԱՅՐԵՆԻՔ

**Է. ԱՎԱԳՅԱՆ**

ԱՍՈՒՄ ԵՆ, ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՆՈՒՄ Է պարույրաձև, վերընթաց, հաճախ կրկնում է իրեն: Չգիտեմ, ուրիշ երկրների պատմությունն ինչպես, բայց Հայոց պատմությունը զարգացել է պարույրաձև, դժվարին վերընթացով, զիգզագներով, կրկնություններ շատ է տեսել, դաժան, արյունոտ կրկնություններ, ցեղասպան կրկնություններ, որոնցից, ցավոք, ոչ անցյալում, ոչ էլ հիմա՝ ներկայումս շատ քիչ դասեր է քաղել: Իսկ պատմության դասերը, մանավանդ Հայոց պատմության դասերը, իրենց դաժանությամբ հանդերձ, շատ են ուսանելի նորից չսխալվելու համար:

Հայաստան երկրի համար դարը սկսվեց ահավոր, աննախադեպ նախճիրներով, կոտորածով, արյունով և ահա իր ավարտին է մոտենում նույն սահմռկեցուցիչ կորուստներով. կորուստ հողի, ցեղի, մշակույթի և, որ ամենաասարսափելին է, հոգու և հոգեկանի: Իսկ այդ կորուստները նրանից են, որ պատմության մեր սխալները չենք հասկացել, չենք վերանայել և շարունակել ենք չհավատալ մեր ուժերին, հույսներս դրել ենք ուրիշների վրա ու հետո չարաչար զղջացել:

Մեծ մարդասեր ու հայասեր Ֆրիտյոֆ Նանսենը իր մի գիրքը, որ լույս է տեսել դարասկզբին և նվիրված է հայկական դատին, անվանել է «Խաբված ժողովուրդ»: Այդ ժողովուրդը մենք ենք:

Դարասկզբին էլ խաբվեցինք, հույսներս դնելով մեծ տերությունների վրա, դարավերջին էլ խաբվում ենք մեր ամենապայծառ, մշտամնա իղձերի ու երազանքների կատարմանը տանող փակուղիներում:

1908 թվականին, երբ հռչակվեց երիտթուրքերի սահմանադրությունը իր խաբեական կարգախոսով՝ ազատություն, հավասարություն, եղբայրություն, մենք՝ հայերս, հավատացինք, հուսացինք, բայց 1915 թվականը ցույց տվեց, թե ինչի կարող է հանգեցնել մեր միամիտ, պատմական դասերից չիմաստնացած դիվանագիտությունը:

«Եվ եկան օրեր ավելի դժնի՝ «կոլեկտիվացում», «գլխապտույտ հաջողություններ», «ժողովրդի թշնամիներ», համատարած ՎԱԽ, հետո նորից խաբեության տարիներ, ճահճացում, կորուստնե՜ր, կորուստնե՜ր անվերջ ու անսահման:

Դեռ հին ցավը չամոքած, դեռ ուժ ու գաղափար չգտած, մեր հոգին անսպասելի ջերմացավ նոր կարգախոսներից՝ վերակառուցում, հրապարակայնություն, դեմոկրատիա, և առաջիններից մեկը մեր խաբված ժողովուրդն էր, որ հավատով փողոց ելավ տարփողելու՝ «Լենին-կուսակցություն-Գորբաչով» լոզունգը: Մենք էինք, Արցախի մի բուռ ժողովուրդը, որ դարձյալ հավատաց ազգերի լենինյան ինքնորոշման սկզբունքին և որոշեց մի անգամ էլ, 1988 թվականին գործել սահմանադրականորեն, ազգային խղճի թելադրանքով:

Բայց նորից իր չարաբաստիկ կրկնությամբ մեր դեմ ելավ պատմությունը, այն էլ շատ արագ մի հոլովույթով: Հենց նույն թվականին իրագործվեց երկրորդ ահավոր եղեռնը՝ սումգայիթը, նորից ի ցույց դնելով կրկնվող սխալները: Նորից զոհեր, երբ պատերազմ չկա, այն էլ որտե՞ղ, ամենադեմոկրատական մեր պետության մեջ: Արցախի հարցը ձգձգվեց, դարձավ իր լուծմանն սպասող գորդյան մի հանգույց:

Սումգայիթի եղեռնից դեռ շատ առաջ, հիշում եմ, Արցախից մի պատվիրակություն գնաց Մոսկվա: Կենտկոմում եղավ հանդիպում, որտեղ նրանք առաջարկեցին

---

ԱՎԱԳՅԱՆ ԷԴՈՒԱՐԴ ՍԱՄՎԵԼԻ— ՀՍՀՄ գրողների միության անդամ:



իրենց մեկ և միակ նպատակը, որի էությունը մի պարզ նմանակությամբ հետևյալն էր. խորթ մոր ձեռքին տանջվող մեր հայ զավակները ուզում են վերադառնալ հարազատ մոր գիրկը: Շատ պարզ ու իր պարզության մեջ մարդկային մի ցանկություն: Եվ երբ տղաներից մեկը բանաստեղծական մի հարց տվեց քարտուղարին՝ «Դրան հասնելու համար գոնե մի փոքրիկ, վարդագույն հույս կա՞», պատասխանը եղավ՝ «Կա՛, բայց ոչ թե փոքրիկ ու վարդագույն, այլ մեծ ու կարմիր»:

Եվ եղավ այդ «մեծը» և «կարմիրը»: Սումգայիթի եղեռնին հաջորդեցին Կիրովաբադի, Խոջալուի ջարդերը, և դեպքերը հասան մինչև մեր հողը՝ Մասիս ու Ջվարթուն: Եվ նորից զոհեր, նորից մեծ կորուստներ, արյուն ու դեմոկրատիայի ոչ մի հույս:

Եվ որպեսզի երկնժարեն բարբարոսների անագորույն արարքները և զոհին մեղադրեն դահճին հավասար, մեջտեղ քաշվեց տխրահռչակ «տարածքային պահանջի» անհիմն ու մտացածին վարկածը, մի կողմ թողնելով ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքը:

ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. սեպտեմբերյան պլենումում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Հարությունյանը այս առիթով ասաց. «Ռեգիոնի իրադրությանը դրամատիզմ ու սրություն է հաղորդում Լեռնային Ղարաբաղի արնածոր վերքը: ԼՂԻՄ-ի հարցը Հայաստանի և Ադրբեջանի տերիտորիալ վեճի առարկան չէ, այն առաջադրվել է ոչ թե Հայաստանի կողմից, այլ հենց Լեռնային Ղարաբաղի ժողովրդի կողմից: Այն պետք է դիտել միայն որպես ժողովրդի ինքնորոշման հարց»:

«Չպետք է լինեն հաղթողներ ու հաղթվողներ»,— հայտարարեց Մ. Գորբաչովը բազմիցս: Բայց եղան սպանողներ ու սպանվողներ, թալանչիներ ու թալանվողներ, լլկողներ ու լլկվողներ. մի ահավոր անարդարություն «հաղթող» և «հաղթվող» հասկացությունների միջև, որը նույն հաջողությամբ շարունակվում է մինչև օրս, քանզի սպանողը, թալանչին, դահիճը չկանգնեց օրենքի առաջ, սումգայիթին չտրվեց քաղաքական գնահատական: Եվ սանձարձակ «ժողովրդական ճակատը» նորից թափեց մեր ժողովրդի, անմեղ մարդկանց արյունը՝ այս անգամ արդեն 1990 թվականի հունվարի 13-ին: Նորից եղեռն, մի բառ՝ խոր ընդհանրացումով, որից այնքան խուսափում են վերևներում, մեր Բարձր Դռան պարագլուխները: Ինտերնացիոնալ Բաքվում օրը ցերեկով մարդկանց ու աշխարհի աչքև մորթվեցին նրանք, որոնց մեղքը միայն հայ լինելն էր: Նորից անպատվվեց համայն մարդկության խիղճը: «Մեր քույրն է, որ մեռնում է Արևելքում, և մեռնում է այն պատճառով, որ մեր քույրն է: Նրա հանցանքն այն է, որ բաժանել է մեր զգացումները, սիրել է այն, ինչ սիրել ենք մենք, մտածել է այնպես, ինչպես մտածում ենք մենք, հավատացել է նրան, ինչին հավատում ենք մենք, և մեզ նման գնահատել է իմաստությունը, արդարությունը, պոեզիան, արվեստը: Այս է եղել նրա անքավելի մեղքը»,— գրել է Անատոլ Ֆրանսը տարիներ առաջ, 1915 թվականի եղեռնի օրերին:

Մի քանի օր շարունակ «Գորշ գայլերի» զավակները արյան խրախճանք կատարեցին Բաքվում, որտեղ հիմնականում մնացել էին ծերերն ու կանայք, երեխաները, քանի որ ջահելները գնացել էին իրենց և նրանց համար հանգրվան գտնելու անորոշ հեռուներում:

Չէ՛, այստեղ էլ չեղան «հաղթողներ» ու «հաղթվողներ»: Այստեղ միայն տապալվեց դեմոկրատական հավասարության ձգտող այն մարդկանց երազանքը, որը լուսավորվել էր վերակառուցման կարգախոսով:

Մենք նորից սխալվեցինք: Հավատացինք եղբայրության քարոզներին և կրկին տեսանք, թե մարդասպանի կեռ յաթաղանը ինչպես է փոխարինվել ավտոմատներով, գնդացիրներով, նռնակներով ու դրամական չեկերով:

Այս դաժան օրերին ինչպե՞ս չհիշես մեծ հայրենասերի՝ Հովհ. Թումանյանի մի քառյակը.

*Բերանն արնոտ Մարդակերը էն անբան,*
*Հազար դարում հազիվ դարձավ Մարդասպան.*
*Ձեռքերն արնոտ գնում է նա դեռ կամկար,*
*Ու հեռու է մինչև Մարդը իր ճամփան:*

Հայաստանի պատմությունը կրկնվում է ոչ միայն իր դաժան հարևաններից ստացած վերքերով ու արյունով, կոտորածով ու նախճիրով, այլ բնության սոսկալի արհավիրքներով: Աղետալի երկրաշարժը անագորույն թշնամու նման քարուքանդ արեց մեր փոքրիկ հայրենիքի գրեթե մեկ երրորդը, կործանվեցին շեն քաղաքներ,

գյուղեր, զոհվեցին բազմաթիվ մարդիկ: Նորից որբանոցները, այս էլ քանիերորդ ան-
գամ, լցվեցին որբերով:

Ասում են, դժբախտության մեջ է երևում բարեկամը: Ես կավելացնեմ՝ նաև թըշ-
նամին: Եվ պարզվեց, որ հայը շատ բարեկամներ ունի երկրագնդի համարյա թե
բոլոր ծագերում: Մեզ աննախադեպ օգնության ձեռք մեկնեցին ոչ միայն մեր Միու-
թյան բազմաթիվ ժողովուրդները, այլև իսկական համաժողովրդական մի շարժում
սկսվեց արտասահմանում: Իսկ Ադրբեջա՞նը... այնտեղից «օգնության» եկան ու-
րախ, շնորհավորական հեռագրերը՝ մեր ազգային դժբախտության առիթով, կոտըր-
ված, թալանված վագոններ ու վերջապես՝ տնտեսական շրջափակումը:
Սա լոկ շրջափակում չէ, սա անմարդկային, սպանիչ պաշարում է, որի միակ նպա-
տակը ոչ թե մեկ-երկու մարդ, այլ մի ամբողջ ժողովուրդ սպանելն է. պանթուրքական
մի երազանք, որը հիմա ցանկանում են իրագործել «Ազգային ճակատի» մոլեռանդ
բաշիբոզուկները: Այստեղ ազգային ոչինչ չկա: Կա՛ն միայն ազգայնական, այսինքն՝
շովինիստական նկրտումներ, որը կապվում է միայն կռվի, թալանի ու ավերմունք-
ների հետ: Օրավուր քայքայվում են Հայաստանի տնտեսությունը, արդյունաբերու-
թյունը, տրանսպորտը: Ամենասարսափելին աղետի գոտու վիճակն է. երկրաշարժից
անօթևան մնացած մարդիկ շարունակում են անապահով կյանքը բաց երկնքի տակ,
բիրտ հարևանի կամքով, չնայած ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը իր նստաշրջանում
որոշում ընդունեց անմիջապես վերացնել շրջափակումը: Ընդունվեց և բավարարվեց
այսքանով, նորից ազատ արձակելով դահճի առանց այն էլ ազատ ձեռքերը:

Բայց հայը դեռ ամուր է, հայը դեռ գոյատևում է ի հեճուկս իր բոլոր թշնամի-
ների: Այդ գոյատևումը ոգու ուժի մեջ է, վկան՝ մեր դիմացկունությունը: Այս ոգու
հաղթանակի մասին է Վ. Տերյանը գրել.

*Որպես լեռն է մեր պայծառ տեսել հազար ձյուն,*
*Այնպես նոր չեն մեզ համար դավ ու դառնություն։*
*Բաբելոնն է եղել մեր ախոյանը՝ տե՛ս,*
*Անհետ կորել, անցել է չար մշուշի պես։*
*Ասորիքն է եղել մեր թշնամին— ահա,*
*Դաշտ է տեղը և չկա քար քարի վրա։*
*Ամրակուռ է մեր հոգին— դարերի զավակ,*
*Շատ է տեսել մեր սիրտը ավեր ու կրակ...*

«Իզվեստիայի» թղթակիցներից մեկը այսպիսի դեպք է պատմում. Բաքվի հի-
վանդանոցներից մեկում, մահամերձ մի ծեր կին, վերջին պահին ոչ հարազատնե-
րին է հիշել, ոչ բարեկամներին: Նա մահամերձ իր շրթունքներով շշնջացել է միայն՝
«Ղարաբաղը մերն է ու մերը կլինի»: Օտարները մեզ չեն հասկանա: Գուցե այս պա-
ռավին կհամարեն ֆանատիկ, բայց ճշմարտությունն այն է, որը կոչվում է «արյան
ձայն», իսկ այդ ձայնը լռեցնելը, առավել՝ կտրելն ու ոչնչացնելը, ոչ ոքի չի հա-
ջողվի: Ոչ, սա հողային պահանջ չէ, հազար անգամ ո՛չ, սա Հոգու պահանջ է
միայն:

Մեր ժողովուրդը դատապարտեց ու չընդունեց անցյալ տարվա նոյեմբերի 28-ին
ԽՍՀՄ Գերագույն խորհրդի ընդունած որոշումը: Այս բոլոր խժդժություններից հետո,
որ եղան Սումգայիթում, Կիրովաբադում, Խոջալուում, Բաքվում, վերջապես խորհըր-
դա-իրանական սահմանի վրա, երբ «Ազգային ճակատի» հրահրած կռիվները հա-
սան բուն Հայաստանի տարածքը՝ սկսած Երասխից մինչև Իջևան, մինչև Գորիս ու
Մեղրի, մեր ժողովուրդը չի հաշտվի ու չի հաշտվելու այն գաղափարի հետ, որ ա-
մեն ինչ մնալու է այնպես, ինչպես եղել է, որ Ղարաբաղը նորից իր վզին է առնելու
Ադրբեջանի դաժան, ահավոր լուծը, որը քաշել է յոթանասուն տարի շարունակ:
Թող զինվորները շրջափակեն խաղաղ մարդկանց, ազատ թողնելով դահիճներին,
թող Ադրբեջանի վրա փողփողա թուրքական դրոշը, թող նախկին մուսավաթական-
ները այրեն իրենց կուսակցական տոմսերը և տապալեն խորհրդային կարգերը՝ ի-
րենց մոտ, վերջապես թող հանեն հայոց դրոշը Ղարաբաղի մարզկոմի շենքի վրա-
յից, բայց միևնույն է, ժողովուրդը, մանավանդ ղարաբաղցին, ծնկի չի գա:

«Եվ եթե արտակարգ դրություն չմտցվեր սկզբում Լեռնային Ղարաբաղի և սահ-
մանակից մի քանի շրջաններում, իսկ հետո՝ Բաքվում, ապա կթափվեր արդեն ոչ
միայն հարյուրավոր, այլև տասնյակ հազարավոր մարդկանց արյունը»,— 1990 թ.
փետրվարի 5-ի իր զեկուցման մեջ հայտարարեց Մ. Գորբաչովը, ասես այդ եղեռնը



տեղի էր ունեցել ոչ մեր ժամանակներում, ոչ մեզ մոտ, այլ գաղութային երկրներից
ինչ-որ մեկում:

Եվ սկզբից սկսած մինչև այսօր ցանկանում են կշեռքին դրած՝ հայկականը հա-
մազորել ադրբեջանականին: Ստեղծել սադրիչ պայմաններ Հայաստանում, մեղադրել
երկու կողմին, որ ոչ ոք հաղթող ու հաղթված չլինի: «Գլխավոր դասը այն է, որ
ազգերի ու ազգամիջյան հարաբերությունների զարգացման բոլոր հարցերը պետք
է լուծվեն վերակառուցման, հասարակության նորացման դեմոկրատական երկխո-
սության միջոցով: Ուժով, տեռորի մեթոդներով ժողովուրդներին ահաբեկելու և իշ-
խանության վրա ճնշում գործադրելու փորձերը դեպի քաոս տանող ուղիղ ճանա-
պարհ են, դրանից բխող բոլոր հետևանքներով հանդերձ,— ասվեց նույն զեկուցման
մեջ, դարձյալ փորձ անելով հավասարակշռել երկու հանրապետություններին, բայց
իրականում կատարվեց թերակշռում՝ ի վնաս Հայաստանի: Այդ մենք էինք, որ փոր-
ձեցինք վերակառուցման ու դեմոկրատիայի ճանապարհով, սահմանադրությամբ
տրվող ինքնորոշման իրավունքով՝ լուծել Արցախի գորդյան հանգույցը: Այդ նրանք
էին՝ Ադրբեջանի «Ազգային ճակատը» և նրան սատարող իշխանությունները, որ
ցանկացան հարցը լուծել ուժի դիրքերից, ժողովուրդներին ահաբեկելու ճանապար-
հով: Բայց այդ բանը նրանց չհաջողվեց: Նրանք միայն ահաբեկեցին իրենց ճոճռան
աթոռներից կառչած մի խումբ պաշտոնյաների, որոնք փորձելով կոծկել այդ բո-
լորը, չեն ուզում տեսնել իսկական չարիքի մեղավորներին:

Ծատ արհավիրքներ տեսանք մենք այս երկու տարում: Տեսանք, տարանք և
ամրացանք: Եվ մեր ուժը, Հայոց ուժը իր անսասան Հոգու մեջ է: Վկան՝ նորին մե-
ծություն Պատմությունը: Ինչ որ տեղ ճաք տվեց, նույնիսկ փլվեց մեր հավատի շեն-
քը, բայց հոգին, հայոց դիմացկուն ու աննկոր հոգին դեռ հաստատուն է: Վ. Տերյանը
Հայաստանը համարում է «Յոթնապատիկ խոցված տիրամայր»: Ցավոք մեր վեր-
քերը հիմա ոչ թե յոթն են, այլ ութը, ինը, բազում: Մարմնի վերքերը շատ են, ար-
յան կորուստը շատ, բայց մեր ճաք տված հոգին դեռ իր մեջ պահում է ազնիվն ու
բարին, պահում ապագայի լավ օրերի հույսը: Ահա այդ ոգու մասին է գրել ֆրան-
սիացիականավոր հայագետ, մեր ժողովրդի բարեկամ Ա. Մեյեն. «Հայերը չեն ու-
նեցել իրենց պատկանող ուժ, չեն ունեցել իրենց սեփական կառավարությունը, բայց
իրենց համար ստեղծել են **ազգային ոգի,** այն ապրում է նրանց հուշարձաններում,
նրանց եկեղեցու մեջ, որը ոչ մի այլ եկեղեցու չի նմանվում. այն ապրում է նրանց
գրականության մեջ, որն ունի իր սեփական լեզուն, իր առանձնահատկությունները.
և հայ պետականության բացակայությունը, ամեն մի սեփական իշխանության կո-
րուստը երբեք չի կարողացել խախտել ազգային զգացումը, որն իր գոյությունը
պահպանել է դարերի միջով: Վրա են հասել բոլոր դժբախտությունները, իրենց
զգալ են տվել բոլոր հալածանքները, սակայն ազգը երբեք չի մոռացել, որ ինքը
գոյություն ունի իրենով և ունի իր սեփական **ոգին»:**

Ոգին ծնունդն է Հոգու: Եվ եկել է ժամանակը կերտելու մեր Հոգու հայրենիքը՝
առայժմ մի կտոր հայ հողի վրա:

Այս դաժան օրերին, ինչպես երբեք, մեզ միասնություն է պետք, իսկական ազ-
գային **Հոգևոր միասնություն:** Դա ամենից առաջ դեմոգրաֆիկ միասնությունն է: Չա-
րիքին հակակշռող բարին այն էր, որ նախ՝ Հայաստանը մաքրվեց, միատարր դար-
ձավ և, երկրորդ՝ երկրաշարժից մեզ հասած մարդկային կորուստները համալրվեցին:
Հայերը տուն դարձան: Բայց դա հայրենադարձություն չէր, այլ նախճիր ու բռնա-
գաղթ: Դժվար է հավատալ, որ մեր օրերում, խորհրդային պետության մեջ կարող
են բռնագաղթվածներ լինել, փախստականներ, ինչպես ասենք եղավ մեծ եղեռնի
ժամանակ: Երկրաշարժի զոհ գնացածներին այսպիսով եկան փոխարինելու փախըս-
տականները՝ մոտ երեք հարյուր հազար մարդ: Մի դժվարությանը, անօթևան մնա-
ցածներին, ավելացան նորերը: Ավելացան նոր հարցեր, նոր պրոբլեմներ. գյուղից
խուսափելը, շրջափակման դժվարությունները: Հայաստանում ծայր առավ մարդա-
սիրական շարժումը. գթասրտություն, որբերին օգնող ձեռնարկումներ, սփյուռքի օգ-
նությունը: Սակայն ժամանակը, իրադրությունը պարտադրում են, որ ամեն հարցում
ինքներս մեզ վրա պիտի հույս դնենք, ինքներս մեզ պիտի նեղություն տանք, շե-
նացնենք դատարկ գյուղերը, նորերը շինենք, թվով ավելանանք, քանզի ազգապահ-
պանման առաջին հարցը ժողովրդի հավաքականությունն է, միատեղ ապրելը:

Սփյուռքում հայերը որքան էլ լավ ապրեն, նրանց հայացքը, այնուամենայնիվ
Հայաստանի կողմն է, Մասիսի կողմը: Մեզ տնտեսապես ամրանալ է պետք: Զար-
գացնել արդյունաբերությունը, ուժեղացնել գյուղատնտեսությունը, հասնել այն բա-
նին, որ հանրապետությունում ստեղծվեն ազատ ձեռնարկչության գոտիներ: Մեզ

տնտեսական օգնություն ու զարգացում է պետք։ Դրա անհրաժեշտությունը առավել քան զգացինք շրջափակման ժամանակ։ Մեզ կոմունիկացիաներ են պետք, կապ՝ արտաքին աշխարհի հետ։ Այս և նման հարցերում պետք է միասնական լինել, քաղաքականապես ավելի հեռատես։ Այլախոհությունը, որի համար մի ժամանակ մարդիկ մեղադրվում էին, մեր օրերի բազմակարծությունը (պլյուրալիզմը), այնքան էլ մեծ անջրպետով չեն իրարից բաժանված։ Իհարկե, չպետք է մտածել իրար նման, պետք է այլախոհ լինել կյանքի տարբեր հարցերում, բայց այդ պրոբլեմների հանգուցում, գործն ի կատար ածելու խնդրում, հայը պետք է մի նպատակ ու մի կիզակետ ունենա, լինել հոգով միասնական, ապրել հայ հողի վրա, ունենալ **Հոգու հայրենիք**։

Ինձ համար, որպես գրողի, այս բոլորից հետո հիմա մեծ ցավ է այսպես կոչված հայրենափախությունը։ Այստեղ չեմ կարող չխոսել այդ հարցի մասին, որը քանի գնում ահագնանում է ու վտանգում Հոգու հայրենիքի գաղափարը։

1946 թվականին սկսվեց իր նախորդը չունեցող հայահոծ հայրենադարձությունը։ Հիշում եմ, վերադարձողները կռանում, համբուրում էին մայր հողը, հիանում չինչ երկնքով, Սևանով, Արարատով, մայր Երևանով։ Եվ ահա այս դժվարին օրերին, նույնպես հոծ զանգվածներով հայերը նորից բռնել են օտարության ճանապարհը, իրենց արդարացնելով կյանքի վատ պայմաններով, որոշ մարդկանց օրինազանց գործերով և, ի վերջո, փորձում են «մեղմացուցիչ դեպք հանցանանցը» գտնել հայկական ամենաքստմնելի ասացվածքով՝ «Որտեղ հաց, էնտեղ կաց»։ Մի երևույթ, որը ոչ մի դրական բան չի տվել ո՛չ Հայաստանին, ո՛չ հային, որը թափառել է այս լայն աշխարհում, անցել ծագից ծագ, գուցե գտել շատ բան՝ հարստություն, ապահով կյանք ու լիություն, բայց չի գտել մի բան, որ կոչվում է Հայրենիք։ Ուրեմն չի գտել իր հոգին։ Եվ ու՞ր մնաց մեր մեծերի խոսքը. «Մարդը ապրում է ոչ միայն հացիվ»։ Մեր հաց հանապարզօրյան այսօր մեր միասնությունն է, մեր հայրենասիրությունը, մեր «յոթնապատիկ խոցված» երկրի վերքերը միասին բուժելը։ Խորտակվող նավից առնետները փախչում են։ Ո՛չ այդպես չէ, երբե՛ք։ Մեր նավը ճիշտ է, այսօր վնասվել է, կողերը ծակոտվել են, բայց կայմերը դեռ ամուր են, ուժեր կան, որոնք չեն լքում նավը, կա մեր դրոշակը և ով չի կանգնում այդ դրոշակի տակ, մանավանդ փորձության այս ժամին, նա իրեն հայ կոչել չի կարող։ Նա դավաճան է, ինչպես դավաճան էր նա, ով Ավարայրի ժամանակ, Սարդարապատի կռվին գցել է զենքը ու թողել մարտադաշտը։

Նեղություն է պետք, որ երևա ժողովրդի հոգին, երևա նրա միասնությունը։ Քանի՞ անգամ կրկնենք մեծն Չարենցի մարգարեական խոսքերը և չկատարենք։

Չնայած մեծ երկրաշարժի տված մեծ վերքերին, որ բուժվում են և դեռ երկար պիտի բուժվեն, չնայած Սումգայիթի ու վերջապես Բաքվի ցեղասպանությանը, որի մեղավորները դեռ սպասում են իսկական ժողովրդական դատաստանին, չնայած վայրագ շրջափակումին ու հայ անունի և հայ լինելու դեմ սկսված ընդհանուր, ինչ-որ տեղ գուցե նաև կրոնական հենք ունեցող հետապնդումներին ու վայրագություններին, ՄԵՆՔ դեռ պիտի շատանանք, ուժեղանանք ու հարատևենք։

Մեզ, կրկնում եմ, տնտեսական հզորություն է պետք, գիտության ու տեխնիկայի նվաճումներ, աշխարհի հետ կապի նոր միջոցներ, իսկ դրա համար աշխատանք է պետք, տքնանք, ուժերի լարում։ Բայց մենք, ցավոք, ավելի շատ ենք խոսում, քան գործ անում։ Պետք է աշխատենք, որ հիմա սիրով չենք անում, պետք է սովորենք, որ հիմա սիրով չեն անում դպրոցականները, ուսանողները, պետք է առաջն առնենք հայրենափախությանը, որ հիմա շատ է մեծացել ու ծավալվել, ուժեղացնենք հայրենադարձությունը և վիրավոր մեր հողի վրա ապագայի տունը կերտենք։ Եթե Հայրենիքը Մայր է կոչվում, ոչ ոք իրավունք չունի չօգնել իր մորը։ Մենք, մեր Մայր Հայրենիքի զավակներս, պիտի մտածենք նախ՝ նրա վերքերը բուժելու, հետո՝ հարստացնելու մասին։ Մի երևույթ էլ կա, որ շատ է անհանգստացնում ինձ, որպես գրողի։ Արհավիրքի օրերին հայ ժողովուրդը համախմբվեց իր ցավի շուրջը։ Մարդիկ փոխվեցին, մոռացան իրենց անձնականը։ Բանը նույնիսկ այնտեղ հասավ, որ քրեական բանտարկյալները դրամ հանգանակեցին՝ աղետի գոտուն օգնելու համար։ Նրանց ժամանակավոր թույլ տվեցին տները գնալու։ Եվ նրանք ազնվորեն, նշված ժամկետում, հետ եկան։

Բայց ի՞նչ պատահեց, ինչու՞ անկում ապրեց մեր հոգին. անտարբերություն, յուրացում, կողոպուտ, թալան, ասես եկել է աշխարհի վերջը, իսկ իրենք ապրելու են հավիտյան։ Սարսափելի ուժով սկսեց գործել՝ «Նախ իմ մորթուն, հետո որդուն» քստմնելի առածը։ Բանը այնտեղ հասավ, որ անտուն, անօթևան մարդկանցից գողացան նրանց հասցեագրված հագուստները, դեղորայքը, նույնիսկ տնակները։



Սկսվեց ահռելի առուծախը։ Ցավոք, այդ արատները դեռ չեն հաղթահարված։ Օրը ցերեկով, այս մեր խաղաղ պայմաններում կորչում են մարդիկ։ Մթերքների պակասությունը ստեղծել է գաղտնի, ես կասեի, ընդհատակյա առևտուր։ Թալանի մի նոր ձև։ Այս ամենը, իհարկե, ունի իր օբյեկտիվ պատճառները. այսպես կոչված դեֆիցիտը, մթերքների պակասը, ռուբլու արժեզրկումը։ Դրա հետ մեկտեղ ընչաքաղցը անաշխատ եկամուտներով խժռում է բարիքներ, վայելում քաղքենու բարեկեցիկ կյանք։ Այն, ինչ տարիներ առաջ անհետացել էր խանութների վաճառասեղաններից, հիմա հայտնվում է դրանց սեղաններին, մեկ-մեկու զարմացնելու մարմաջով։ Իսկ սա հոգեկան անկումի սարսափելի մի նոպա է, որը քանի գնում ուժեղանում է։ Եկել է այն պահը, ինչպես բանաստեղծն էր ասում. «Կգա Ոգու սով, և դուք կքաղցեք նոխ սեղանի մոտ...»։

Ես գրողի, հայի, մարդու սրտի անհուն ցավով կրկնում եմ. հեռու հոգեկան քաղցից, առատ ապրելու, լավ հագնվելու մարմաջից, երբ կողքինդ, քո եղբայրը սոված է, մերկ, անօթևան։ Հիշենք ոչ այնքան հեռու ժամանակները, պատերազմի տարիները, երբ հարևանն իր մի կտոր հացը կամ չորս-հինգ կարտոֆիլն էր կիսում հարևանի, բարեկամի հետ։ Եվ ու՞ր մնաց հայկական լիաբուռն, բաց հոգին։

Պետք է հիմա սթափ նայենք մեր շուրջը։ Ծովը կաթիլներից է կազմված, հասարակությունը՝ մարդկանցից։ Եվ մի կաթիլից է մարդ որոշում ծովի համը։ Եթե ամեն մարդ ինքն իր դատավորը լինի, եթե ինքը լինի անաղարտ, մաքուր, բարի ու գթասիրտ, ուրեմն հասարակությունն էլ այդպիսին կլինի։

Հայոց անցյալը, որ արդեն հիմա պատմություն է դարձել, այս է ուսանել և շարունակում է սովորեցնել։ Ժամանակները փոխվում են և ժամանակների հետ էլ՝ մենք։ Եկել է մեկ անգամ էլ հետ նայելու ժամանակը, եկել է մեկ անգամ էլ լավ սերտելու մեր իսկ պատմության դասերը. հույսներս պետք է դնենք մեզ վրա, մեր ուժի, հողի վրա, մեր գիտակցության և վերջապես՝ Հոգու վրա։ Եվ միասին, մաքրված ու միասնած՝ կերտենք մեր Հոգու Հայրենիքը, որը հիմա տկար է, շրջապատված, բայց պայքարում է իր նոր պատմության արհավիրքներից, կրակից ելնելու համար։ Կյանքի հրամայականը այս է, սա է մեր անցնելիք ճամփան և սա է ապագան։ Մենք կանք, կլինենք, կհարատևենք միայն այսպես, Հոգու անպարփակ, հաղթագնա ուժով։

Ես ուզում եմ ասելիքս ավարտել Վ. Տերյանի բանաստեղծության հիասքանչ, մշտամնա մեծ հավատքով.

*Գերված ենք մենք, ոչ ստրուկ, գերված մի արծիվ,*
*Չարության դեմ վեհ սիրտ միշտ, վատի դեմ ազնիվ...*
*Որպես փյունիկ, կրակից կելնես, կելնես նոր,*
*Գեղեցկությամբ ու փառքով վառ ու լուսավոր։*
*Կանգնիր հպարտ, որպես լույս լեռն է մեր կանգուն։*
*Արիացիր սիրտ իմ, եւ հավատով տոկուն,*

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ՊԵՏԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

**Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

ԽՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ անչափ կարևորեցին վերակառուցման պայմաններում ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու, սոցիալիստական դեմոկրատիան ընդլայնելու և խորացնելու, պետական կառավարումն ու վերհսկողությունը կատարելագործելու անհրաժեշտությունը:

Արդի պայմաններում վերահսկողությունը,— ասվել է ԽՍՀՄ Գերագույն խորհրդի առաջին նստաշրջանում, ԽՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահի հաստատման ժամանակ,— պետք է առաջին հերթին հետևողականորեն վերակառուցի իր աշխատանքը, գտնի այնպիսի հարցերի վրա ուշադրությունը կենտրոնացնելու ուղիներ, որոնց լուծումը պայմանավորված է տնտեսական ռեֆորմի իրականացմամբ, և երկրորդ, որպեսզի վերահսկողությունը դառնա առավել ներգործուն:

Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինների արդյունավետ աշխատանքը արգելակող թերությունների մասին սուր և սկզբունքորեն խոսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի սեպտեմբերյան (1988 թ.) պլենումում: Վերջին տարիներին,— նշվեց պլենումին տրված զեկուցումում,— զգալիորեն իջել է ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման մակարդակը: Բավական է նշել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը վերջին 10 տարում երկու անգամ է անդրադարձել ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքի հարցերին: Չեն լուծվել բազմաթիվ կադրային հարցեր...

Այս առնչությամբ աճում է հետաքրքրությունը Հայկական ԽՍՀ պետական վերահսկողության մարմինների գործունեության կուսակցական ղեկավարման պատմության նկատմամբ 1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմի ընթացքում: Այդ փուլը ընտրված է ոչ պատահականորեն. պատերազմի տարիներին պետական վերահսկողության մարմինների բազմակողմանի գործունեությունը չի ուսումնասիրված: Եվ ապա՝ մեծ Հայրենականի տարիներին գործող ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման պատմությանը դիմելն ունի դաստիարակչական մեծ նշանակություն:

Այդ ժողկոմատի և նրա տեղական մարմինների նկատմամբ Հայաստանի կոմկուսի ղեկավար դերը դրսևորվել է հետևյալ հիմնական ձևերով.

ա) պետական վերահսկողության մարմինների գործունեության գլխավոր ուղղությունների սահմանումը.

բ) նրանց կադրերի ընտրությունը, տեղաբաշխումը և դաստիարակությունը.

գ) նրանց կողմից կուսակցական և խորհրդային մարմինների դիրեկտիվների կատարման վերահսկողությունն ու ստուգումը:

դ) վերահսկողական ապարատի պայքարի ուժեղացումը բյուրոկրատիզմի դրսևորումների դեմ և կառավարման ապարատի կատարելագործումը.

ե) պետական վերահսկողության համագործակցության կազմակերպումը այլ հիմնարկությունների և հասարակական կազմակերպությունների հետ.

զ) մասսաների մոբիլիզացումը և պետական վերահսկողության գործունեությանը նրանց մասնակցության ակտիվացումը:

*ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏԻ— ՀԽՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի հայցվոր։*



Կուսակցական ղեկավարման առաջավոր ձևը համարվում էր պետական վերահսկողության ժողկոմատի և նրա տեղական մարմինների գործունեության հիմնական ուղղությունների սահմանումը տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության ամենակարևոր և հրատապ խնդիրների լուծման գործում: Սկսած 1941 թ. կեսերից պատերազմը պահանջեց որոշակի շտկումներ մտցնել ստեղծված պայմանների մեջ, ուժեղացնել պահանջկոտությունը պետական վերահսկողության աշխատողների նկատմամբ՝ էկոնոմիկան ռազմական ռելսերի վրա փոխադրելու, ռազմական պատվերների հստակ կատարման ու գերակատարման, ներքին ռեզերվների առավելագույն օգտագործման, աշխատանքային ու կատարողական կարգապահության ամրապնդման, վերակառուցման փուլի պահանջներին համապատասխան կառավարման ապարատի կառուցվածքի կատարելագործման առնչությամբ առաջադրված խնդիրների անվերապահ կատարման համար:

Հաշվի առնելով ռազմական ժամանակի բարդությունը՝ հատուկ ուշադրություն էր հատկացվում բոլոր մակարդակների պետական վերահսկողության գործունեության կազմակերպմանը: Պետական վերահսկողության ժողկոմատը, նրա տեղական մարմինները սիստեմատիկորեն ստանում էին կոնկրետ ցուցումներ ու հանձնարարություններ ինչպես առանձին ժողկոմատների, այնպես էլ նրանց ենթակայության հիմնարկությունների աշխատանքի ստուգման վերաբերյալ: Այսպես, պետական վերահսկողության ժողկոմատը 1943 թ. ստուգում անցկացրեց Հայկական ԽՍՀ թեթև արդյունաբերության ժողկոմատի գուլպա-տրիկոտաժեղենի ձեռնարկություններում՝ մանվածքի կուտակման և Լենինականի Մոլոտովի անվան մանվածքային փաբրիկայում մանվածքի հավաքման պատճառները պարզելու նպատակով: Ստուգմամբ բացահայտվեցին մի շարք լուրջ թերություններ, որոնք խանգարում էին թեթև արդյունաբերության ժողկոմատի նորմալ աշխատանքին[1]:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը ամեն եռամսյակ հաստատում էր պետական վերահսկողության ժողկոմատի աշխատանքի պլանը: Դա հնարավորություն էր ընձեռում պետական վերահսկողության մարմինների աշխատանքը կենտրոնացնել առավել կարևոր և հրատապ խնդիրների լուծման վրա, ինչպես նաև լավ կոորդինացնել նրանց գործունեությունը իրավապահ մարմինների աշխատանքի հետ:

Հայկական ԽՍՀ պետական վերահսկողության ժողկոմատը, իր հաջող գործունեության գրավականը տեսնելով կուսակցական ղեկավարման մեջ, առանձին հարցերի վերաբերյալ ինֆորմացիա էր տալիս Հայաստանի կոմկուսի Կենտկոմին՝ վերջնական որոշում ընդունելու համար: Կենտկոմի առաջին քարտուղար Գ. Ա. Հարությունյանին ուղղած զեկուցագրով (17. 05. 1943 թ.) հայտնվում էր, որ, թեև թեթև արդյունաբերության ժողկոմ Ա. Հակոբյանը՝ Նոր Բայազետի տրիկոտաժի փաբրիկայի շահագործման հանձնելու վերաբերյալ բազմիցս հավաստիացումներին, ստուգմամբ հաստատվել է, որ «փաբրիկայում տիրող դրությունը վատ է»: Ահազանգերի նկատմամբ ժողկոմատի ղեկավարության քամահրանքը, նշվում է այդ զեկուցագրում, տագնապ և անհանգստություն է հարուցում պլանային առաջադրանքները կատարելու համար[2]:

Պետական վերահսկողության ժողկոմատի գործունեության կուսակցական ղեկավարման կարևոր ձևերի թվին են դասվում նաև կադրերի ընտրությունը, տեղաբաշխումը և դաստիարակությունը: Վ. Ի. Լենինը մեկ անգամ չէ նշել, որ կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը ոչ միայն կազմակերպական, այլև քաղաքական հարց է և զգուշացնում էր մեկը մյուսից մեխանիկորեն չանջատել:

Ժողովրդական վերահսկողության ժողկոմատի կենտրոնական ապարատի ղեկավար պոստերում նշանակվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի նախկին աշխատողներ: Դա նկատելի է Կենտկոմի բյուրոյի և ժողկոմատի կոլեգիայի նիստերի արձանագրություններից: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի նիստերից մեկի արձանագրության մեջ, որը թվագրված է 1940 թ. նոյեմբերի 18-ին, ասվում է. «Ընկ. Ս. Վ. Հակոբյանին ազատել Կենտկոմի կազմհրահանգչական բաժնի ինֆորմացիոն սեկտորի վարիչի աշխատանքից՝ նրան Հայկական ԽՍՀ ՊՎԺԿ ինֆորմացիոն սեկտորի վարիչ փոխադրելու կապակցությամբ»[3]:

Վերահսկողության ապարատի աշխատողներից պահանջվում էր իրենց մեջ

1. *Տե՛ս, Հայկ. ԽՍՀ Հոկտեմբերյան հեղափոխության և խորհրդային շինարարության կենտրոնական պետական արխիվ (ՀՀԽՇԿՊԱ), ֆ. 495, ց. 2, գ. 457, թ. 1—8։*

2. *Նույն տեղը, թ. 15—17։*

3. *Տե՛ս ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 20, գ. 57, թ. 87։*

կազմակերպելու իրենց աշխատանքը, խուսափելու սխալներից ու մոլորություններից[1]:

Մեծ ուշադրություն էր նվիրվում պետական վերահսկողության և կառավարման
ուրիշ կենտրոնական ու տեղական ճյուղային մարմինների, խորհուրդների, վարչա-
կան հիմնարկությունների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություն-
ների համագործակցության ուժեղացմանը: Արխիվային նյութերից երևում է, որ եր-
բեմն ժողովրդական տնտեսության առավել պատասխանատու և կարևոր օբյեկտ-
ները ստուգվել են ՊՎԺԿ-ի կողմից՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հետ միասին:
Այսպես, Կենտկոմի և ժողկոմատի 1942 թ. փետրվարին անցկացրած ստուգմամբ
Գլավնաբոստավիաքիմ-ի հայկական բաժանմունքում բացահայտվել են ֆոնդային
մթերքների և ապրանքների վատնման և ինքնամատակարարման բազմաթիվ փաս-
տեր: Այդ ստուգման արդյունքների հիման վրա Հայաստանի կոմկուսի Կենտկոմի
բյուրոն որոշեց. 1. ղեկավարություն չապահովելու և պաշտոնական դիրքը չարաշա-
հելու համար աշխատանքից ազատել բաժանմունքի պետին և նրա տեղակալին.
2. հանձնարարել ՊՎԺԿ-ին պատասխանատվության ենթարկել ֆոնդային մթերք-
ների ու ապրանքների վատնումների մեջ մեղավորներին. 3. հանձնարարել կադրերի
բաժնին՝ վերանայել հայկական բաժանմունքի ապարատի անձնակազմը և ամրա-
պնդել այն ստուգված կադրերով[2]:

Ռազմական ժամանակի պայմաններում պետական վերահսկողության մարմին-ների գործունեության մեջ հասարակայնության դերի ակտիվացման հարցերը տեսադաշտից դուրս չէին մնում: Պատերազմի ընթացքում տասնյակ բանվորներ ու մասնագետներ էին ներգրավվում պետական վրահսկողության զանազան ձևերում: Այդ սկզբունքի կենսագործումն ապահովել է հանրապետության ՊՎԺԿ-ի և տեղերում նրա ստորաբաժանումների հաջող գործունեությունը, նպաստել թերությունների վերացմանը, իրավախախտումների կանխագուշակմանը, օրինականության ամրապնդմանը պետական վերահսկողության համակարգում: Հանրապետության պետվերահսկողության ժողկոմատը պարբերաբար հաղորդում էր Հայաստանի կոմկուսի Կենտկոմին՝ սոցիալիստական օրինականության, պետական ու աշխատանքային կարգապահության կոպիտ խախտումների և դրանց արագ վերացման միջոցառումների մասին: Այսպես, ժողկոմատը 1941 թ. մարտի 19-ին Կենտկոմին տեղեկացրեց Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր կինոֆիկացիայի վարչությունում ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության հրամանագրի կոպիտ խախտման փաստերի և անփութություն դրսևորելու, պաշտոնական դիրքը չարաշահելու համար այդ վարչության ղեկավարներին պատժելու մասին: Մասնավորապես նշվեց, որ այդ վարչության մատակարարման բաժնի պետը և նրա գործակիցները ենթարկվել են քրեական պատասխանատվության:

Ուսումնասիրվող ժամանակամիջոցում, ինչպես երևում է արխիվային նյութերից, Հայաստանի կոմկուսը մի շարք միջոցներ է ձեռնարկել պետական վերահսկողության և նրա տեղական մարմինների ապարատը կատարելագործելու և գործունեության արդյունավետությունը բարձրացնելու, նրա կողմից սոցիալիստական օրինականության պաշտպանությունը բարելավելու խնդրում: Եվ այդ ամենի շնորհիվ Հայրենական պատերազմի տարիներին որոշակի հաջողություններ են ձեռք բերվել վերահսկողության իրականացման գործում:

---

1 *Նույն տեղը, ց. 21, գ. 43, թ. 97։*

2. *Նույն տեղը, ց. 1, գ. 12, թ. 23։*

---

*«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 3, 1990 թ.։ Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։*

---

*Հանձնվել է շարելու 15. 02. 1990 թ.։ Ստորագրվել է տպագրելու 27. 03. 1990 թ.։ ՎՖ 04253։ Ձևաչափ 70×108 1/16։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 8482։ Պատվեր՝ 150։ Գինը՝ 25 կոպ.։*

---

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։*
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.